5 Ընդ որս եւ մատամբ ցուցանէր նոցուն
Զօձանց նորահնար լուծման անկայուն,
Որ չէր ողջամիտ վարդապետութիւն,
Այլ շար Ասորւոց. Յունաց թիւրութիւն։

6 Զորս եւ հաւաքէր բանիւ անդադար,
Ծածուկ եւ յայտնի ի տան և՛ ի տաճար,
Գրչխօսք և՛ անդամանք որոնել բղձար,
Յարատուղեաց որբել զերգս մեր, գիրս եւ ճառ։

7 Ցուցեալ թէ առանց այն սրբագրութեան,
Յաւէտ իրաւամբ ուղղափառ բերան,
Մեկնագրեալ զԱզգ մեր ի խորշ եւ յատեան,
Հերձուած անուանէ ընդ իւր յամառման։

8 Իսկ այն բան Սարգսի միայն սակաւուց
Շարժէր փոյթ եւ ջան և՛ այն տարապարտուց,
Զի ուր ոչ կամի գործել ջան յոգունց,
Ընդ զոչինչ կարէ առնել փոյթ փոքունց։

9 Ի մերոց թէպէտ բազում առանձին
Բան նորին բառայք գոլ հաստատէին,
Ի՛ ի մեզ թիւր յամանց մնձեալ փորձէին,
Այլ սրբագրել զայն անփոյթ լինէին։

10 Զի կէսք առ ահին, ոմանք առ փառաց,
Եւ այլ ընդ պէսպէս այն պատճառանաց,
Որպէս առաջնորդ գրաւեալ կոյր կուրաց՝
Մինչ ի խորխորատ մինային անկան։

11 Զայն տեսեալ Սարգսի լինէր յուսահատ,
Եւ կայն ընդ նոսին յաւէտ անանձնատ
Պատճառէր խղճի մտաց իւր արատ,
Եղեալ ի վրանդ ցիւր ամբին հաւատ։

12 Ուստի ըղձատիւ փառս առ Հաստչին
Հեծծեալ Հեռանայր յաշխարհէն ըմբռնակ
Առ երգել կեանն աստ յարտասուաց սփռակ
Ուղղափառութեամբ Հանդարտ Համարձակ։

13 Ահա այս ինչ էր եղական պատճառ,
Որ ուժգ գործել տայր նրմա անպատճառ
Առ գալ գաղթիլ յայս կողմանս խաղառ,
Կեալ եւ մեռանիլ որպէս ուղղափառ։

14 Հասեալ աղաւղէն Սարգիս մեր Հանդիստ,
Ի Մարտիրեացուոյ մեծ նաւահանգիստ,
Զաւուրս քառասուն կայեալ անդ ըղնիստ,
Նոյն պանդխտութեան Հաճ է թէեւ խիստ։

15 Զուեալ ինեւ իսկ յետոյ անտուստ նա
Ժամանէր յԱնթիպ, անտի ի Գենուայ
Անդրանին ի չէնն որ կոչի Ռիգայ,
Ուստի վերջապէս աստ ի Լիվուռնոյ։

16 Գտայտուաս մեր ուրեմն եղեւ յայս ամուր
Գեկատեմբեր ամսոյ յութ եւ տասն աւուր.
Առս Սարգիս մեր նախ ըղձաղար կայնոյր
Ի մեր ժամանման քան Հաճութեան իւր։

17 Գաղարեալ մեր յայս չէն բազմամփափառ՝
Շուրջ ըղձմաք խոկոյն բոլորէր ըղպար
Աստէն ըմբռնկեալ Հայոց մեր կաճառ
Յարգանօք մեծաւ եւ սիրելապար։

18 Թէպէտ ոչ խոկայր Սարգիս ըմբռնուին՝
Ընցանել ընդ այս քաղաքս վերբստին,
Այլ առ պաշտել զ°ատն ծընընդեան փրկչին՝
Ի ստկս փոքր աւուրց օթէր ատարստին։

19 Յետ տանի ծննդեան նա երթալ խորհէր,
Ի Հռոմ քաղաք՝ ուր որոշեալն էր,
Ապրիլ յանդորրու որչափ հընար էր,
Ի՝ անդր իսկ մեռանիլ եթէ կամք Տեառն էր։

20 Այլ ով անքննելի տրամադրութեան,
Ի՝ անհասանելի երկնից հաճութեան,
Որ ընդդէմ Սարգսի և՝ այլոց բաղձանաց՝
Դիպիլ որոշէր առ նորին վախճան։

21 Զի յետ աւուրց ինչ խօթացեալ նորան՝
Յայտնիւր ի նշմին ախտ ինչ հին թագուն,
Որ ուղորդութեան շարժմամբքն իւրոյն՝
Սաստկացեալ՝ ճընշէր ըզկարիս մարմնոյն։

22 Եւ թէպէտ նոյն ախտ անդրէն դիւրանայր
Ի ձեռըն դեղոց կիսառողջարար,
Այլ յետ խուռն աւուրց դարձեալ զայրանայր,
Ի՝ դեղ բազմազանեաց այնմ ոչ շատանայր։

23 Ուստի օր քան զօր ախտն աճեալ կարի,
Յամին յաջորդի ի փետրուարի
Առ փոխել զոգ առն բառ առածչայց բանի,
Զայլ ինչ յարկ կամնայր յայսմիկ քաղաքի։

24 Այլ անդէն նաեւ հիւանդութիւն իւր
Որ բառ օրէ մեծա խուճապմամբ աճիւր
Որոյ տեսեալ զանձն ի վըտանգ արկերիւր
Ի՝ առ ունիլ բարի վախճան պատրաստիւր։

25 Ապա իսկ եւ իսկ զըղջմամբ անքատակ
Սուրբ Հաղորդութեան առնոյր ըզթոշակ,
Ընդ վերջին օծման բղձիւ հոգունակ,
Արարեալ նաեւ չեչտիւ զիւր կըտակ։

26 Այն պատրաստութիւն հոգւոյ եւ մարմնոյ.
Ընդօրրէր ըղձա բառ իւր սէրս յուսոյ,
Զելան տանի բարեւս խնկայր բառ սրտոյ
Առ գերկնից ըղձանս յար մատանդելոյ։

27 Այլ այս անձնային հանդերձանք պատկան
Քրիստոնէին՝ առըն խոհական,
Թէպէտ էր Սարգսի յոյժ բաղձալական,
Բայց առթէր սրբոյն հարուած թախծական։

28 Արդարեւ զի՞արդ հրճուր էր հոգին
Առանց հօր իմում սրտի կենալ յաստի,
Որ լուսաւորեալ ըղձիւ եւ գոգի
Տրնանէր գրթով զիմ հանդոյն կարգի։

29 Որ եւ ոչ տանէր ինձ զայս անձնային,
Վասն անարժանիս ժրրաջանութեան,
Կամ արկար անձին արդանեկութեան,
Այլ բառ ըղձանին սրբոյն բարութեան։

30 Որով սիրէր զիս գերթ հայր բարերար,
Թէ եւ չէի միշտ որդի կամարար,
Կամ պաշտող նորին մնայր կամակար,
Եւ կամ յօժարիչ համբակ հարկահար։

31 Այս որ յարէ անձեալ ագուցս ցաւ,
Տագնապելով անձն իմ՝ պաշարեալ վշտաւ,
Ի՝ անմհի այլեայք թախծութեանց անբաւ,
Տատանելով տակայր սրտէս ծրփելոյ նաւ։

32 Խոկ յետ աւուրց ինչ զօրութեամբ դեղոյ
Հեռանայր վրաստեկ մահուն հարուածոյ,
Այլ զանդայր անդրէն նոյն յետ մի ամսոյ
Վշտանդել ըղձա, մատնել զիս ցաւոյ։

47 Որ և վըճռիւր յայնց զօլ անբուժելի,
Եւ միայն գեղջք տանմամբ բըժըշկի
Կարել կետնս վարել միշտ բստ հիւանդի,
Ըսպրեալ անձկութեամբ ի համառօտի.

48 Զայս ինչ ի նոցունց Արգիս իսկ լըւեալ՝
Եւ օրըստօրէ զինչըն անզօր գըտեալ՝
Գըլխովին զիւր յոյս յաշխարհէս բարձեալ
Խորհէր զանանց փառս բարեաց խոստացեալ.

49 Արդ երբ փորձէր նա թէ աստ իւր վաղճան
Հասանելոց էր բստ վերին կոչման,
Սրուշէր ունիլ զիւր մարմնոյն տապան
Յայս մեր հոյակապ սուրբ աղօթարան.

50 Սուտի վաղ ընդ փոյթ զիւր կրտակագիր
Ի վերջին յուլիսի ջընջեալ անձանձիր
Խորհրրդածութեամբ, ուշիւ, կամօք միր
Գրրէր նոր կրտակ և եւս մեծածիր.

51 Սրով կարգէր նա ընչից իւր ժառանգ
Զեկեղեցին մեր՝ որ յայս իսկ քաղաք.
Ուր մըշտամնայց հասանէր պատարագ
Վասն հոգւոյ իւրոյ բստ իւր հին փափագ.

52 Զորոյ տարեկան բըզպատարագիս
Ինձ ապրուստ կարգէր բստ աւելեալ կենիս,
Փործեալ պարտական զիս յայս տաճարիս
Զոնել պատարագ վասն իւր յաղջ տարիս.

53 Նաև իւր ընչիւք կերտել պատուիրէր
Զաւագ խորան այն Եկեղեցւոյ մեր,
Զոր յընտիր կըճոց յօրինել, տակէր,
Ի պատուանդանէն և մինչև ի վէր.

54 Եւ եւս զըգգեստ մի՝ ազնիւ ինձ որդի
Ըստ պատուիրագին Եպիփանայոսի
Կազմել հրամայէր իւրում ժառանգի
Ընդ այլոց տրոց արժանեաց տալի։

55 Դարձեալ քեռոյ իւրոյ ի նշան սիրոյ
Թողոյր ըզգումար խուռն ինչ դրամոյ
Ի՛ ինձ ի յիշատակ բատ սրբոյն իւրոյ
Օժտէր զիւր զըրբեանն զըզգեստս բատ կնոյ։

56 Այպոյ զիւր ժառանգ մերս աղօթարան
Կրօնաւորքն իւր տանէր պարտական,
Տալ մատուցանել հանգստին ի ձայն
Վասն իւր պատարագս յամին ըզքըրան։

57 Յետոյ կամէր՝ զի մարմին իւր մեռեալ
Յաջակողմեան դաս տաճարին պըճնեալ
Ունիցի տապան ծախիւ մեր կերտեալ,
Կափարիչ կըճով կընքեալ եւ օրհնեալ։

58 Այն վերջին իւրոյ կամաց յայտարար
Կըտակս կացոյց կըտակակատար
Զ՚Հայս վեց որք էին յայնժամ գործավար
Մարմնաւոր իրաց յայս մեր Սուրբ տաճար։

59 Այս թողում խորհիլ զընթերցող վիպիս
Ըզմեծութենէն տաղանդի որբանիս,
Զի արդարեւ ողջ գըրուած կըտակիս
Փըղձկեցուցեալ սիրտս՝ խոցէր զիմ աղիս։

60 Յաւուրսն յայնոսիկ Հանէր Հըրաման
Գերամբարձ մեծ Դուքս երկրիս Թոսկանեան,
Որ եւս յապագայս կազմել նոր տապան
Առ թաղել զ՚մեռեալս ի մէջ ժամատան։

61 Իսկ անդուստ Հայք փոյթ մի ծանապարհակաւ
Խնդրեալ ի նոյնոյ աղերսանօք մեծաւ
Ընկալեալն բդ՞շնորհ յառնել հրամանաւ
Առ թաղել զՍարգիս ընդ մեր տաճարաւ ։

62 Յետ որոյ Սարգիս պատուիրէր ինքնին
Բերել պատրաստել ըզփոս տապանին,
Որ ամօք յառաջ կազմ՝ ամենեւին
Ըսպասէր նորուն հոգւոյ անօթին ։

63 Ապայ զայրացեալ անդրէն առեալ Սարգսի
Յօգոստոս ամսեան և՝ ի Սեպտեմբերի՝
Ճընչէր ըզնա միշտ ջերմն ինչ կարի
Թէ եւ մերթ հանդչէր ի ժամ գիշերի ։

64 Յայնքում միջոցի յամէն շաբաթու
Խոստովանութեամբ եւ զըղջմամբ ազդու
Հաղորդիւր ի տան միշտ յառաւօտու
Սուրբ մարմնով և՝ արեամբ փրկչին կենդանատու ։

65 Ի վերջին աւուրս այն իմ վարդապետ
Բազկատարած լեալ՝ օրհնէր զիս յաւէտ
Առ ծառայելոյս նըմա ցայն իսկ կէտ,
Խնդրեալ ի Տեառնէ ինձ վարձ շահաւէտ ։

66 Որ եւ իբրաստու քաջալերական
Համոզէր զիս յար յիւրում հետութեան
Հետեւող լինել առաքինութեան,
Հերքիչ որդոտեաց, մերժիչ մոլութեան ։

67 Այսուիկ եւ այլովք ազդու յորդորիւ
Թէպէտ ամոքէր զանձն իմ լի վըշտիւ,
Այլ զրկիլս յիւրմէ ըղձիւրա իմ խրատիւ
Աղեխարշ գործեալ՝ լընոյր աղետիւ ։

68 Նա անդ ի մահճի իւրում մահաբեր
Ըղձաբերարս իւր ընտանեացն օրհնէր,
Եւ վրէժխնդրաց ինքեան աղօթէր,
Զամէնն Աստուծոյ խնամոցն յանձնէր։

69 Եւ թէպէտ դառն է ամենայն մարդկան
Յիշատակն եւեթ կենաց զրկման,
Այլ քաղցր իմն է այն ի յիշողութեան
Աստուածապաշտից և՛ իմաստնոց համայն։

70 Որք ճանաչելով զինքեանս մահացու
Գիտեն թէ զատոյ թողլոց են վերջու,
Ուստի զ°փոխս ունիլ յուսան ի բարձու
Յետ ճեմման նոցա ընդ աւաղ փայլածու։

71 Յորոց եւ մինն էր բարեկրօն Սարգիս
Որ առաքինի կեանս վարմամբն յաստիս
Եւ հրաման զբաւեալ կարգի աշխարհիս
Ամէն զոլ փորձէր ըղձուն մեր լեզուիս։

72 Ուստի հոգացեալ զանձնէն այն մ'իր այր՝
Ճռնչեալ ստատկացեալ արութեամբ առկայր,
Յաւէտ քաղցրացեալ անտարբանեանց մինայր,
Հոգւոյն փրկութեան ըղձալով ըղձայր։

73 Այսպէս անցուցեալ զաւուրս իւր վերջին,
Փառս յաւէժ արուեալ կամաց Արարչին,
Ներումն ի քաւչաց հայցեալ ի մահճին,
Անդայր աւանդել Աստուծոյ զոգին։

74 Յաւարտ ամենից բաց կոչման վերնոյն
Մերձեալ, ո՛հ, առ նա օրհասի մահուն՝
Խորգէր բղխեցկեայ զանգուածոյ մարմնոյն,
Յարատար ընկրցմեալ զանձն իմ՝ առ ցաւուն։

75 Այսուհետ փոխեալ նա առ անեղ իւր Էն
Որպէս ամենայն մարդկան է օրէն,
Թողլով զիս որբ առ թափուր ի շնորհէն,
Զուրկ յատ իւր կալեալ յողջոյն ինքնենէն։

76 Ընդ անոր որպէս հաւատ իմ եւ յոյս
Սիրով անդորրին գեղանոյն հոգւոյս,
Դրոշմեալ է վաղ իւկ հոգի նորին լոյս
Անհուն գթութեամբ ծայրագոյն բարւոյս։

77 Այս ինչ գեղ լինէր ի մէջ գիշերի,
Յոր եղբիւր նախկին օրն Հոկտեմբերի,
Ի կատարածի նախնի քառորդի
Առաջնոյ ժամու աւուրն երկրորդի։

78 Դիակն Սարգսի ծիծաղ կերպարան
Տեսողացն որոյ յակունան էր նշան
Թէ փոխիւր յաստեաց նա զուարճ, հաւան
Զունելով յինքեան բին ինչ խորշականն։

79 Իսկ ի լուսանալ նոյն առաւօտու
Երկրորդի ամսոյն յաւուր շաբաթու
Եպիսկոպոսեան զարդարեալ զարդու
Դնիւր զնին ի նաշ ձեռամբ երիցու։

80 Զոր եւ բարձմին նախ ի տան նորին,
Ուր հաւատացեալք իւրոյն խռմբէին,
Վասն հոգւոյ նորին հանգիստ հայցէին,
Յաղօթմունս թենէն համայնոց բարեխօսչին։

81 Ապայ ի ճաշու ժամու բովանդակ
Հայոց ու՝ այլազանց խռմբեալ գումարակ
Վառեալ զինուորաց ու՝ երիցանց դասակ
Դիոյն թափօրի հանդերձէին կարգ։

89 Այսպէս հանդերձեալ Թափօրն ողբալի
Ընթանայր յուշիկ յաւէտ բան կարգի
Ի մեծ հրապարակ յաւագ փողոցի,
Եւ յայլ պողոտայս այնր քաղաքի։

90 Յետոյ յուղարկումն այս կանոնոյր դադար
Հանդերձ դադարովք յայս մեր սուրբ տաճար,
Ուր բազմարան ինչ ջահիւք պատրաստ կայր,
Յորոյ վերայ նաշն հանդուցեալ մնայր։

91 Ապայ ձօնէ անդ պատարագ ի ձայն
Ժողովրդապետն Ազգիս Արամեան,
Որ յետոյ տանէր ձայնիւ ողբական
Բոլոր մեօք հանդերձ պաշտօն հանդըստեան։

92 Իսկ ընդ երեկոյս նորին իսկ աւուր
Անդրէն յայս տաճար բազմութիւն խըմբիւր,
Ուր գութ Տեառն ի մէնջ անկս նորա մաղթիւր,
Քահանայութեան ամբողջ կատարիւր։

93 Վերջոյ ի գաւթու յայնց մերկացուցեալ
Մաքուր պատանօք մարմինն ամփոփեալ
Ի Դիր հանգստեան խընկեալ եւ օրհնեալ
Հանգչիւր աղամանեալ՝ ափսոս կարգացեալ։

94 Ահա ընդ իւր պատեալ կապարաւ Թաղիւր,
Ապրինակի լեզուաւ կարճ վէպ վարուց իւր,
Որ տանէն չեշտիւ յինէն շարագրիւր,
Եւ յիշատակի բարբառ Թարգմանիւր։

95 Զայն Թարգմանութիւն ոճիւ յոյժ յարմար
Քաջ Մուրատեանցեան Տէր Պետրոսն արար,
Որ էր տատ Վարդանի խնամանահայր
Յորոյ տանն իսկ մեք միշտ կալաք դադար։

103 Նաեւ պանդուխտ կայս ի մէջ այլազգաց,
Անծանօթութիւնս անգութս ընտանեաց,
Անհըմուտ գոլն իմ կողմանցըս լեզուաց
Կենցաղավարման, ծիսից եւ՛ արարմանց։

104 Սոյնք եւ նըմանիք ազգին բովանդակ
Նիւթէին արքանս ցաւ առ հասարակ
Սաստի բանաւոր փաստաւք համարձակ
Ողբայի լալով զիմ դատախազակ։

105 Եւ թէպէտ անդուստ Արամեանք շաւքեղ
Մըխիթարէին զիս բանիւ համեղ,
Այլ զըրոյց նոցին չէր դեղ ինչ զօրեղ
Առ մեղկել զաղէտս, բուժել զիմ քաղցկեղ։

106 Այսպէս զաւուրս ինչ մորմոքելով սրբտի
Եղուկ ինձ ձայնելով. Հօրս՝ տեսոյ կենի,
Կամաց Բարձրելոյն անսալով փառս պատւի՝
Անդօրրէի զիս նորին խակ չիրմի։

107 Որպէս եւ առնեմ ցայսօր ըղձոյն բան,
Մինչ ծառայելով յայս մեր ժամանան,
Սոր ըսփոփանք իմ նախադասական՝
Է գերերջանիկ Հօրըս գամբարան։

108 Ի վերայ շիրմին կափարչի վիմի
Վերատառութիւն ինչ ի նըմին վայրի
Շարադրելով յինէն քանդակիւր ըղձ՛նի՝
Ի գովեստ անձին բարունւոյս քաջի։

109 Սարգսի ըղղատկերն իսկ կենդանագիր
Նըկարել եւս առ նախ փոքրագիր
Որ յետոյ զարդուք Տէոչի մեծագիր
Օրինակեցաւ ի գըրչէ ընտիր։

110 Այն կենդանագիր բարութեայս պատկեր
Կախեալ կայ զօրմով յաւանդատան մեր,
Որով իբր յաւէտ գիտեալ զիմ Հայր, տէր՝
Դարմանեմ առ իւր՝ ջեռ վաղ իսկ լեալ սէր։

111 Պատկերս այս ուրեմն եւ Հօր իմ շիրիմ
Հաստեցին աստէն ցայսօր բղխում իմ,
Ոչ ներելով ինձ փարիզու ուշիմ
Հռօմայ ո՛ այլ շինից գոլ ընկեց մեռելիմ։

112 Աստանօր ահա յետ բազում ամաց
Երգել կամեցայ վէպ վարուց կենաց,
Սարգիս բարութեայս եւ Հօրս գերազանց,
Թէեւ անհեթեթ ոճիւ համբակաց։

113 Յոր եթէ գտցէ ոք ըստուգապէս
Զինչ ինչ որ յայլ վէպ արդեօք չէ այնպէս
Նոյն չէ որտութիւն այլ սրդայն պէս
Մուծեալ կայ թերեւս յայս վէպ յանփորձէս։

114 Զի թէպէտ ըղձառ բանիցս երգելոյ
Առեալ եմ յիմաստոյ լերանց եւ գըրոց,
Իսկ անորդային է Տէրն արարածոց,
Որ ներէ յաւէտ սրդալից մեղաց։

115 Այս եւ գիտնոց յանկեցն ներմանէն
Յուսամ թէ ոչ իսկ զըրկիմ ես աստէն,
Որ յանդգնեցայ շարադրանօրէն
Երգել զերգ Հօր իմ աշակերտօրէն։

## ԵՐԳ ԱԹԱՆՋԻՆ

[illegible]

1 Արդ՝ ծընեալ եմ ի թ°ուին փըրկչի,
Հազար եւ եօթն հարիւրորդի,
Քառասներորդ եօթներորդի,
Ի միջագետս հուպ Տիգրիսի։

2 Այն է յԱմիթ չէն հրաշակերտ,
Որ եւ ասի Տիգրանակերտ,
Եղեալ քեռւոյս նախ աշակերտ,
Որ նոյն Ամթայ էր հովուապետ։

3 Ծընօղքս եկեալ ի Բաղիշոյ,
Ի բուն իւրեանց բուն հայրենւոյ,
Բընակէին անդ բազ մարդոյ,
Վըտարանդւոյ օտարութւոյ։

4 Քանզի Սեպուհ իշխանք Կորդեաց,
Որք տիրէին եւս Բաղիշեանց,
Զինեալ յաւէժ ընդդէմ միմեանց,
Բ°նակս առնէին տարագրընաց։

5 Հայր իմ կոչիւր Քօսէնց Սահակ,
Մայրս Նուրաթինեանց Մարթա զաւակ,
Երկուքն իսկ լաւ բարուց ունակ,
Զորս գովել ինձ թէպէտ չէ հարկ։

6 Զի Բաղիշեանց յայտ է համբաւն,
Թէ Նուրաթինեանց եւ Քօսէնց տուն
Զիա°րդ էին յար բարեսուն
Եւ ընչաւէտ եւ պարգեւատուն։

14 Որ եւ զ՚նոսին բղխեա փոյթու ,
Զոյգ նրբիրակ սուրբ Յակոբու
Կարգէր յաշխարհս մեծ Մոսկովու ,
Եւ մանաւանդ Աժդարխանու ։

15 Յետ վախճանման Գրիգորի ,
Այն երկրին հայր եւ որդի ,
Գըտնան ի չէն կոստանդենի ,
Յաւուրս Յակոբ պատրիարգի ։

16 Ընդ էն նորին մարդավարեալ ,
Առ ժամանակ մի դադարեալ ,
Տեառն Յակոբու ծանօթացեալ ,
Ի նրմանէ լինին պատուեալ ։

17 Ուր Կարապետն որ արժանի ,
Ապարանից թագաւորի ,
Տայր ըղջոյր իւր հարազատի ,
Պապին Յակոբ վարդապետի ։

18 Այն սա եղեալ յետոյ միջնորդ ,
Կարգիւր պապ իմ, անդ առաջնորդ ,
Շինին Ամթայ յայնժամ պերճ յորդ ,
Պետրոս Բարբուդոյն կայեալ յաջորդ ։

19 Այս ինչ լինէր իբր յայն ամին ,
Յոր բակրայ նախ առաջին ,
Յանդէաս գիտել զ՚լոյս արեգին ,
Ընդ մօր իմում յանկայթ զըրկին ։

20 Խակ յետ իբրու հընգից ամաց ,
Հաւն իմ Յակոբ զաթոռն յանձնեաց ,
Աբրահամու որդւոյն կամաց ,
Հաւանութեամբ իւրոց խաչանց ։

28 Ընդ եւ ի բերձ վանս Արգընոյ,
Ոչ կամէի յընթեռնըլոյ
Ուր եւ դպիր եղէ յետոյ,
Դատաւորելով եկեղեցւոյ։

29 Ապայ բդգէտս հօգւոյն վ՜ճարեալ,
Փոխիւր յաստեաց հայր իմ՝ սիրեալ,
Որ ուղղափառն էր թագուցեալ,
Զի ի Նեղչաց կայր պահուցեալ։

30 Որ գաւառս իւր միշտ համբուրեաց,
Ըզգաստութեան կուռ փորձանաց,
Եւ մեծ ամփու միջնադիտաց,
Զ՞վերջին բաժակ լեղւոյն փորձեաց։

31 Յետոյ քեռին յամին հազար,
Եօթըն հարիւր որ միանայր,
Ընդ վաթ՝սներորդ երրորդ համար,
Գրաւիւր մահու չարչարեալ յամայր։

32 Եւ դի վաղջան այն իմ՝ քեռւոյ,
Դնիցիւր ի վանս իւկ Արգընոյ,
Ուստի թաղիւր մերձ հօր իւրոյ,
Ընդ առ դըրան եկեղեցւոյ։

33 Այն դի քեռին գըթով սիրտին,
Դաստիարակ գ՝տաւ իմ անձին,
Վասն այն պանուն հօրըս յարկին,
Թողեալ՝ առ ի զ՝քեռւոյս Նուբարին։

34 Ի նոյն վայրի հեղն Յովակիմ
Որ էր նո՞ւիրակ ի գաւառն իմ,
Սուրբ Յակոբայ որ ի Սաղիմ,
Գութ ցուցանէր ի վերայ իմ։

35 Յոր եւ յարէք զիս յիմ նահանգ,
Սուրբ Քաղաքին անսահման փափագ,
Յորմէ եղէ իսկ Սարկաւագ,
Ի Պատմական մայրաքաղաք։

36 Ընդ որ յետոյ անտառաստ էլի,
Ցնորաստեղծ յուխտ սուրբ շիրմի,
Ի՞նտանի ի մեծ Պոլիս եկի,
Որպէս ի վեր անդր ասացի։

---

*Դիւանիս մէջ գտնուած բնագրոյն յար եւ նման ըլլալուն ի վկայութիւն կը ստորագրեմ իբրեւ դիւանապետ*

*ՕՐԹԱՔԵՕՅ Կ. ՊՈԼՍՈՅ* — *12 Յունիս 1906*

*Հ. ԻՍԱՀԱԿ Վ. ՍԻՐԱՊԵԱՆ* — *Միաբան Անտոնեան։*

Վերջ։



1720—1775.

# ՍԱՐԳԻՍ ԱՐՔԵՊ. ՍԱՐԱՖԵԱՆ

## ԵՒ ԻՒՐ ԺԱՄԱՆԱԿԸ

—

*Ծանօթութիւնք:*

Երբ Բաբգէն Վ.ի հրատարակած «Յովհաննէս կոլոտ Պատրիարքի կենսագրութիւնը» (Վիեննա 1904) կարդացի, մտադրութիւնս գրաւեց կոլոտի աշակերտներէն նշանաւոր անձնաւորութիւն մը, Սարգիս Վ. Սարաֆեան, վաղուց ծանօթ գրեթէ միայն իր հրատարակութիւններովը, երբ մանաւանդ անոր մանրամասն կենսագրութեան գոյութիւնը կը ծանուցանէր բանասէր վարդապետը (էջ 202. 218)։ Անտարակոյս շատ նոր տեղեկութիւններ ամփոփած պիտի ըլլար այն կենսագրութիւնը՝ Սարգսի եւ իւր ժամանակին դէպքերուն վրայ։

Այս կենսագրութիւնը կը պահուի Անտոնեան Յարգելի Միաբանութեան Միջագիւղի (Կ. Պոլիս) վանքը։ Իմ խնդրանօքս՝ եւ բարեհաճ թոյլտուութեամբ ազնուամիտ Գերապայծառ Աբբահօր՝ Գեր. Միաքէլեան Հ. Ռափայէլ Թ.

Վ.-ի, վանքին արդիւնաւոր Մատենադարանապետն ու Դիւանապետը՝ Գեր. Հ. Խաչակ Վ. Սրապեան, յանձն առաւ այն կենսագրութիւնն ընդօրինակել եւ տպագրութեան սրբագրութիւնները հոգալ ամենայն խղճմտութեամբ։ Կենսագրութիւնս հրատարակուեցաւ "Հանդէս Ամսօրեայ„ի 1906, 205, 250, 325. եւ 1907, 7. 47. 76. 109. 169. 195 էջերուն մէջ։

Այն կենսագրութիւնը տպագրութեան տալու ժամանակ՝ դիտաւորութիւնս էր ինծի մատչելի վաւերագիրներով անոր սուղութիւնը փորձի տակ դնել, եւ Սարգսի հետ՝ նաեւ ժամանակակից եւ կենակից հայ կաթողիկեայ եկեղեցական անձնաւորութեանց քանի մը հատին կեանքն հետազօտել, ի լոյս հանել ինչ որ ծածկուած կար այս մասին։ Որովհետեւ եմ՝ որ կարող պիտի ըլլամ առաջիկայ աշխատասիրութեան մէջ շատ նորութիւններ, շատ անձնաւորութիւններ ներկայացընել, մէջտեղ յերեւալ վաւերագիրներու. բայց պատմական չոր իրողութենէ անդին՝ խորհրդածութիւններու կամ անձնաւորութիւններու առանց անցնելու։

Այս նպատակաւ աչքի առաջ ունեցայ շատ վաւերագիրներ եւ քանի մը տպագրութիւններ, որչափ միջավայրս կը ներէր։

1. Անտոնեան Ցարգոյ Միաբանութեան Դիւանն ու Մատենադարանը մատչելի եղաւ ինձ՝ շնորհիւ Գեր. Հ. Խ. Սրապեանի։ Ինչ որ այստեղէն քաղեցի, առաջիկայ գործիս մէջ կը նշանակուի՝ "Գիւ. Անտ.„ եւ "Մանդրն. Անտ.„։

2. Իտալիոյ Լիվոռնոյ քաղաքին կաթողիկէից Հայոց Ս. Գր. Լուսաւորիչ եկեղեցւոյ Դիւանը 73 կտոր վաւերագիր գտնուեցաւ Սարգիս Արքեպ.ի վերաբերեալ, զոր եկեղեցւոյն Գերյ. Մեծաւորն՝ Գր. Ծ. Վ. Պաշայանեան ամենայն ազնուութեամբ իմ տրամադրութեանս տակ դրաւ, եւ Սարգսի գերեզմանի մասին պէտք եղած տեղեկութիւնները տուաւ։ Գործոյս մէջ կը նշանակեմ՝ "Դիւ. Լիվ."։

3. Վենետիկի Մխիթարեան Ցարգոյ Միաբանութեան օգնական Մատենադարանապետ Գեր. Հ. Մկրտիչ Պոտուրեան, ազնիւ միջնորդութեամբ Գեր. Հ. Աթանաս Վ. Տիրոյեանի, հաճեցաւ Սարգսի առ Մխիթար Աբբայ գրած ինը նամակներու օրինակը ղրկել, եւ անոր հրատարակութիւններէն հինգին վրայ տեղեկութիւններ տալ ըստ խնդրանացս։ Գործոյս մէջ կը նշանակուի՝ "Դիւ. Մխիթ. Վենետ."։

Այստեղ իմ մասնաւոր շնորհակալութիւններս կը յայտնեմ վերոյիշեալ Գեր. Անձնաւորութեանց, որոնք ամենայն հոգածութեամբ օգնեցին ինծի եւ գործոյս կատարելութեան գլխաւոր սատարներն եղան։

Տպագիրներէն գործածած, համեմատած եւ ուղղագրած եմ՝ .

1. Չամչեան Հ. Մ., Պատմ. Հայոց, Գ. Հատ., Վենետ. 1786։ Գործոյս մէջ նշանակուած՝ "Չամչ."։

2. Ոսկեան Մ. Վ., Պատմ. Հայոց գաղթականութեան... ի Միլանոյ... Վենետ. 1891։ Նշանակուած՝ «Ոսկ.»։

3. Տաշեան Հ. Յ., Ցուցակ Հայերէն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա։ Վիեննա 1895։ Նշանակուած՝ «Տաշեան»։

4. Ալիշան Հ. Ղ., Հայ-Վենետ. Վենետիկ 1896։ Նշանակուած՝ «Հայ-Վենետ.»։

5. Ասատուր Հրանտ, Կ. Պոլսոյ Հայերը եւ իրենց պատրիարքները. Ընդարձակ Օրացոյց ազգային հիւանդանոցի, Կ. Պոլիս 1901, էջ 77—258։ Նշանակուած՝ «Ընդ. Օր.»։

6. Բաբգէն Վ. Կիւլէսէրեան, Կոլոտ Յովհ. պատրիարք, Վիեննա 1904։ Նշանակուած «Կոլոտ»։

7. Նոյն, Յիշատակարան Գրիգոր Պատրիարքի Պասմաճեան, «Բանասէր» Փարիզ. 1905։ Նշանակուած՝ «Յիշակրն.»։

8. Աղէքսանդրեան Անդր. Գեր. Համառօտ պատմ. երկոտասան կաթողիկոսաց, Վենետ. 1906։ Նշանակուած «Աղէքսանդրեան»։

9. Նոյն, Համառօտ պատմութիւն Եպիսկոպոսական Աթոռոյ ի պատրիարքութեան Կիլիկիոյ։ Վենետ. 1906։ Նշանակուած՝ «Աղէքսանդրեան Ա.»։

Տես 10. Աւգերեան Մաթէ. Եպ., Պատմ. Գաղտնիք Հայ կաթողիկեայ հասարակութեան, գրուած՝ 1810, ընդօրինակուած Առաքելեան Կարապ. Եպ.-է 1882ի Կ. Պոլիս. Հայատառ տաճկերէն, ձեռագիր։ Նշանակուած՝ «Աւգեր.»։

11. Սուքիաս Տէր Սարաֆ Յովհաննիսեան, ազգային պատմութեան վերաբերեալ քանի մը ձեռագիրներ, գրուած 1760—1807, զորոնք ազնիւ բարեկամս Մեծ. Տր. Վ. Էֆ. Թորգոմեան տրամադրութեանս թողուց։ Կը յայտնեմ իրեն խորին շնորհակալութիւնս։ Նշանակուած է «Սարգ. գպ.»

Անոնցմէ զատ անցողաբար գործածուած տպագրութիւնք, գիւանք եւն նշանակուած են իրենց տեղը։

Սարգիս Արքեպ. Սարաֆեանի կենսագրութիւնը մահուանէն ետեւ՝ 1789ին առանուոր գրած է իր ձեռնասուն աշակերտն Յովհ. Վ. Նուրաթեան, որուն մի միակ օրինակը կը գտնուի ի Դիւ. Անա., ինչպէս Նուրաթեանի ուրիշ գրութեանց եւ նամակաց գրեթէ համեմատութեամբ սառուած եմ։ Գործոյս սկիզբը գրած եմ՝ զայս, ամենայն ճշգութեամբ, միայն անեբը թուագրած եմ։

Աշխատասիրութեանս մէջ պահած եմ այն բնագրին տառն Երգերու կամ Գլուխներու բաժանումը, պատմական կէտերն ամբողջ, լսելով անոր խորհրդածութիւններն ու դատողութիւնները։ Անոր ուանդածներն ընդարձակած եմ ուրիշ աղբիւրներէ, եւ ժամանակակից հայ կաթողիկեայ եկեղեցական անձնաւորութեանց վրայ կենսագրական տեղեկութիւններ ըստ պատշաճի զետեղած եմ։ Եթէ սոյն պատմութեան ընթացքն երբեմն կ՚ընդհատի՝ ուրիշ անձանց միջամտութեամբ, այն դիտմամբ եղած է։ Փա-

*մանուկակից Հայ կաթողիկեայ մէկ քանի անձանց եւ դիպաց վրայ աւանդուած եւ մանաւանդ անծանօթ մնացած տեղեկութիւններն ամփոփել ուզած եմ. որոնցմէ դեռ շատ ունիմ, թողած ուրիշ ժամանակի վերաբերեալ գործերու մէջ աւանդուելիք։*

*Կենսագիր Նուրիճեան Յ. Վ. իր մասին մանրամասն տեղեկութիւն կու տայ իր այս գործին մէջ՝ «Երգ առանձին, բաժնով, զորոնք այստեղ կը համառօտեմ։*

*Յովհ. Վ. Նուրիճեան ծնած է* 1747*ին Տիգրանակերտ, Հայրն էր Սահակ Քօսեանց, մայրը Մարթա՝ ծնեալ Նուրիճեան, որոնք իրենց ծննդավայր Բաղիշէն գաղթած էին՝ Կորդուաց (Քիւրտերու) երեսէն փախչելով։ Ծնողքն հարուստ եւ բարեհամբաւ էին։ Յովհաննէս եօթնամենեայ էր երբ մայրը վախճանեցաւ. իսկ հայրը վախճանեցաւ իրր* 1755*ին, որ դաւանութեամբ ուղղափառ կաթողիկեայ էր, բայց նեղչաց վախէն ծածուկ կը պահէր։*

*Յովհաննէսի մօր Մարթայի հայրը՝ Յակոբ Նուրիճեան քահանայ էր, եւ իր դեռատի կնոջ մահուանէն ետեւ, Բաղիշու խռովութեան ժամանակ, իր Աբրահամ որդւոյն հետ Ամիդալու Ս. Յովհաննու վանքն առանձնացաւ։ Հոն թէ ինքն եւ թէ որդին ուսում առնելէն ետեւ՝ միասին վարդապետական կարգ, գաւազան եւ վեղար առին։ Յետոյ երկուքը Էջմիածին ուխտի գացին, եւ միասին նուիրակ ղրկուեցան Աղուանից աշխարհը։ Այն պաշտօնը լաւ կատարեցին,*

եւ ի դարձին՝ կաթողիկոսն երկուքը մէկտեղ Եպիսկոպոս ձեռնադրեց։ Քանի մը տարի ետքը միասին Երուսաղէմ ուխտի գացին, ուր Գրիգոր Շղթայակիր Պատրիարք (ընտր. 1716—1749 փետր. 12 †) մեծ պատիւ եւ ընդունելութիւն ըրաւ իրենց, եւ զիրենք իր Եպիսկոպոսաց դասուն մէջ առաւ։ Քիչ ետքը Պատրիարքը զիրենք Ս. Յակոբայ Նուիրակ կարգեց ռուսական երկիրներու, մանաւանդ Աստրախանու։

Գրիգոր Պատրիարքի մահուանէն ետեւ՝ այս երկուքն, հայր եւ որդի, Յակոբ Նալեան Պատրիարքի օրով (15 փետր. 1741—1749, Մարտ 26 †) Կ. Պոլիս գացին, Պատրիարքէն մեծ պատուով ընդունուեցան եւ քիչ մ'ատեն հոն մնացին։ Այնտեղ արքունի պալատան «ըէճ»ին կարապետ իր քոյրը Յակոբ Եպ.ին եղբօրը առաւ, եւ անոր ազդեցութեամբ՝ Յակոբ Եպ. Առաջնորդ անուանուեցաւ Տիգրանակերտի, իբրեւ յաջորդ Առաջնորդ Պետրոս Եպ.ի։ Իբր հինգ տարի ետքը ծերունի Յակոբ Եպ.՝ ժողովրդեան հաւանութեամբ աթոռն իր որդւոյն՝ Աբրահամ Եպ.ին յանձնեց, եւ Արղնի Բարձրահայեաց Ս. Աստուածածնի վանքն առանձնացաւ, ուր քիչ ետքն առ Աստուած փոխուեցաւ։

Աբրահամ Եպ. գնաց Կ.Պոլիս եւ Տիգրանակերտի առաջնորդութեան հրովարտակն առաւ։ Նոյն միջոցին (1754) Կ.Պոլսեցի Աղեքսանդր Նորընտիր կաթողիկոսն Դարաղաշեան Կ.Պոլսէն Էջմիածին կը մեկնէր. հետն առաւ Աբրահամ Եպ.ն իբրեւ բարեկամ եւ ուղեկից.

Եւդոկիա իրարմէ բաժնուեցան, եւ Աբրահամ հասաւ Տիգրանակերտ։ Ինը տարի լաւ հովուելէն ետեւ՝ 1763ին վախճանեցաւ Արղնայ վանքը, եւ եկեղեցւոյ դրանն առ՝ հօրը քով թաղուեցաւ։

Յովհաննէս որբը մահուանէն ետեւ՝ իր քեռայն՝ Աբրահամ Եպ.ին խնամոց տակ էր, եւ երբ եօթ տարեկան եղած ատեն հայրն ալ վախճանեցաւ, Աբրահամ զինք քովն առաւ, եւ Արղնայ Բարձրահայեաց վանքը Յովհաննէս ուսման կը պարապէր եւ դպիր եղաւ։ Աբրահամու մահուընէն ետեւ՝ թողուց Յովհաննէս իր հօրը "Քօսեանց" մականունը, եւ քեռայն "Նուրիճանեան" մականունն առաւ, վասն զի քեռին իր հոգեւոր եւ մարմնաւոր դաստիարակն եղած էր։

Այս միջոցին Երուսաղեմէն Տիգրանակերտ նուիրակ եկած էր Յովակիմ Եպ. Քանաքեռցի, որ վերջէն Երուսաղեմայ Պատրիարք եղաւ (2 Օգ. 1775—1793 Սեպտ. 25 †)։ Յովակիմ գթաց այս որբ պատանւոյն, հետն առաւ, Դամասկոսի մէջ Սարկաւագ ձեռնադրեց, եւ Երուսաղէմ տարաւ։ 1765ին Յովակիմ Եպ. իբրեւ Վէքիլ Երուսաղեմի՝ Կ.Պոլիս եկաւ, հետը բերաւ Յ. Նուրիճանեան սարկաւագը, որ վեց ամիս անոր քով մնալէն ետեւ՝ զատուեցաւ եւ բնակեցաւ եղբօրը քով, որ շատ տարիներէ վեր իր ազգականաց հետ Կ.Պոլիս հաստատուած էր։ Աղուհացից օրերը շատ վարդապետներու քարոզները լսեց Յովհաննէս. բաղձաց նաեւ Սարգիս Արքեպ. Սարաֆեանի քարոզներուն ներկայ ըլլալ, որուն համբաւը լսած էր՝ իբրեւ անուանի

քարոզիչ եւ մեկնիչ Ս. Գրոց, դիւրուսոյց պարզամտաց: Յովհաննէս ստէպ Ղալաթիոյ Ս. Գր. Լուսաւորիչ կ'երթար քարոզել, որով ծանօթացաւ եւ բարեկամացաւ Սարգսի: 1766ին գարնան խնդրեց Սարգսէն, որ զինք իրրեւ աշակերտ քովն առնու: Ամիս մ'ետքը՝ Միջագիւղ Սարգսի բնակարանն հաստատուեցաւ՝ միջնորդութեամբ Պետանեան վարդապետի: Հոն երեք տարի աշակերտելէն ետեւ, հաւանութեամբ Գրիգոր Պատրիարքին՝ Սարգիս զՅովհաննէս քահանայ ձեռնադրեց 3 Ապր. 1769ին ի տօնի «Մուտն ի Վիրապն», եւ նոյն օրը կրօնաւոր կամ՝ աբեղայ ըրաւ տալով «Վեղար՝ փիլոն ապայ»: Այս ձեռնադրութեան ժամանակ բոլոր ազգին առջեւ չյիշատակուեցան ծանօթ նզովքները, եւ անընդունելիները (Տաթեւացի եւն): Ըստ սովորութեան՝ երեք ամիս ետքը հրաման առաւ Սարգիս, որ Նուրաինեան քարոզէ:

Յովհ. Վ. Նուրաինեան 1772ին Սարգսին հետ Իտալիա գնաց. Սարգսի մահուանէն ետեւ Լիվոռնոյ հաստատուեցաւ, 1789ին անոր կենսագրութիւնը գրեց, ինչպէս նաեւ անոր տապանագիրը: Ունի ոտանաւոր նամակ մը (Գիւ. Ընտ.), գրած 3 Մայիս 1790, առ Սահի. Վ. Աֆթանդիլեան, Եպ. Ախալցխայի, Ձեռնադրիչ ի Հռոմ (1785—1795), որով կը ծանուցանէ, թէ Ջուղայեցի Խօճամալ Աւիֆար Մեծահարուստը Հնդկաստանէն Լիվոռնոյ եկած է, եւ Նուրաինեանի հետ կրօնական վէճեր ընելէն ետեւ՝ համոզմամբ կաթողիկէ հաւատքն ընդունած է:

Նուրտինեան մեռած է 56 տարեկան՝ 6 փետր. 1803ին, եւ թաղուած ի Լիվոռնոյ: Ունի կտակ մը, որով Լիվոռնոյ քաղքին համար քանի մը բարեգործական տրամադրութիւններ ընելէն ետեւ՝ ստացուածոց ժառանգ կը դնէ Կ. Պոլիս բնակող իւր եղբօրորդին Մուրատ Նուրտինեանը, իսկ գրքերն ու գրութիւնները կը թողու Անտոնեան Միաբանութեան վանքին (Գիւ. Լիվ.), ուր եւ կը մնան Սարգիս Արք. Սարաֆեանի գրոց հետ, զորս ժառանգած էր Նուրտինեան Վ.:



Աշխատասիրութիւնս անշուշտ պիտի ընդարձակէ քննասէր, եկեղեցասէր, պատմագէտ եւ հնախօս ընթերցողներու ծանօթութիւնը. եւ հայ կաթողիկեայ հասարակութեան ԺԸ դարու նշանաւոր մէկ քանի եկեղեցականաց կենսագրութիւնը ծանօթացընելով՝ ազգին նոյն մասին հետզհետէ կազմակերպում մը պիտի ներկայացընէ:

## 1.

*Սարգսի ծնունդը, պատանեկութիւնն եւ աշակերտիլն Յովհաննու Կոլոտի:*

Ակնցի Ալէքսան կամ Աղէքսանդր ––։––ին (լումայափոխն) 1698ին Կ. Պոլսոյ մէջ ամուսնացաւ Պոլսեցի Թագուհւոյ հետ: Թագուհի իւր անդրանիկն ի Կ. Պոլիս յղանալէն ետեւ՝ երկուքն ալ գործով Ադրիանուպոլիս փոխա-

գրուեցան։ Այսպէս 1699ին, փետրուարին, Առաջնորդաց պաշտօնց մէջ ծնաւ իրենց անդրանիկ որդին, որ եւ Ս. Սարգսի անունն շաբաթ օրը մկրտուեցաւ, դրոշմուեցաւ եւ կոչուեցաւ Սարաֆին։ Ծնողքն անմիջապէս Կ. Պոլիս դարձան, ուր մանուկն Սարգիս զարգացաւ օրըստօրէ, եւ յանձնուեցաւ երիցու մը յաշակերտութիւն։ Սարգիս քիչ ատենէն Սաղմոս, Կտակարան, Ժամագիրք եւ Շարական սկսաւ կարդալ եւ եկեղեցւոյ մէջ դպրութիւն ընել։

Ծնողեան եւ պաշտօնական պարագաներէն առնել՝ Սարգիս յետոյ Սարաֆեան (կամ Սառաֆեան), Աբէթնագոր, Աբէթնագորեան, Բէհղնագրեան, Բէհղնագրացի, Կոստանդնուպոլսեցի, եւ Կեսարեան, մականունններն առաւ։ Պէտք չէ շփոթել մեր Սարգիսը, միւս Սարգիս Վ. Կոստանդնուպոլսեցւոյ հետ, որ կը յիշուի ի յիշատակարանի «Գիրք որ կոչի Հարանց Վարք», Կ. Պոլ. 1720—1. «Յիշել... զամենայն միաբան աշխատաւորս, եւ զբարերարս սպասաւորս սուրբ անդեղացն այսինքն զՍարաֆին Աբէթնագրեան Բէհղնագրացի, զՊետրոս Վ. Եւդոկիացի... որք շրջին ի գրուենս ողորմածացս՝ առ ի հաւաքել զաուրս, սակս սուրբ տեղեացն եւ Սուրբ Յակոբայ գահին...»։ Ոմանք կ'անուանեն մեր Սարգիսը Թոքաթեցի (Մուրատեան Մ. Վ. Պատմ. Հայաստ. Եկեղեցւոյ, Երուս. 1872, էջ 592. Գարր. Պատկանեան, «Արարատ» 1875, էջ 174) Թէքիրտաղի առաջնորդութենէն առնելով, կամ շփոթելով զար մը յառաջ ապրող

Կ. Պոլսոյ Պատրիարք Սարգիս Վ. Թէքիրտաղցւոյն հետ։

Զափահաս ըլլալէն ետեւ Սարգիս՝ ոսկերչութեան արուեստին աշակերտեցաւ։ Սակայն անկէ հաճ չառնելով՝ ուզեց եկեղեցական ուսմանց հետեւիլ եւ քարոզներու ներկայ գտնուիլ։ Այս ժամանակի Կ.Պոլսոյ Հայոց Պատրիարքն Յովհաննէս Բաղիշեցի Կոլոտ (ծնած 9 Սեպտ. 1715, ըստ Բաբգէն Վ.-ի անդ., էջ 173, ծան. 2։ Սարգիս դպիր Յովհաննիսեան իր մէկ ձեռագրին մէջ կը դնէ Սեպտ. 7) իր հիմնարկած դպրոցին մէջ ուշիմ պատանիները կը ժողվէր եւ կ'ուսուցանէր։ Սարգիս այս աշակերտաց զարգացումը տեսնելով՝ ուզեց անոնց դասակցիլ. սակայն հայրը՝ որուն մի միակ արու զաւակն էր Սարգիս, բացարձակ ընդդիմացաւ ասոր։ Բայց յետոյ տեսնելով որ անկարելի է զինք ետ կեցնել՝ վերջապէս հաւանեցաւ, եւ Սարգիս 20 տարեկան ազնիւ պատանին, որ արդէն իբրեւ դպիր՝ Սուրբ Կարգի չորս փոքր աստիճաններն ընդունած էր, խանութն ու ոսկեղէնները ծախեց, գոյացած դրամին կէսը դարձուց հօրը՝ որ դրամագլուխը դրած էր, միւս կէսն իբրեւ իր վաստակն անձին պահեց, եւ 1719ին մտաւ պատրիարքական դպրանոցը։

## 2.

*Սարգսի վարդապետ ձեռնադրութիւնը, քարոզչութիւնը, Կեսարիոյ Առաջնորդ ընտրութիւնը, Ս. Կարապետի վանքին պարտքն հատուցանելու համար մինչեւ*

Ադանա եւ Բերիա նուիրահաւաքութեամբ շրջեց. եւ եպիսկոպոսանալու համար Կարնոյ վրայէն Էջմիածին ուղեւորեց:

Սարգիս այս դպրանոցին մէջ ինք զինք ուսման տուաւ ամենայն եռանդեամբ, եւ երեք տարի եւ քիչ մ'աւելի հոն մնալով՝ դասակիցները գերազանցեց, 23 տարեկան (1722) ձեռնադրեցաւ Կիսասարկաւագ եւ Աւագ Սարկաւագ, եւ երեք տարի ետքը (1726) քննութիւն տալով՝ քահանայ ձեռնադրեցաւ եւ նոյն օրն՝

Ընկալեալ վեղար՝ սրբոյն Անտոնի
ըստ ծիսի ազգիս՝ կրօնաւորի,
միաբան ընդ լծով՝ վանական կարգի·

Այնուհետեւ աւելի եռանդեամբ աստուածաբանական ուսմանց հետեւեցաւ, Ս. Հայրց գրութիւնները կարդաց եւ մանաւորապէս քարոզչութեան հետամուտ եղաւ: Տարի մ'ետքը՝ 1727ին Կոլոտ Պատրիարք զինք անձամբ բարձրացուց վարդապետութեան փոքր եւ ծայրագոյն աստիճաններու: Սարգիս Վ. քիչ ատենէն նշանաւոր քարոզչի հռչակ հանեց Կ. Պոլսոյ մէջ. թէ մեծամեծները եւ թէ հասարակ ժողովուրդը գունդագունդ իր քարոզները մտիկ ընելու կը փութային եւ զինք շատ կը մեծարէին. մինչեւ իսկ Կոլոտ Պատրիարք իր զբաղմանց պատճառաւ անձամբ քարոզելու միջոց չունենալուն՝ զՍարգիս Վ. իւր տեղը Քարոզիչ կարգեց:

Նոյն միջոցին Կեսարիոյ Առաջնորդը մեռած ըլլալով՝ Կ. Պոլիս հաստատուած Կեսարացիք

յանուն իրենց քաղաքին Կոլոտ Պատրիարքին ներկայացան եւ «կարի ստիպմամբ եւ մեծ աղաղակաւ» զՍարգիս Վ. իրենց Առաջնորդ ընել խնդրեցին։ Սակայն Կոլոտ չուզելով զրկուիլ իր Քարոզչէն՝ ընդդիմացաւ կեսարացւոց եւ հրամայեց որ ուրիշ մը գտնեն։ Կեսարացիք գրգռուած՝ աղերսագիր գրեցին Երուսաղեմի Գրիգոր Շղթայակիր Պատրիարքին, որ Կոլոտի դասընկերն ու մտերիմն էր, որպէս զի ատիկայ միջնորդ ըլլայ եւ զԿոլոտ համոզէ։ Գրիգոր Պատրիարք գրեց Կոլոտին, որուն Կոլոտ չկրնալով ընդդիմանալ, զՍարգիս Վ. ընտրեալն՝ Կեսարիոյ Առաջնորդ անուանեց 1730ին, եւ արքունի հրովարտակ հանել տուաւ։ Սարգիս Վ. քանի մ'ամիս ետքը մեծաւ շքով «Մաժակ» (Կեսարիա) գնաց. հետն ունենալով իր մեծ դասակիցն Յակոբ Վ. Նալեան։ 1731ին Կեսարիա հասաւ եւ ընդունուեցաւ մեծաւ հանդիսիւ։ Քանի մ'ամիս ետքն ալ Նալեան Վ. ետ դարձաւ ի Կ. Պոլիս։

Սարգիս Վ. շատ գոհ ըրաւ կեսարացիները։ Կեսարու Ս. Կարապետ հին վանքը պարտքերու տակ ընկճած էր։ Սարգիս Վ. այն պարտքը ջնջելու համար սկսաւ պտըտիլ եւ ժողովրդէն կամաւոր տուրք ժողվել։ Այլեւայլ տեղերէն անցնելով Ատանա եկաւ, ուստի ի Բերիա (Հալէպ), եւ պէտք եղած դրամն հաւաքելով՝ իւր աթոռը դարձաւ, պարտքը վճարեց։ Քիչ ետքը Կ. Պոլիս գնաց՝ Էջմիածին երթալու եւ եպիսկոպոսական ձեռնադրութեան համար։

Սարգիս Վ. թէ Կ. Պոլսոյ կոլոտ պատրիարքէն պէտք եղած ընծայագիրն առած, եւ թէ Երուսաղեմի Գրիգոր պատրիարքին յանձնարարականը, ճամբայ ելաւ։ Կոլոտ պատրիարքն յանձնեց իրեն նաեւ "սրկիհ ինչ ոսկեայ, գեղեցկապաճոյճ եւ անգամանդեայ", զոր ընծայ կ'ընէր Էջմիածնի եկեղեցւոյն։ Ճամբան ընկերացաւ Աբրահամ Վ. Կրետացւոյն, որ Թրակիոյ Ռոդեստոսի (Ռոտոսթոյ) Առաջնորդն էր, որ նոյնպէս Էջմիածին կ'երթար ուխտի։ Երկուքը միասին Կարին հասան, ուր Սարգիս Վ. քանի մ'ամիս մնաց. իսկ Աբրահամ Վ. ճամբան շարունակեց, որմէ ետեւ Սարգիս Վ. ալ Էջմիածին հասաւ։

## 3.

*Սարգիս Վ. Էջմիածնի Սինոդին մէջ Աբրահամ Կրետացի Եպիսկոպոսը Կաթողիկոս ընտրել կու տայ: Կեսարիոյ Արքեպիսկոպոս կը ձեռնադրուի եւ "Շնորհալի" անունը կ'առնէ: Աթոռը կը դառնայ 1735ին. Նոյն տարին Կ. Պոլիս կ'երթայ եւ կը վերադառնայ: Ժողովուրդը կը հակառակի իրեն՝ կաթողիկեայ ըլլալուն համար, 1737ին Կ. Պոլիս կ'երթայ: Արքեպիսկոպոսութեան կոնդակին բնագիրը. Կաթողիկեայ ըլլալուն պատճառն ու ժամանակը: Ղուկաս Վ. Խարբերդցի եւ իր 19 կտոր մեծահատոր թարգմանութիւնները լատին հեղինակներէն: Սարգիս Վ. 1730էն յառաջ կաթողիկեայ, իրեն համար 1732ին եւ 1740ին գրուած ձեռագիրը: 1743ին կաթողիկէ դաւանութիւն յղած է ի Հռոմ:*

Սարգիս Վ. Էջմիածին կը հասնի 1734ին աշնան մէջերը՝ երբ Աշեցի կամ Խօշապցի Աբրահամ կաթողիկոսը մահուան անկողինն ինկած էր եւ քանի մ'օրէն (11 Նոյ.) մեռաւ։ Նոր ըն-

տրութեան համար փութով սինհոդոս գումարուեցաւ, որուն մասնակցեցաւ նաեւ Սարգիս Վ.։ Ասիկայ Սինհոդականաց ընտրելի ներկայացուց Աբրահամ Եպիսկոպոս Կրետացին, Թրակիոյ առաջնորդը, որ տակաւին Էջմիածին էր եւ ուխտը կատարելէն ետեւ մեկնելու կը պատրաստուէր։ Սակայն սինհոդատականներէն ոմանք հակառակեցան ըսելով՝ թէ Աբրահամ օտար է, Էջմիածնի միաբան չէ, եւ բնաւ նուիրակութիւն ըրած չէ. այլ թէեւ կ'ուզէին զԱբրահամ, բայց նախ Կ. Պոլսոյ Պատրիարքին իմացընել կ'ուզէին։ Սարգիս Աբրահամու ընդունակութիւնները գովեց, ընտրութեան փութացուցման պէտքը ցուցուց՝ անդւոյն քաղաքական դէպքերուն յառաջ բերելով, եւ խոստացաւ որ ինքը այն ընտրութեան հաւանութիւնը կ'առնու Կ. Պոլսոյ Պատրիարքէն, իւր վարժապետէն։ Ժողովը հաւանեցաւ, ընտրեց զԱբրահամ, եւ Աբրահամ կաթողիկոս օծուեցաւ Նոյ. 24ին։ Յաջորդ օրը նորընծայ կաթողիկոսն զՍարգիս Վ. օծեց Արքեպիսկոպոս, եւ անձամբ անունը դրաւ "Շնորհալի"։ Այս ամէնը գրուած են եպիսկոպոսական ձեռնադրութեան վկայագրին մէջ, որ "քառակնիք է եւ մեծադիր"։

Սարգիս Արքեպ. ձմեռն Էջմիածին անցուց եւ յաճախ քարոզեց խուռն բազմութեան։ Յաջորդ տարին 1735ին գարնան դարձաւ իր թեմը, եւ նոյն տարին Կ. Պոլիս գնաց, Յովհ. Կոլոտ Պատրիարքէն եւ ժողովրդենէն սիրով ընդունուեցաւ, եւ դառնալով իր թեմը, ժո-

զօվըզեան հօգեւոր պէտքերուն անխոնջ խնամ տարաւ։ Քիչ ետքը Կեսարացիք տեսան որ իրենց առաջնորդը «Քաղկեդոնիկ եւ ուղղափառ» վարդապետութեան հետեւող է, եւ իրենց մէջ մեծ հակառակութիւն յուզուեցաւ իրեն դէմ։ Սարգիս Արքեպ. երկու տարիէն՝ 1737ին Կ. Պոլիս մեկնեցաւ ըստ հրամանի Կ. Պոլսոյ Յովհաննէս եւ Երուսաղեմի Գրիգոր Պատրիարքներու, որոնք զինք կանչեցին՝ Յունաց հետ խնդրոյ մ'առթիւ իրենց օգնելու։

Աբրահամ Կաթողիկոսի տուած յիշեալ եպիսկոպոսութեան վկայական կոնդակն, որ Սարգիս Արքեպ.ի մահուանէն ետեւ իր կենսագրին՝ Յովհ. Վ. Նուրաքնեանի քով կը գըտնուէր, այսօր կը պահուի Վիեննայի Մխիթարեան Հայրց Մատենադարանը (Թ. 563, Ցացեան, էջ 1031)։ Այս երկայն կոնդակն (77 սմ. երկայն 42 սմ. լայն) շատ շքեղ գրուած է եւ երփներանգ մանրանկարներով զարդարուած։ Կոնդակին գլուխը գրուած է Աբրահամ Կաթուղիկոսի կնիքը, զոր կը բռնեն երկու հրեշտակներ։ Հօս յատուկ կը բերենք կոնդակին բնագիրն ամբողջ, գլուխը դնելով նաեւ Աբրահամայ կնքոյն նմանատիպը $^{2}/_{3}$ պզտիկցուած։

Յամի հազար եօթն հարիւր եւ երեսներորդ երրորդի. Համարողութեան՝ ըստ մեզ մարդացելոյ Բանին. եւ ի հազար հարիւր. ութսուն երրորդ երրորդի թուահաշուութեանս ազգիս Արամեանի։ Յամսեանն նոյեմբերի (ըստ հռոմայեցւոց) երկուց տասանց. եւ մին հնգից։ Իսկ ըստ հայազգեացս՝ ի Տրէի, տասն եւ եօթն. Իսկ՝ Յիսուսի Քրիստոսի

ծառայ. և կենդանութեան Լուսաւորչին նորին պաշտօնէայ։ Տէր Աբրահամ՝ ամենայն Հայոց կաթուղիկոս։ Աթոռակալ. որդւոյն Թադէոսի Առաքելոյն. և Հօրն մերոյ սրբոյ. Գրիգորի Լուսաւորչին։ Եւ տեղապահ. երկնահանգէտ և Քրիստոսանկար Գահին անպարտելւոյ. Սրբոյ Էջմիածնի. Որեւ՝ տեղեաւ եմ՝ ի բարեխօսել կցցւոյն Կրիսու. Եւ աշակերտ. Մեծի Յովսէփայ Լուսաւորչան Վարդապետի, ի Տէր հանգուցելոյ։

Շնորհիւ և ողորմութեամբ բարեխնամող Տեառն Յիսուսի և հաճութեամբ Ամենասուրբ Հոգւոյն ճշմարտի։ Ըստ խնդրոյ ամենայն ժողովրդեան. և համայն քահանայից. և իշխանաց Մեծին Կեսարիոյ։ Դա՛ և ըստ յօժարական կամաց, և հաւանութեան. բազմերջանիկ. և Արքայան. Մեծի Պատրիարքին Կոստանդնուպոլսոյ։ Տեառն Յոհաննէս Լուսաւորչան. և Գերահանձար Վարդապետ Եղբօրն մերոյ։ Զիւր հոգեանունդ. և սիրացուն որդեակն. և ի մանկութենէն աշակերտեալն. զՏէր Սարգիս. Վարդապետն. զվարժն ի գիտութիւնս Լուսաւորչանականս. և զհմուտն ի մանկացութիւնս ասխետականս (զոր փորձիւ իսկ գիտեմք)։ Բարձրացուցաք ի գերագոյնս աստիճան Արհի Եպիսկոպոսութեան։ Ի վերայ Մեծի Աթոռոյն. Սրբոյ Ղեւոնդեայ, որ ի կապադովկացւոց Կեսարիա։ Եւ հօգաբարձու. և այցելու Սրբոյն Յոհաննու Մկրտչի Դամբարանի, և նորին հրաշագործ նշխարացն, և այլ՝ պէսպէս սրբավայրութեանց. որք անդ կան հաւաքեալ. ի պահպանութիւն և ի պարծանս աշխարհի մերոյ։ Վասն որոյ գիտելով. և ականատես եղեալ իմ՝. թէ որքան թախանձանօք. և ժամանակ խնդրեցին. Կեսարեան իշխանքն. ի մեծապատիւ յեցրորէն իմմէ, զիւր հոգենունդ Սարգիս Վարդապետն։ Եւ ես՝ թէ որպէս արդ. և մինչար գրեալ յղեցին ի Սուրբն Սաղիմ՝ առ ողորմահեղցայ

Պատրիարգն արթուն անուն՝ գրելով նմա թէ՝ մեք ընդ քեզ՝ մեծաւ խնդրանօք միշտ խնդրեմք. ի քոյ հարազատ եղբայր Բիւզանդեան Պատրիարգէն. զի տացէ երկիրս մերոյ Առաջնորդ զիւր սիրասուն որդի Մարգիս Վարդապետն։ Սակայն նա ոչ ընդու-նէ մեզ՝ առ ի տալ։ Եւ թէ նա եւս՝ որպէս հար-կաւորեալ գրեաց ի Սպահանայ. առ ի կատարել զխնդիրս նոցին։ Ուստի յորժամ հարկաւորեցաւ, ի Մեծապատուի յեղբօրէն իւրմէ առ ի տալ նոցա Առաջնորդ զմեր գրեցեալ Մարգիս Վարդապետն։ Յայնժամ կամեցաւ յղել զնա. ի Սուրբ Գահն, առ ի բարձրանալ ի պատիւ Եպիսկոպոսութեան. ի ձեռաց մեծի Աթոռոյն. Սրբոյն Ղեւոնդեայ, մե-ծազոյն ընծայիւք. Քանզի ի հալալ արդեանց իւրոց եա կերակել մին գուռ ամեայ ՍԿԻՀ. զմիւսի-տապատ, եւ յախնդակուռ. մինչեւ ցատան քեւէ, միշտաակ Սրբոյ Էջմիածնի։ Եւ յայնժամ եւ եւս՝ Աբրահամ ամենայն հայոց կաթուղիկոս՝ գեռ եւս՝ էր ի կոստանդնուպօլիս. եւ հանդերձեալ էր գալ ի Սուրբ Էջմիածին, առ ի յերկրպագութիւն Սրբոյ Իջման Տեառն։ Ուստի ի հանդիպել այսմ պատ-շաճաւորութեան. եւ գիպողութեան։ Սրբազան Պատրիարգն Կոստանդնու մերս գրեցեալ. յանձ-նեալ առ իւ՝ զիւր սիրասուն որդեակն. զի իբր. իւր փոխան հայր լինելով ի Սուրբ Էջմիածին. հրամանաւ իւրով առաջեսս ձեռնադրել Արհի Եպիսկոպոս ի մերոյ բոլոր Վեստրինոյ։ Սակայն. իբրեւ ի անհնար է տալ նախաստանութեանն տատուծոյ. զի անդէջքն են կոչումն աստուծոյ։ Քանզի ի գալ. եւ ի հասանել մեր ի Սուրբ Ա-թոռս, հանդեռ առ քրիստոս նախ քան զմեզ առաջ. մեր անուանեալ լուսահոգի. Աբրահամ որբայան կաթուղիկոսն։ Եւ մեր նուաստութիւն. կամակցութեամբ. եւ ընտրութեամբ ամենայնիւք. եւ հաճութեամբ Ամենասուրբ Հոգւոյն Ճշմարտի կոչեցաւ ի պատիւ ծայրագոյն Քահանայապետու-

Հողագործաց. Ծաղկեալ այնուր. եւ փառաւորագ ծերոց. Պարկեշտութեամբ, եւ ուղղադաւանց երիտա-սարդաց. Կատարումնամբ. եւ Հաստատակարգաց Մանկանց. Երկիւղազարդ. եւ Համեստացեալ Կա-նանց. Եւ առ Հասարակ ամենայն յամենայնի, ի զանազան իրս Հետեւելոց. եւ ի պէսպէս գործա-նութիւնս ընթացողաց. Ըստ իւրաքանչիւր ա-խորժակաց. եւ կարգի, եւ ըստ աստիճանի. Հաւա-տացելոց ի Տէր մեր Յիսուս Քրիստոս Աստուածն ամենայնի. Այսպէս. եւ սերբից Արամենականաց Հայկազունեայց.

Քանզի. որպէս երկնային իմացական քահա-նայապետութեանցն կարգ. որք են եւ երեակ քահանայապետութիւնք. ունին (ըստ Սրբոյն Դիո-նիսեայ) զառաջինն. զմիջինն. եւ զվերջինն, զի որով-հետեւ Սրբազան կարգ վերաձայնին. ի Հարկէ պարտին ունիլ զառաջինն. զմիջինն. եւ զվերջինն. Որոց առաջինքն՝ միջնոցն. եւ միջինքն. վերջնոցն. մատակարարելով Հաղորդին զաստուածային Լու-սաւորութիւնն. Որպէս յայտնապատմորէն Աս-տուածաբանէ Պաւղոսի Աստուածաբանիցն. ի գիրս երկնային քահանայապետութեանցն. Եւ նմա-նապէս եւս՝ որպէս օրէն է աշխարհիս, զի իշխա-նութիւնք մարմնաւորք անդրանկացանեն ի Հարց առ որդիս. Եւ եւս՝ որպէս յայտնապէս տեսանեմք ի յանօխակ կարգս գործոյ ընութեան. զի վերինքն. եւ պարզքն. ներքնոցն. ի ստորնայինս, եւ ի բա-զադրեալս՝ զներգործութիւնս գոյացականս. Ըստ այսմ օրինի. եւ յաւէտագունիւ եւս՝ կարգաւորու-թեամբ, ի Սրբազան Եկեղեցւոջ Համանմանակարի ափոսումն. եւ առաքածումն. Լուսաւորութեանց, եւ շնորհացն աստուածոյ ի վերնագունիցն. առ ստորնա-գոյնսն. իբրու թէ ի գլխոյն. առ ստորադրեալ անդամսն վերահեղեալ. Ըստ արքունի քնարեր-գուին. Որպէս իւղ զի իջանէ ի գլուխ. եւ ի մօրուսն Ահարոնի, եւ ի մօրուսն իջանէ ի գրապանս

ըղձաւոր նորա։ Որ և յայտնագոյն խօսի երևելի. զի բան բաղդատութեան երկնաւորացն. և մեր եկեղեցական կատարողականութեան կարգ տեսանի։ և նոյն նշոյլք ճառագայթեալ երևելի յերկրաւոր քահանայապետութեանս Արքայականութիւն. Ներմարմնաւորութեամբ Որդւոյն միածնի։ Որով և գրէ թէ, զեր երկնապանծ դասու մեր զննութեցեալ եկեղեցւոյ կարգապետութիւնն. զի բան Առաքելոյն Պօղոսի՝ յեկեղեցւոյ ուսան զբազմապատիկ զիմաստութիւնն։ Որ և յաւէտագոյն տարածումն ի Քրիստոսէ սկզբնաւորեալ. մինչև ցայսօր. և ցյաւիտեանս վախճան ներգործի յամենայն ազգ քրիստոնէից, աւանդօրէն պարգևմամբ միմեանց. բան կարգի յառաջացելոց. յարժանաւորութիւն Առաքինանի, և պատուոյ։ Ի մեհեագոյն գլխոյ անտի սկսեալ. մինչև ի հուսկ ստորատորան։ Արդ՝ վասն որոյ վերջապէս կրկին զայս ծանիք ամենեքին, զի բաղձայի, և զբազում երկամբք ծնեալ զաւակն Պատրիարք Վարդապետ Եղբօրս մերոյ. զՏէր Սարգիս Շնորհալի Վարդապետն Արքայնագործեցայ ի կարգս Եպիսկոպոսութեան։ Եւ եդաք իբրև զճրագ ի վերայ աշտանակի սրբոյ եկեղեցւոյ. լուսատու լինել ամենեցուն որք կարօտին։ և Առաջնորդել որոց պիտոյանայ։ Խրատել զասահակսն. յուղղութիւն ածել զյանցաւորս։ յանդիմանել զօշ եկեալսն յօրէնս Տեառն։ Հաստատել զգայթակղեալսն։ կանգնել զգլորեալսն։ Եւ որ ինչ վայելէ պաշտօնին իւր. անձել ատանց երկիւղի, և ձանձրանալոյ։ Մի որ իցէ որ ամա հակառակ կայցէ. կամ ընդ դիմակ երևեսցի։ Զի դէպ ի սա հակառակողքն. մեզ. և Քրիստոսի հրամանին են հակառակք. Կապեալն ի սմանէ կապեալ, և արձակեալն, արձակեալ, Ըստ քրիստոսի Պատուիրանին։ Պատուեսցի, և ընկալցի յամենեցունց. իբրև զՊաշտօնեայ Քրիստոսի, և

սիրեսցի որպէս զծառայ նորա։ Զի արժանի է մշակն վարձու իւրում։ Իսկ առ մշակ երկնաւորին է. ապա ուրեմն առաւելապէս պարտի ընդունիլ. բան որում վայելէ երկնաւորին։ Որպէս զի դուք ի պարտուց զերծանիցիք, եւ առ բան քանդրարա-շահ ծառայիցն պատկի ձեզ հանդերձ, մշակ ա-ռանց ամօթոյ գտանել, ասելով ցՏէրն. ահա ես՝ եւ մանկունք իմ զոր ետուր ցիս։ Ուստի եւ լսիցէ զերանաւէտ բարբառն. թէ մուտ յուրախու-թիւն Տեառն քոյ։ Փառաւորելով զանզրաւ եր-ջանկութիւնն, որ ի քրիստոս յիսուս ի Տէր մեր, որ է օրհնեալ ի բնաւից գոյից. եւ յամենայն էից մշանջենաւոր փառաւորութեամբ. յաւի-տեանս յաւիտենից. ամէն։

Գրեցաւ. Նախախնամութեամբ վկայա-կան գիրս. ի Գերագահ Աթոռն ամենայն Հայոց Էջմիածին. ի ՌՉ. ԼԳ. թուոջ փրկչին Մերոյ։

Կարելի չէ որոշել՝ որ թուականէն սկսեալ Սարգիս Աբբեպ. յարած էր կաթողիկեայ վարդապետութեան եւ հաւատակութեան, ո-րոնք կը կոչուէին այն ժամանակ «Հռոմէականք, ծայթք, Հերձուածողք, ախթարմայք կաթոլիկք, ֆռանք_ եւն։

Շատ հաւանական է որ արդէն Կոլոտի դպրոցին մէջ սկսած էին իր մէջն արմատ ձգել կաթողիկէ վարդապետութեան սերմերն։ Կոլոտի գրական գործունէութիւնը՝ (Կոլոտ, էջ 34—61) որ եւ ինքն իսկ հալածուեցաւ «վասն ճա-նաչելոյ նորին զճշմարտութիւն եւ հետեւելոյն նմա» (Յիշատակարան, էջ 189), բնականապէս այս արդիւնքը յառաջ պիտի բերէր իր աշա-կերտներէն գէթ ոմանց վրայ. վասն զի անիկայ

իր քաջ թարգմանն Ղուկաս Վ.ին, որ խարբերդցի Աբրահամ Գասպարեանի որդին, էր եւ որ Համամեայ Հաւատոյ տարածման Ուրբանեան Դպրանոցին աշակերտ, թարգմանել կու տար լատին եկեղեցւոյ նշանաւոր եկեղեցականաց՝ Յիսուսեան կրօնաւորաց կրօնական գրքերը։ Խաչգէն Վ. (Կոլոտ, էջ 55) ըստ Համմա Վ.ի (Գիրք Պատմ... Եղիշ. Կ. Պոլ. Գ. տպ. 1782) յառաջ կը բերէ Կոլոտի թարգմանն՝ Ղուկաս Վ. Խարբերդցւոյն թարգմանութիւնները, զորոնք շակերտի մէջ յառաջ կը բերեմ, վրան իմ կարծիքս յաւելուածներով։

1. «Գիրքն կենդանեաց եւ կամ Օրինակաց ի տասն հատորս բաժանեալ, որոյ մի մասն նախապէս էր թարգմանեցեալ ի մէջ ի նոյնոյ Ղուկաս Վ. է, եւ զմնացեալսն կատարեաց ի Կ. Պոլիս»։ Այս գիրքն 1750ին ի Վենետիկ տպագրեց (12×19 սմ. երկհիջեան, էջ I—XX եւ 1—1093) Սարգիս Վ. Սարաֆեան, իր անձնական ծախքովը, թէպէտ Սահակ Վ. Ահագին խոստացած էր ծախքը տալ, բայց յետոյ զղջացած։ Այս ձեռագիր մէկ օրինակը կայ ի Մատենադարանի Ս. Էջմիածնի (Կարենեանց, Մայր ցուցակ, Թիֆլիզ 1863 էջ 230)։

2. «Գիրքն Աստուածաբանութեան Սկոթոսի համառօտեալ ի Յովհաննիսէ Գաբրիէլեան» թարգմանեալ 1729ին ի Կ. Պոլիս, ընդ հովանեաւ Ս. Կարապետ Եկեղեցւոյն որ յՍկիւտար։ (Կը գտնուի յԱզգ. Մատենադարանի ի Կ. Պոլ. Ղալաթիա, Ս. Լուսաւորիչ. 37×24

ամ. մեծութեամբ, 1081 երես) եւ 1792ին ընդօրինակութիւն մը ի մատենադարանի Ս. Էջմիածնի (Կարենեանց, անդ, էջ 7)։

3. «Գիրք եօթն խորհրդոց Եկեղեցւոյ»։

4. «Գիրքն որ կոչի Լուսաւորութիւն խոստովանութեան», թարգմ. 1725ին. յԱզգ. Մատենադարանի ի Կ. Պոլ.։ Կը գտնուի նաեւ Էջմիածին այլեւայլ օրինակներ, ըստ Կարեն. անդ էջ 41. «Կուլեմանի վերինեան՝ Լուսաւորութիւն խոստովանութեան... թրգմ. ի Ղ. Վ. է խարբերդցւոյ...»։

5. «Գիրքն որ կոչի Անտառ այլաբանութեան, յերկուս հատորս բաժանեալ»։ Հեղինակ՝ Հերոնիմոս Լաւուռէթօ. Ազգ. Մոզրինի. օրինակին ճակատի թուական 1733. Յիշատակարանի թուական՝ 23 Յունիս 1740. եւ Յիշատակարան Տ. Գր. Քահանայի 29 Յունիս 1744. էջք 1826։ Իսկ Էջմիածնի օրինակն երեւի նախանական (Կարեն. էջ 3) «Անտառ այլաբանութեանց բոլոր սուրբ գրոց մեծագիր եւ շաղագիր երկու հատոր գրեալ ի թուղթ բամբակի, գրիչն անյայտ, բաժանեալ է յերկուս հատորս, արարեալ է Հերոնիմոս մականուանեալ Լաւուռեթօս Զերիվառնինոյ կրօնաւորէ ի կարգէ պենետիկտոսի, եւ թարգմանեալ է ի Լատինականէ Ղուկաս Վ.ի Խարբերդցի. ի թուին Հայոց ՌՃԿԸ 1728 (հայ թուականին կը համապատասխանէ՝ 1719!) առաջին հատորն թարգմանեալ. երկրորդն ՌՃՁԶ 1736, (1737!)։

6. «Գիրքն իմն որ կոչի Պատմութիւն սրբոյ երկրին, յերկու հատորս», Թրգմ. Ղուկաս Վ. ի գործակցութեամբ Մաղաքիա դպրի, թուական՝ 10 Օգ. 1725։ Ա. Հատ. էջ 547, Բ. Հատ. 534. յԱզգ. Մատենի։

7. «Գիրք իմն որ կոչի Խաբէութիւն աշխարհի, յերկու հատորս»։ Թրգմ. Իտալերէնէ, Ա. Հատ. Թրգմ. 1730, Բ. Հատ. 1734։ Կոլոտ պատրիարքը 1729ին արդէն իբրեւ թարգմանեալ կը յիշատակէ զայս (Կոլոտ էջ 188)։ Վիեննայի Մխիթ. Մատենադարանին Թ. 635 ձեռագրին մէջ այս գործոյն մասին կ'ըսուի, թէ է «շարագրեցեալ ի Թէոդորոս Ճէննար ան Վէլից եպիսկոպոսէ», եւ Ա. Հատորին Յիշատակարանին մէջ՝ «Գիրքս այս, որ կոչի խաբէութիւն աշխարհի, են բ հատորք. զմինն աւարտեցի Աստուծով, որ է Ա. Հատոր. եւ զմիւսն թարգմանելոյ եմ՝ նորին օգնութեամբն իւրայական լիցուք... օժանդակութեամբ եւ գոլիւք Յոհաննէս եպիսկոպոսի եւ պատրիարքի մայրաքաղաքին Կոստանդնուպօլսոյ միջնորդութեամբ Յակոբ աստուածաբան վարդապետի եւ եպիսկոպոսի աշակերտի նորին վեհափառ պատրիարքի, ես Ղուկաս ընչին վարդապետս խարբերդցի որդի Աբրահամու ի տոհմէն Գասպարեան, յորջորջեալ թարգմանիչ նորին պատրիարքի։ Թուին Քրիստոսի 1730, ի ժամանակի ապստամբչացն այլազգեաց ընդդէմ իշխանին իւրեանց։» (Հանդէս Ամսօրեայ. 1907 էջ 224։)

8. «Գիրքն այն որ կոչի Ջերմեռանդ կեանք», Բարգէն Վ. սորա մասին ոչինչ կը յաւելու: Այս գիրքն է «Ներածումն առ ջերմեռանդ կեանն Սրբոյն Ֆրանչիսկոսի Սալեզացւոյ, թարգմանեցեալ ի Տաճկականէ ի Հայս, ի Պօղոսէ Վ. է Խաչբերդացւոյ», զոր Սարգիս Վ. Սարաֆեան տպագրեց ի Վենետիկ 12 Մարտ 1748, որոյ մասին վարը:

9. «Գիրք ինն քարոզութեան ի վերայ ամենայն կիւրակէից բոլոր տարւոյն»:

10. «Փիլիսոփայական գրեանք Կոմուտին կոչեցելոյ, այսինքն Ա. Հատորն որ է Լոճիգա, եւ Բ.ն որ է Ֆիզիգայ. իսկ Գ.ն եւ Դ.ն որ է Մեթաֆիզիգայ եւ Բարոյական, որք թերեւս ոչ են թարգմանեցեալ, այլ են կիսակատարք: Զոր յետոյ Հ. Վրթ. Վ. Ասկէրեան ամբողջապէս թարգմանած եւ տպած է ի Վենետ. 1751:

11. «Փոքր գիրք ինն ի վերայ Հայր մերին»: Տես վարը Սարգսի Հրատարակութիւն 1769 «Շաղկոյցին»:

12. «Այլ ինն գիրք նոյնչափ վասն զղջման եւ ապաշխարութեան»:

13. «Այլ մանաւոր խրատողով», որոնց կարգէն կը համարի Բարգէն Վ.՝ Ագգ. Մոդրինի. «Ներկրթումն ապաշխարողի» խասլերէնէ, թրգմ. 1 Սեպտ. 1732, եր. 177. եւ «Պարտէզ Հոգւոց» եր. 552: Սակայն առաջինը պիտի ըլլայ՝ «Կրթութիւն ապաշխարողի», զոր Սարգիս Վ. Սարաֆեան «Նորապէս» թարգմանած է իտալերէնէ եւ տպած ի Վենետիկ 1751ին:

Ասոնցմէ զատ Ղուկաս Վ.ի թարգմանութիւններէն ծանօթ են ինծի նաեւ հետեւեալք, զորոնք Հաննա եւ Բարգէն Վ. չեն յիշատակեր եւ վերջնոյս բաղձանքին համեմ. (անդ, էջ 47, ծան.) այստեղ կը դնեմ։

14. «Օգտութեան աղօթք միայնախօսութիւնք...» գրեալ ի Կ. Պոլիս ի Ղուկաս Վ.է ի թուին Հայոց ՌՃՂԶ 1747. (Կարեն. էջ 2.)

15. «Մեկնութիւն Ղեւտացւոց եւ Երկրորդ օրինաց, ի Յովհաննէս գրէ ի թուին Հայոց ՌՃՁԸ 1739. թարգմանեալ ի Ղուկաս Վ.է Խարբերդցւոյ»։ (Կարեն. էջ 144.)

16. «Պատմութիւնք երկուց մասանց յաշխարհի Ամերիկայի եւ Ափրիկայի, թարգմանեալ ի Լատին լեզուէ ի Հայ ի Ղուկաս Վ.է Խարբերդցւոյ ի Կ. Պոլիս, յամի... ՌՃՀԶ 1727.» (Կարեն. էջ 220.)

17. «Մեկնութիւն Յայտնութեան սրբոյն Յոհաննու, հեղինակութեամբ Հօր Կոռնելիոսի Կոռնելեան ի Լափիտայ... թարգմանեցեալ եղեւ ի լատինականէ լեզուէ ի հայկական բարբառ ի Ղուկասու Վ.է Խարբերդցւոյ. ի խնդրոյ Տեառն Յոհաննիսի Բաղիշեցւոյ» (Տաշեան, էջ 569—70), Մեծադիր երկսիւն 343 թուղթ.

18. «Կոռնելիոսի Մեկնութիւն Թղթոյն Կորնթացւոց», հատուածական թարգմանիչ Ղուկաս Վ. Խարբերդցի (Տաշեան, էջ 772—3.)

19. «Գրքուկ իմն վասն դաստահմանութեան սրբոյն Թովմայի Հրեշտակակերպ Վարդապետի», զոր ըստ խնդրոյ Սարգիս Վ. Սարաֆեանի

թարգմանեց Ղուկաս Վ., եւ զոր Սարգիս տպած է ի Վենետիկ, 20 Յունիս 1748 «Եփիմերտէ», գրքին համեւը իրրեւ Յաւելուած։

Դիտմամբ ընտրուած այս գրքերուն ընթերցումը պէտք էր որ հետզհետէ ազդէր հաւատալեաց վրայ եւ կաթողիկէ վարդապետութիւնն ընդունելի ցուցնէր ուսումնասէր ընթերցողներուն։ Սարգիս Վ. Հռոմայ Ս. Քահանայապետին ներկայանալէն ետեւ՝ 27 Նոյ. 1745ին Հռոմէն առ բարեյիշատակ Մխիթար Աբբային գրած նամակին մէջ, զոր քիչ ետքը պիտի հրատարակենք, կը գրէր թէ «[illegible], մեղրաբուղխ եւ ռեանածորան գոյն ասեանց կաթողիկէ Եկեղեցւոյ Մօր մերոյ, բայց արդեննիս փորձառութեամբ իբր ի յաղթեր ընութեան ճաշեցի զամենաքաղցր փափկութիւն նորին... Առատանօր եղկելով զիս աւաղ կարդացի զնէն, որպէս երբեմն Սուրբն Օգոստինոս, զի յերեկոյին ծանեայ», եւն։ Արդէն յառաջ քան զառաջնորդութիւն կեսարիոյ՝ որ է 1730, պէտք է որ ընդգրկած ըլլայ կաթողիկէ հաւատքը, քանի որ իր թեմը մանելուն պէս սկսաւ այն վարդապետութիւնները հետզհետէ յայտնապէս քարոզել նաեւ ժողովրդեան։ Առոր կը վկայէ Ընանեանց Մատենադարանի մէկ ձեռագրին (Թիւ Կե) յիշատակարանը. այն է՝ «Գիրք Պետրոսի Դամինիկեան կրօնաւորի Գիրք դատաստանաց թարգմանաբար հաւաքեալ», զոր գրած է 1740ին Սարգիս Վ.-ի հետեւողներէն Աստուածատուր

քահանայն, որ կ՚ըսէ. «Յիշատակարան... Յիշեցէք... զԿոստանդնուպօլսեցի զծերիցս երանեալ Տէրն Սարգիս Շնորհալիս Աստուածաբանութեան քաջ րաբունապետն։ Որ մեծաւ յուսով եւ ինքնայօժար կամօք եւ եռափափագ սրտիւ՝ եւ ջերմ սիրով ցանկացաւ եւ ետուր գրել զսա՝ աստուածային մարգարտիւ՝ զոր Տէր Աստուած բարեաւ վայելել տացէ ընդ երկայն աւուրբք։ Հուսկ յետոյ՝ անանցն ժամանեսցէ ընդ երջանիկ առաքելոց՝ եւ երանեալ հայրապետացն դասաւորեսցէ։ Ի թուոյն փրկչին (ռ—ռ։ Ռ—ւ—Է) եւ ի թուահաշուութեանս մերում ՌՃՀԹ։ Ձեռամբ կեսարացի մեղսամած... Աստուածատուր երէցս... յիշեցէք... զմեղուցգրեցեալ զքաջ մեծ րաբունապետն մեր, որ դառնացեալ ժամանակիս բերմանց՝ ներքին եւ արտաքին կրից, զոր Տէր Յիսուս շահ անշիջանելի պահեսցէ ընդդէմ հերձուածողաց եւ հերետիկոսաց, անսայթաքելի եւ աներկբայելի ի ծոց սուրբ եկեղեցւոյ եւ ի պարծանս հայաստանեայց...։

Դաւիթեան Սեր. Վ., Աբրահամ Արծիւեանի՝ Կիլիկիոյ հայ կաթոլիկեայ Առաջին կաթողիկոսին իտալերէն կենսագրութեան մէջ (Գահիրէ 1862, էջ 68) կը յիշէ, որ Սարգիս Վ. իբր 1727ին Աբրահամ Արծիւեանին, որ այն ատեն Բերիոյ (Հալէպ) Արքեպիսկոպոսն էր, հաւատոյ դաւանութիւնը տուած ըլլայ։ Նոյն դէպքը կը յիշեն Ուղուրլեան Մեսրոպ Վ. (անդ, էջ 134) իբր 1740էն եսեւ հանդիպած ի Լիբանան, եւ Աղեքսանդրեան Անդր. Վ., (անդ,

էջ 16) որ 1737ին ի Բերիա հանդիպած կը դնէ։ Երեք թուականներն ալ սխալ կ'երեւան. վասն զի Սարգիս Վ. Կեսարիոյ առաջնորդութեան ժամանակ միայն՝ Արքեպ. ձեռնադրուելէն յառաջ, գնաց Բերիա 1732ին, որ ժամանակը կրնայ հանդիպած ըլլալ այն դէպքը։ Սարգիս Վ. այն միջոցին Ատանա ալ գացած է, ինչպէս վերն ըսինք, եւ անշուշտ ինքն է հետեւեալ Յիշատակարանին մէջ յիշուած Սարգիսը (Մանդրդն. Աճառ. Թիւ ԽԵ) Մեկնութիւն Յովհաննու Աւետարանի ի Գր. Տաթեւացւոյ գրեալ յԱտանա ձեռամբ Յարութիւն գրչի "ի հայկազեանս թուականի ՌՃՁԱ (= 1732) ապրիլի ԻԱ որն... ի խնդրոյ գեռապրողոյ Սարգիս վարդապետի եւ եռամեծ րաբունի, զոր ստացաւ զսա իւր հալալ ստացուածովն եւ իւր անձին յիշատակ...»: Դորին շարունակութիւնն է "Մեկնութիւն Ղուկասու Աւետարանի Ադնատիոս Վ.է... Յիշատակարանը նոյնպէս Յարութիւն գրչէն "... ի խնդրոյ նորարողոյ ծաղկին Տէր Սարգիս վարդապետին Կոստանդնուպոլսոյ իւր անձինն զոր Աստուած բարւոք վայելումն արասցէ... գրեցաւ ի թուաբերութեանս մերում ՌՃՁԱ (= 1732) նոյեմբ. ամսոյ Ժէ....»:

Սակայն իմ ձեռքս գտնուած պաշտօնական մէկ թղթոյ համեմատ՝ Սարգիս Հռոմայ եկեղեցւոյ դաւանութիւնը պաշտօնապէս գրով տուած է 1743ին, երբ Զմիւռնիոյ մէջ Երուսաղեմայ համար նուէրներ կը հաւաքէր։ Սարգիս Արքեպ., ինչպէս պիտի տեսնենք, Խալէպոյ

Միջոնոյ քաղաքը փախճանած է, եւ իրեն վերաբերեալ գրութեանց ծրարը կը պահուի նոյն քաղքին կաթողիկեայ Հայոց եկեղեցւոյն դիւանը։ Այս գրութեանց մէջէն հետեւեալ իտալերէն սկզբնագիր վաւերաթղթը (Դիւ. Միլ.) նոյնութեամբ կը հրատարակեմ։ Հռոմայ Հաւատոյ Տարածման Ս. Ժողովոյ գահերէց կարդինալը կը գրէ 17 Օգոստ. 1743ին առ Սարգիս Արքեպ. ի Զմիւռնիա, որ Ս. Քահանայապետը եւ Ս. Ժողովը մեծապէս ուրախացած են, որ ինքը թողլով մոլորութիւնները՝ հաւատոյ դաւանութիւնը տուած է Զմիւռնիոյ Առաքելական փոխանորդ P. Girolamo da Perainoին ձեռքը, եւ թէ ընդունած է այս մասին ղրկուած վաւերաթղթերը. թէ անոր այս բարի օրինակը շատ լաւ ապաւորութիւն պիտի ընէ եւ պտուղ պիտի բերէ անտարակոյս եւն։

Ահա այս նամակն՝

Mto. Ill° e Rmo. Mons. come Fratello. Per le mani del P. Girolamo da Peraino Vicario Ap°. di cotesta Città avendo la Santità di Nr°. Sig°. e questa S. Cong. ricevuti i documenti, co' quali V. I. abbandonati gli errori, e la Scisma della sua Nazione ha professato e professa la vera credenza, la Unione colla S. Romana Chiesa madre e maestra di tuttae le altre, e la dovuta suggezione al Romano Pontifice Capo Visibile della medesima e Vicario del Fondatore di essa Christo Nr°. Sig°. Ha la S[ta] Sua non meno

che questi miei R^{mi.} Colleg.^{i} provato piacere non ordinario si per la particolare di lei unione, che per il frutto, il quale può questa arrecare presso cotesti suoi Connazionali, i quali e animati dal di lei Esempio, e persuasi nell' intelletto dalle efficaci Sue insinuazioni, deve sperarsi che saranno per seguitarla in un'opera così santa. Nel congratularmi pertanto seco a nome anche per parte di S. B^{ne.} e di questa S. Cong^{ne} non solo della intrapresa vera credenza, che del campo spaizoso, quale se Le offre di rendere frutti abondanti nella Vigna del Sig.^{e} posso assicurarla dell' attenzione particolare, quale si avrà sempre della di Lei persona, e delle sue convenienze; e prego perfine il Sig.^{e} che perfettam.^{e} la prosperi.

D. V. J. Roma 17. Agosto 1743.

Come Fr^{ello} All^{mo}

V. Card. Atn. Pref.

Filippo Monu S. S.

Mons. Sergio Arciv. Armeno
di Cesarea / Smirne

Հասցէն՝ All' Ill^{mo.} R^{mo.} Mons.^{e} Fr^{ello}
Mons. Sergio Arciv. Armeno di Cesarea
Smirne.

4.

*Սարգսի ճարտարութեան մէկ դրուագը: Պօղոս Պատրիարքը վասն ուղղափառութեան կը հալածուի.*

*Սարգիս կը խաղացընէ ժողովուրդը եւ կը վերահաստատէ զԿոլոտ ի Պատրիարքութեան ընդդէմ Պետրոս Քիւթիւր Վ.ի:*

Ցոյնք կ՚աշխատէին Երուսաղեմի Ս. Յակոբայ վանքը Հայոց ձեռքէն առնել. Կոլոտ եւ Գրիգոր Շղթայակիր պատրիարքները («Սիոն. Երուսղմ. 1866), Յակոբ Նալեան եւ Սարգիս՝ գործակցութեամբ իշխանաց յաջողեցան Յոյները ետ մղել: Նոյն միջոցին (1737) Կ. Պոլսոյ ժողովրդեան ամենք Կոլոտը Պատրիարքութենէ հանել կը ջանային, ըսելով թէ Կոլոտ Քաղկեդոնիկներն (ուղղափառները) եւ Ս. Լեւոնը չէր նզովեր եւ անոնց հետեւող Հայերը չէր հալածեր: Մինչեւ իսկ եկեղեցւոյ մէջ անոր վրայ յարձակեցան տուներով եւ բրով, եւ կ՚ուզէին զինքն սպաննել՝ «վասն ճանաչելոյ նորին զճշմարտութիւն եւ հետեւելոյն նմա» («Յիշատակարան», էջ 189): Ուզեցին զինքն հեռացնել եւ տեղը դնել Պետրոս Քիւթիւրը, որ յետոյ Ջահկեցի Ղազար կաթողիկոսին ալ հակառակորդն եղաւ: Քիւթիւր ռամիկ ժողովուրդն իր կողմը շահած էր, որոնց մեծամասնութիւնը կը կազմէին Կեսարացի հարուստները: Պահանջեցին որ Կոլոտ հրաժարի: Կոլոտ վախցաւ, փախաւ եւ հարուստ Ըռաստեանց տունը պահուըտեցաւ: Գրիգոր Շղթայակիր, որ Կ. Պոլիս հիւանդ կը պառկէր, ինքզինքը եկեղեցի տանիլ տուաւ մահճակալի վրայ, եւ քաղցր բանիւ զիրենք ետ կեցընելու ջանաց այս ապերախտութենէն ընդդէմ Կոլոտի, եւ սպառնացաւ որ եթէ Կոլոտը հանեն պատրիարքութենէ, ինքն ալ կը հրաժարի: Ժողո-

*վարդն ըստ երեւութին քիչ մը հանդարտե-
ցաւ. սակայն քիչ ետքը դարձեալ ընդդէմ
եկան կոյսին։ Յակոբ Վ. Նալեան յեկեղեցւոջ
խօսեցաւ անօգուտ։ Կ. Պոլսոյ մէջ այն ատեն
կեսարացիներն ուրիշներէ աւելի յախուռն, ա-
հարկու եւ ազդու էին. Սարգիս առանց մեծա-
մեծները խույը հրաւիրեց, եւ զիրենք շահեցաւ,
եւ անոնց ձեռօք ռամիկն համոզեց ետ կենալ
այս սատահակութենէն, քանի որ իշխանք եւ
Սարգիս Առաջնորդն այսպէս պատշաճ կը հա-
մարին։ Այնուհետեւ Սարգիս միաբանեցաւ ա-
նոնց հետ, որ յաջորդ Կիրակին Գում Գափուի
Ս. Աստուածածնի եկեղեցին քարոզ խօսի, եւ
ազգին այս վիճակին վրայ ողբալու ատեն, իրենք
ալ լան, եւ ապա զղջացեալ պահանջեն, որ
իրենց Պատրիարքը Յովհաննէս Կոլոտն է, եւ
Քիւթիւրը կը մերժեն։ Այսպէս կը կատարուի
եւ Կոլոտ փառօք կը վերահաստատուի։*

## 5.

*Սարգիս 1738ին Կեսարիոյ Աթոռէն կը հրաժարի։
Պաշտաուբեան Պետրոս Վ., Ուզուն օղլու Սիմոն Եպիս-
կոպոս ի Ղալաթիա կաթողիկեայ կ'ըլլան։ Կիւլապ
օղլու Եղիա Վ.։ Ղալաթացի կաթողիկեայք չորս եկե-
ղեցիներու կը տիրեն։ Սարգիս 1738–1740 Առաջնորդ
Ղալաթիոյ, իր ընթացքը։ Ալգերեան Սանդ. Եպ.ի եւ
Տէրզի Շիրին օղլու Մովսէս կաթողիկեայ եպիսկոպոս-
ներու կենսագրութիւնը, տապանագիրը, եւ Ղալաթիոյ
կաթողիկեայք։ Վրթանէս Վ., Տէր Սուքիաս, Մայմուն
օղլու Պետրոս Վ., Պիպէտճի օղլու Մովսէս Վ., Ալլահ-
վէրտի օղլու Յովհաննէս Վ., Ուզուն օղլու Տէր Սահակ,
Կարապետ Վ. կաթողիկեայք։ Քիւթիւր Պետր. Վ. ի
Ղալաթիա։ Մէհմէթ օղլու Գէորգ Վ.։ Սարգիս Ղալա-*

տիոյ առաջնորդութենէն հրաժարականը կու տայ նոր-ընտիր Պատրիարք Յակոբ Նալեանի 1741ին: Մովսէս Վ. Պիպէռճեան, Կարնեցի Քերովբէ Վ., Պաճատուրեան Պետրոս Վ. Առաջնորդ Գաղատիոյ, իր օրերը: Նալեան Պատրիարքի համաձայնութիւն ընդդէմ Գաղատացի կաթողիկեայց. Նիկոմիդիոյ Առաջնորդ Աթանաս Վ. Առաջնորդ Գաղատիոյ, արտորանք եւ մահ նոյ կաթողիկեայ եկեղեցականաց եւ աշխարհականաց. Զատուրճը օղլու Սարատղեա Վ.: Սարգիս 1742–1744 Նուիրակ Երուսաղեմի Զմիւռնիոյ թեմին մէջ: 1744ին Զմիւռնիոյ վրայէն Վենետիկ կ'երթայ: Սարգսի աշակերտ Յովհ. Վ. Զմիւռնիացի, Արքեպիսկոպոս Համթայ, կենսագրութիւնը: Գր. Վ. Բաղիշեան, Արքեպ. Կարնոյ, Ջնջողին ի Հռոմ. Կ. Պոլսեցի Յովհ. Վ. Ծուցատեան. Սամ. Վ. Էնճացի: Սարգսի աշակերտը՝ Գաղատացի Իգնատիոս Վ., Կեսարացի Յովհան Վ. Արիմաննեան, Գաղատացի Էօրտէկեան Պետրոս Վ.:

Սարգիս Կ. Պոլիս տարի մը մնալէն ետեւ 1738ին կեսարիոյ աթոռէն կը հրաժարի՝ «անկերթելի կեսարացւոց» ընթացքէն զզուած. թէպէտ կեսարացիք ի զուր կ'աշխատին հրաժարականն ետ առնել տալու: Այսպէս Սարգիս 1730—38 Առաջնորդ էր կեսարիոյ, որուն համեմատ ուղղելու է գեր. Տրդատ եպ. Պալեանի կազմած «Առաջնորդական յաջորդութիւնք կեսարիոյ Ս. կարապետի վանուց» («Բիւզանդիոն» 1906 թ. 3073), որ Սարգսի յաջորդը՝ Աւետիք Եպիսկոպոսը, անշուշտ կոլոտի աշակերտ, առաջնորդ կը դնէ 1734էն սկսեալ:

Նոյն միջոցին Յակոբ Նալեան եւս կը հրաժարի Գաղատիոյ աթոռէն, թէպէտ եւ Յակոբ միշտ Պոլիս կը նստէր, եւ գաղատիա փոխանորդ մը կը դնէր, որ էր Երուսաղեմայ միաբան՝ գաղատացի Պետրոս Վ. Պաճատուրեան (Զամճեան,

824։) Այս պաշտպանութեան Վ., որ Իւմիտ օղլու Արմէն Եպիսկոպոսին հետ նոր եկած էր Էջմիածնէն, ծանօթ կաթողիկեայ էր (Աւգերեան, 32), եւ նախորդ առաջնորդ Մեծ Մովսէսին օրինակին հետեւելով՝ ժողովրդեան երկու կողմը միարան պահեց։ Առոր օրերը գաղտագողի Կիւլաղ օղլու Եղիա Վ., կաթողիկեայ միաբանը, ծպտեալ՝ Գաղատիա եկաւ, եւ քիչ ատեն ինքզինք յայտնելով՝ Ս. Հոգի եկեղեցւոյն մէջ քարոզ տուաւ, ժողովուրդն իրարմէ բաժնեց, եւ երկու կողման միարան հաւանութեամբը՝ կաթողիկեայ մեծամասնութիւնը չորս եկեղեցիներն առաւ, եւ միւս կողմն երեք եկեղեցիները (Աւգերեան, 33—4. Չամչեան 813)։ Պաշտպանութեան մասին ընդարձակագոյնս քիչ ետքը։

Երբ Յովհաննէս Կոլոտ Պատրիարքը այս լուրն առաւ, ուզեց որ Սարգիս Գաղատիոյ առաջնորդ ըլլայ։ Սարգիս տեսնելով որ հոն այլ ազգին մէջ կրօնական խռովութիւններ կան, ուղղափառք քաղքին չորս եկեղեցիները գրաւած են, եւ թէպէտ այս վերջնոյն չէր ահաճեր, սակայն չէր ուզեր երկու կուսակցութեանց այլ հակառակ գործել, հրաժարեցաւ ի սկզբանէ։ Վերջապէս զիջաւ, յանձն առաւ եւ ուղեւորեցաւ ի Գաղատիա, ուր ժողովրդենէն փառօք ընդունեցաւ, եւ զիրենք յորդորեց իրարու հետ սիրով ապրելու։ Գաղատացիք իրարու հետ կրօնական կռիւներ կը մղէին. վասն զի "Տաթեւացւոյ հետեւողք" "չարչարէին զաստուածութիւն". իսկ ուղղափառաց մէջէն ագէտներ

կարծելով որ երբ «բնութիւն» բառն արտասանուի, միշտ «երկու բնութիւն» պիտի ըսուի, նոյն իսկ "Արեւագալ"ի ժամերգութեան մէջ՝ ի դէմս Ամենասուրբ Երրորդութեան երգուած «Երեք անձինք»ին կը կցէին «եւ երկու բնութիւն»։ Սարգիս շատ աշխատեցաւ զիրենք հաշտ պահելու, խրատելով եւ սրբագրելով։ Այսպէս Սարգիս երկու տարի անդէն բանուեցաւ. յետոյ թեմը պտըտելու ելաւ, եւ Գաղատիա դառնալով՝ քաղաքը նոյն պատահման մէջ գտաւ։ Դարձեալ ամենայն ճգամբ աշխատեցաւ զիրենք հաշտեցընել, եւ տեսնելով որ իր երեք տարուայ աշխատութիւնը չկրցաւ զիրենք փոխել, եւ նոյն միջոցին Պոլսէն լուր առնելով որ Կոլոտ Պատրիարք մահացու հիւանդ է, 1740ին փութաց ի Կ. Պոլիս։

Սարգիս Արքեպ.ին ի Գաղատիա անցուցած օրերուն վրայ Աւգերեան Ստեփան Եպ. հետեւեալը կը հաղորդէ, (էջ 94—96, թէպէտ ժամանակագրական սխալով, փոխանակ Կոլոտի՝ Յակոբ Պատրիարքի հրամանաւ Գաղատիա գացած կը համարի։) «Երբ ուղղափառները Գաղատիոյ չորս եկեղեցիները գրաւեցին, եւ աս Կ. Պոլիս լսուեցաւ, Յակոբ Պատրիարք Սարրաֆ օղլու Սարգիս վարդապետը ղրկեց Գաղատիա։ Իբրեւ փոխանորդ եկաւ Սարգիս Վ., տեսաւ որ գործերը տակնուվրայ են, վանքը բնակող վարդապետներուն գրեթէ ամէնքն ուղղափառ, ինչպէս նաեւ չորս եկեղեցիներուն Տէրտէրները. Նմանապէս ժողովուրդը համարձակու-

թիւն առած է Մեծ Մովսէս Վ.ին քարոզներէն. Միւս կողմանէ Հայերը կատղած են եւ կարելի չէ զսպել, ուստի սկսաւ քարոզել, եկեղեցիներու մէջ ուղղափառներու դէմ խօսեցաւ, մէկ կողմանէ մեղմացընելով (կէսը տաղը վէրէրէք), եւ հակառակ կողման բարկութիւնն իջեցընելով, բայց երբ տեսաւ որ անօգուտ է, Պատրիարքին գրեց.

"Պատրիարքն արկայ տեսնելով՝ բարկացաւ, Գունէն հրովարտակ մը հանել տուաւ. Հրովարտակին մէջ գրուած էր. Սեւագլուխք, քահանայք եւ ժողովուրդք, հաշտ ըլլան Սարրաֆ օղլու սեւագլխին հետ, եւ անոր հրամանին հակառակ գործ չգործեն. չորս եկեղեցիներու բանալիները յանձնուին Սարրաֆ օղլու Սարգիս սեւագլխին. եթէ քահանաներէն ընդդիմացող ըլլայ՝ մօրուքն ածիլեն եւ եկեղեցիէն արտաքսեն. Այս հրովարտակն երբ Գաղատիոյ աւանին առջեւ կարդացուեցաւ, կոիւը սաստկացաւ, ուղղափառներու նշանաւորներէն 25 հոգի փաշային շղթայի զրուեցան, եւ շատ նեղութիւններէ ետեւ՝ 10 քսակ դրամ տալով ազատեցան.

"Այս կոիւէն ետեւ Սարգիս Վ. տեսաւ որ Գաղատիոյ մէջ հանդարտութիւն պիտի չգտնէ, մէկէն պիտի բաժնուի, ուրիշէն պիտի խածատի, կամեցաւ մը թողուց Պոլիս գնայ. Յետոյ Եւրոպա անցաւ, շատ մնաց Հռոմ եւ Վենետիկ, քանի մը գիրքեր տպեց, ինչպէս Լէֆիմէրանէ, Խորհրդոց պատմութիւնը. Յետոյ Պոլիս դարձաւ Հայոց մէջ ապրեցաւ. բայց ներքին

հաղարտութիւն չդանելով եւ նպատակին չհասնելով դարձաւ Լիվոռնոյ գնաց եւ հոն վախճանեցաւ 1776ին (ուրիշ՝ 1773ին)։ Սարգիս Վ.ին խոստակցութիւնը շատ ընտիր էր, եւ Հայոց մէջ անուանի քարոզիչ էր. քանի մ՚աշակերտ ունեցաւ, եւ անոնց ինչ սորվեցուց ուղղափառութիւնը։ Անոնցմէ մէկն է Հեղահօղի Յովհաննէս Եպիսկոպոս. որ նաեւ Գաղատիա եկած է,։

Այստեղ յիշուած Աւգերեանին եւ Մեծ Մովսէս Վ.ին վրայ աւելորդ չէ քանի մը տեղեկութիւն տալ։

Ա–ՒԳԵՐԵԱՆ (Ավքերեան, Աւքերեան, Աֆքերեան, Արքարեան) Մանուէլ Վ. Գաղատացի, աշակերտ Ուրբանեան Դպրանոցին, 1794 Սեպտ. 17ին Կ. Պոլսոյ Առաքելական փոխանորդ Սօֆեալեան Սահակ Վ.ին օգնական անուանեցաւ ի Հռոմայ՝ իրաւամբ յաջորդութեան։ 18 Սեպտ. 1797ին Կ. Պոլսոյ մէջ Եպիսկոպոս ձեռնադրուեցաւ "Կիւլլիստրոպոլսոյ" տիտղոսով, ի Յովհ. Վ. Աղաբեան Արհիեպիսկոպոսէն Համթայ, որ Սարգիս Արքեպիսկոպոսին աշակերտն էր, (որուն վրայ քիչ մը վարը) 1804ին յաջորդեց Սօֆեալեանի, 1806ին ստիպուեցաւ հրաժարիլ, 1820ին Պոլսոյ պատրիարքին միութեան նպատակաւ գումարած ժողովքին մէջ գտնուեցաւ Մխիթարեան Հայրց հետ, եւ 1821 Սեպտ.ին վախճանեցաւ։ Հրատարակած է՝ 1. Գրքուկ որ կոչի Սկզբունք ընական գիտութեանց, Հռոմ, 1796։ 2. Տզրուղ կիւն մատենական ասուս եղանելի Կղեմէս Հայ-

րապետին վարքերն ուղերինէ, Թիֆլիս 1796։ 3. Այլահերն ազիզ քուլու. Քէօմուրճեանց Տէր Կոմիտաս քահանայըն վարքը, Թիֆլիս 1798, Բ. տպ. Կ. Պոլիս 1862։ 4. Սուրբ Աստուածածնին մէօհճիզաներին վարքը։ Նաղըլար Թիւրք տիլինտէ Ա. [ստուածատուր] Վ. [արդապետ] Ա. [վգերեան] Ի. [սկենտար]ուան, Թիֆլիս 1810։ 5. Մանուկեան Նիկ. Աւգերեան հազրէթլէրինին քէնտի էլեաղընը իլէ թէէլիֆ օլունան հիքեայէ։ Անէ 1810։ Իշպու հիքեայէնին սուրէթինի ալմըշտըր Կարապետ Վրդ. Առաքելեան, 1882 Ըստամպօլտա։ Վերջին ընդօրինակութիւնը կը գտնուի իմ քովս։

Տէրզի Շէրէֆ օղլու Մ-ն-ն Վ.-ի մասին (վերն էջ 182) կը գրէ Չամչեան (էջ 813)։ «Դատէր ի սմին ժամանակի (1734—5) առաջնորդ Ան-կիւրիոյ գաղատացւոց Մականւ վարդապետ Շիրի-նեան, եւ խնամէր զհօտ իւր աշխամբա վարդա-պետութեամբ եւ խոհական մտօք, եւ ջանայր պահել զժողովուրդն ի միութեան, ուստի եւ յեօթն եկեղեցիս Գաղատիոյ սիրով կային երկպաքանչիւր գաղք ժողովրդոց, եւ ինքն Մականւ վարդապետ հասեալ ի ծերութիւն, եւ տուեալ բանիւ եւ գրով զուղիղ դաւանութիւն հաւա-տոյ՝ վախճանեցաւ եւ թաղեցաւ պատուով ի վանս Ս. Աստուածածնի»։ Այս Շիրինեան Մով-սէս Վ. «Սիմոն Ուռնանեան Եպիսկոպոսին, ուրիշ եպիսկոպոսի մը, շարս ծայրագոյն վարդապե-տներու շատ մը միաբաններու եւ ամուսնացեալ քահանաներու եւ ոչ սակաւ ժողովրդեան հետ

դարձած է ի կաթողիկէ հաւատս ձեռամբ մեր Հ. Յակոբ Մուրատեանի, կրօնաւորն ի չորից հիմնադրաց մերոց, եւ Հ. Սահակ Տէր-Բարսեղեանի„ կը գրէ ինձ Ընտանեան Միհրան Գեր. Հ. Իսահակ Վ. Սրապեան, անունով Ընտանեանց գրուածէն։ Մովսէս Վ.-ի մասին շատ մանրամասն կը գրէ Աւգերեան Եպիսկոպոս (էջ 86—92) զոր հոս կը համառօտեմ. «Գաղատիոյ Առաջնորդն Կարապետ Եպիսկոպոս Զէյթունցի երբ 1726 փետր. 17ին ի Կ. Պոլիս Էջմիածնի կաթողիկոս օծուեցաւ, Գաղատացի Մովսէս Վ. Շիրինեանը, զոր հետը տարած էր Գաղատիայէն, եպիսկոպոս ձեռնադրելէն ետեւ՝ Յունիս 26ի արքունի հրովարտակով՝ Գաղատիոյ Առաջնորդ զրկեց։ Մովսէս Վ. գիտնական, քաղցրաբարոյ, քաղաքավար, ժողովրդասէր մէկն էր, եւ մտերիմ բարեկամ Վրթանէս Վ.-ին, որ կաթողիկեայ էր եւ յետոյ Կեսարիոյ Արքեպիսկոպոս եղած (տես քիչ մը վար)։ Գաղատիա հասնելուն պէս ջանաց կաթողիկեայ եւ ոչ-կաթողիկեայ Հայերն իրարու հաշտ պահել. առաջիններուն առաջնորդ Տէր Սուքիաս քահանային հետ (որ Կ. Պոլսոյ Առաքելական Նուիրակին փոխանորդն էր) շատ սիրով վարուեցաւ, եւ կաթողիկեայք օրէ օր աճեցան։ Տէր Սուքիաս Մովսէս Եպիսկոպոսին ձեռնադրել տուաւ Մայրամ օղլու տիրացու Պետրոսը, որ ուղղափառ էր եւ Երուսաղէմ ուսած. ձեռնադրութեան ատեն ամփոփական նզովքները չկարդացուեցան։ Ասոր վրայ շատ եկեղեցականներ ուղղափառ եղան,

ինչպէս՝ Պիպեռճի օղլու Մովսէս Վ․, Ումիտ օղլու Սիմոն Վ․, Ալլահվէրտի օղլու Յովհ․ Վ․, Ումիտ օղլու Տէր Սահակ, Թինթին Աղան օղլուի կնոջ եղբայրը Կարապետ Վ․, որոնք վանքը կը նստէին, եւ ուղղափառ անձերու մէջ պատուարաց կ՚ըսէին։ Հայերը գրգռուեցան, Առաջնորդին վրայ վազեցին, ան ալ զիրենք հանդարտեցընելու համար Տէր Սուքիասը փիլոնազուրկ ըրաւ, եւ խրատեց որ խոհեմութեամբ վարուին, եւ քիչ ետքը Տէր Սուքիասին ներեց։ Այցելու վարդապետներուն եւ նուիրակներուն թոյլ չէր տար որ եկեղեցին քարոզեն, այլ վանքը կը հիւրընկալէր, եւ ողորմութիւնն ինքը կը հաւաքէր, ձեռքը կու տար, կը ճամբէր։ Այսպէս առաջնորդութեանը վերջին տարին՝ Պետրոս Քիւթիւր Վ․ իբրեւ նուիրակ Գաղատիա եկաւ․ Մովսէս Եպ․ թոյլ չտուաւ որ քարոզէ եւ խօստացաւ որ ինքը նուէրը կը հաւաքէ․ Քիւթիւր ասոր կոխեց անձամբ կատարել եւ կոնդակը ցուցուց․ առաջնորդը կոնդակն առաւ պատռեց եւ կրակը նետեց։ Քիւթիւր կատղած՝ Ս․ Սարգիս եկեղեցին գնաց եւ Մովսէսին դէմ սկսաւ քարոզել․ ժողովուրդը գայլացած՝ վրան յարձակեցաւ, ծեծեց, եւ Քիւթիւր հազիւ կրցաւ ինք զինք Գաղատիայէն դուրս նետել։ Մովսէս ինը տարի առաջնորդութիւն ըրաւ եւ երկու կողմը հաշտ պահեց։ Վերջին տարին՝ 1735ին Տէր Սուքիասը կանչեց, խոստովանեցաւ, ուղղափառ դաւանութիւն առաւ, եւ եօթն եկեղեցեաց ժողովրդեան ծանոյց, որ Մեծ պահոց մէջ Ս․ Գր․

Լուսաւորչի տօնին, շաբաթ օրն, Ս. Գր. Լուսաւորիչ եկեղեցին ժողվուին, ուր եւ ժողվեցան Գաղատիոյ գրեթէ բոլոր նշանաւորները. ինքն աթոռը նստաւ եւ երկար քարոզի մը մէջ' արտասուագին աչօք հետեւեալն ըսաւ. "Գիտէք իմ ոչխարներս որ Աստուած զիս ձեզի հովիւ կարգած է, ձեր առջեւն ինկած զձեզ արքայութիւն կ'առաջնորդեմ։ Սրտիս մէջ հուր մը կայ, ի վաղուց բորբոքած, բայց ես առոր ճառագայթները ցայսօր արգելեցի, հիմայ ժամանակն է արձակելու։ Այս հուրն, սուրբ հաւատքի, սուրբ եկեղեցւոյ հուրն է, ձեզմէ շատերը գիտեն ինչ կ'ուզեմ ըսել. չգիտցողներ ալ շատ կան, ես պարտքս կատարեմ եւ դատաստանի օրը պարտական չմնամ. Հռոմէական սուրբ եկեղեցւոյ հաւատացածին չհաւատացողներուն փրկութիւն չկայ։ Այս հաւատքին սիրոյն' ի հարկին պէտք է ամէն տեսակ նեղութիւն, հալածանք եւ մահ կրել, եթէ կ'ուզենք փրկուիլ". Ժողովրդեան մէկ մասն ուրախացած, միւսը զարմացած լռութեամբ մտիկ ըրին եւ ձայն մ'անգամ չելաւ. վասն զի շատ կը յարգէին առաջնորդը։

"Անկէ ետքը վանք գնաց, եւ հոն քանի մ'օրէն անկողին ինկաւ. խցին մէջ Տէր Սուքիաս պատարագ կ'ընէր եւ կը հաղորդէր Առաջնորդը։ Այս միջոցին Օրբանեան Գպրոտան աշակերտ Մէհմէր օղլու Գէորգ Վ., իբրեւ մատրանապետ գաղղիական հիւպատոս Միւսիւ Փորիի, Գաղատիա եկաւ եւ հիւպատոսին քով իջեւա-

նեցաւ (էջ 97)։ Մովսէս Վ. առոր ընդհանրական խոստովանանք եղաւ, Ս. Թոշակ եւ Վերջին Օծում անելով՝ Զատկին օրերը հոգին Աստուծոյ աւանդեց։ Այս գործը բոլոր Գաղատացիները սասանեցուց. ամէնքն ալ անց զանազանութեան վանք դիմեցին, եւ այլ հաւաքութեցին անշնչացեալ առաջնորդին, զոր եպիսկոպոսական զգեստներով աթոռը բազմեցուցած էին։ Այնուհետեւ մեծաւ հանդիսութեամբ թաղեցին զինք՝ վանքին ներքին դրան քով, եկեղեցւոյ դրան մօտ, դրան Ս. Աստուածածնի խորանին առջեւը, եւ վրան մարմարեայ մեծ կափարիչ մը դրին, տապանագրով։ Մինչեւ ցայսօր իր գերեզմանն ուխտատեղի է ժողովրդեան եւ մեծ հրաշքներ կը պատմուին։

"Մովսէս Վ. "Մեծ Մովսէս" կոչուեցաւ, վասն զի ուսեալ մէկն էր եւ պանծելի կը քարոզէր։ Շատ գեղեցիկ ձեռագիր ունէր. ընդօրինակած էր գեղեցկագիր՝ Մեծին Ալբերտի Աստուածաբանութիւնը եւ Սարգիս Շնորհալւոյ Մեկնութիւնը։ Շատ աշակերտներ ունեցաւ, ոմանք իրեն հաւատքին հետեւող։ Առաջնորդութեան երկրորդ տարին վանքը նորոգեց, Ս. Խաչ եւ Ս. Քառասունք եկեղեցիներն ածեց։ Վանքին եկեղեցական թանկագին սպասներ շնորհեց, եւ ուրիշ մեծամեծ գործեր կատարեց։"

Այս նշանաւոր անձին տապանագրէն կ'իմանանք, որ Մովսէս աշակերտ էր Գաղատիոյ Առաջնորդ Զէյթունցի Ստեփաննոս Եպիսկոպոսին (1670—1694, †-1700, 29 Ապրիլ. Տա-

վախճանեցաւ։ Ազգն զՅակոբ Վ. Նալեան պատրիարք ընտրեց (15 փետր. 1741), ակէրութեան Հրովարտակը տրուեցաւ, եւ Յակոբ Վ. Մեծ Եպարքոսին առջեւ պատրիարքական խէլ-ն հագաւ, որուն ներկայ գտնուեցան Սարգիս Վ. եւ Սեղբոս իշխանը։ Յետոյ Սարգիս Յակոբ պատրիարքին մատոյց իր հրաժարականը Գաղատիոյ աթոռէն, զոր պատրիարքը շատ ընդդիմանալէն ետեւ ստիպուեցաւ ընդունիլ։

Սարգիս Արքեպ. երբ 1740ին Գաղատիայէն Պոլիս եկաւ՝ իրեն Աթոռակալ թողած էր Մովսէս Վ. Պիպէռճեանը։ Նոյն օրերը Գաղատիա երկու միսիոնար եկած էին, մին Կարնեցի Քերովբէ Վարդապետ, իսկ միւսը "փաթէրա" մը, որոնք Ս. Քառասունք եկեղեցին իջեւանեցան, քարոզներ տուին եւ դարձեալ մեկնեցան։ Ասոնց թէեւ Աթոռակալը չհակառակեցաւ, բայց ժողովրդեան մէջ խռովութիւն ինկաւ, եւ շատ եկեղեցիք կաթողիկեայց ձեռքն անցան։ Ոչ-կաթողիկեայք Աթոռակալին խոստացան որ զինք Առաջնորդ անուանել պիտի տան, եւ այսպէս կառավարութեան ձեռօք շատ եկեղեցիներուն դարձեալ տիրացան։ Տէր Սուքիաս Պոլիս գնաց դարման գտնելու, իրեն հետեւեցան Պահատուր Պետրոս Վ. եւ Սիմոն Եպիսկոպոս։ Ասոնք գաղղիական դեսպանին միջնորդութեամբ յաջողեցան հրովարտակ հանել՝ Մովսէս Վ.ին Լափինէ աքսորման, որ սակայն ճամբայ չելած մեռաւ. իսկ Գաղատիոյ փաշան դահընկէց ընել տուին. եւ Ամէաճի Էֆէնտիին

միջնորդութեամբ առիպեցին Նալեան պատրիարքը, որ իրեն Առաջնորդ անուանած Թովմաս Վ. Թամամշեանի տեղ, որ գինարբումէկն էր եւ Գաղատիոյ վանքը կը նստէր, Պահատուր Պետրոս վարդապետը դարձեալ Առաջնորդ դնէ։ Պատրիարքն Պահատուր Վ.ին սպառնացաւ՝ որ եթէ երեք Աթոռները չյիշէ պատարագին մէջ, հանգիստ պիտի չթողու զինք (Զամչ. 825. Աւգեր. 96—104)։

Պահատուր Վ.ին հետ Սիմոն Եպ. Սմուտեան եւ Տէր Սուքիաս դարձան Գաղատիա, երկու կողմանէ սիրով ընդունեցան, եւ երբ յաջորդ օրն Սմուտեան Եպիսկոպոս՝ Առաջնորդին հրամանաւ պատարագի մէջ երեք աթոռները յիշեց, գզիրք եւ ժողովուրդք թողուցին դուրս ելան եկեղեցիէն, եւ առիպեցին Առաջնորդն, որ այլ եւս չյիշուի։ Նալեան պատրիարք սաստիկ սպառնալիքներ գրեց, բայց քանի որ ողջ էր Ահմեդի Էֆէնտի, չկրցաւ բան մ'ընել։ Երբ 1744ին Ահմեդի Էֆէնտի մեռաւ, պատրիարքը նոր հրովարտակ մը հանեց, եւ Նիկոմիդիոյ Առաջնորդ Աթանաս վարդապետը խիստ Պէրմանով Գաղատիա ղրկեց։ Աթանաս վարդապետ տեսնելով որ զինք մտիկ չեն ըներ, բանտարկել եւ Սամսոնի բերդն աքսորել տուաւ՝ Պահատուր օղլու Պետրոս Վ.ը, Սմուտ օղլու Սիմոն Եպիսկոպոսը, Մէհտէր օղլու Գէորգ Վ.ը, եւ աշխարհականներէն՝ Մելքոն օղլու Մուրատ աղա եւ եղբայրը Հաճի խուպեարը, Հաճի Պէրաշաթ, Խըրխըմ օղլու Արթին չէլէպի, Վար-

գերես օղոս Սահակ, եւ Թոմայիրճի Սահակ Ցէտէ։ Գաղատիա ծնեալ էր միայն Զատրքճը օղոս Կարապետ Վ., ան ալ վերջէն բռնուեցաւ, բանտարկուեցաւ, փախաւ Վենետիկ եւ հոն 1789ին վախճանեցաւ (Ալգերեան 109—112։) Աքսորեալներն ամեներ եւսքը Պոլիս դրկուեցան, ուր Պահստուրեան եւ Մէհաէրեան վարդապետները վախճանեցան տառապանքէն. իսկ Ոււմուանեան Եպիսկոպոս Հռոմ փախաւ (Զամչ. 826), 1766ին Վենետիկ էր (Հայ. Վենետ. 344), 1767ին Հռոմ Ձեռնադրիչ կարգուեցաւ եւ 1774ին ի Հռոմ վախճանեցաւ եւ թաղուեցաւ Ս. Մարիամ Եգիպտացի եկեղեցին։

Քանի մ'ամիս եւսքը Յակոբ Պատրիարք իւր դաւընկերները քովէն ցրուեց մէյմէկ տեղ Ռոտոսթոյ ղրկելով զերենք, եւ Սարգսի ալ առաջարկեց որ ուզած տեղոն երթայ։ Սարգիս յանձն չառաւ ստորագրութիւն, սակայն տեսնելով որ Պատրիարքը Պոլսէն իր հեռանալը կ'ուզէ, Երուսաղէմ Ս. Յակոբայ վանաց նուիրակ եղաւ, եւ Գրիգոր Շղթայակիր Պատրիարքին թղթովը Զմիւռնիոյ վիճակին մէջ ժողովարարութեան ելաւ։ Զմիւռնիա հասաւ 1742ին եւ իրր երեք տարի այն վիճակին մէջ շրջելով՝ տուրքերը ժողվեց բերաւ Կ.Պոլիս եւ յանձնեց Յակոբ Պատրիարքին, ի փոխարէն ընծայագրի։ Յակոբ անմիջապէս դրամն Երուսաղէմ ղրկեց եւ 1744ին Գրիգոր Պատրիարքէն ընծայագիրն ընդունելով՝ Սարգսի յանձնեց հաստատական

մը, որով կը մերժուի Սարգսի Հակառակորդաց զրպարտութիւնը՝ իբր թէ Երուսաղէմի դրամէն կորզած ըլլայ։

Սարգիս Հաստատակամն անդէն եւեթ՝ գործերն եւ ինչքերը կարգի դնելով՝ որոշած էր Եւրոպա մեկնիլ։ 1744ին ամառը Զմիւռնիա մեկնեցաւ, ուր ինչպէս վերն ըսինք՝ 1745ին կաթուղիկեայ հաւատոյ դաւանութիւնը տուած էր, անկէ ալ շուտով եւ գաղտնի Վենետիկ նաւարկեց, ուր եւ հաստատուեցաւ ուրախութեամբ։

Հետն առած էր իր աշակերտն Հեղահոգի Յովհաննէս Վարդապետը, որ Զմիւռնիացի էր, ազնիւ եւ առաքինի վարուք եւ քաջ գրիչ։ Այս Յովհաննէս Վ. Աղաբեան ունի ձեռագիր ընդօրինակութիւն մը "Թովմայի Աքուինացւոյ Գիրք եօթն խորհրդոց եկեղեցւոյ զոր ի Հռոմ իբր 400 տարի հնութիւն ունեցող օրինակէ մ'ընդօրինակած է վեց ամսոյ մէջ՝ սկսեալ 20 Մարտի 1748. այս օրինակին վրայէն յետոյ 1775ին փետր. 25էն մինչեւ Օգոստ. 2 ընդօրինակած է ի Հռոմ Գրիգոր Վ. Բաղիշեան Ախալցխացի վրահայն, որ եւ կը պահուի Անտոնեան Հարց Մատենադարանը ի Կ. Պոլիս (Թիւ ձԱ)։ Բաղիշեան ծնած է 1749ին, 1783ին Հռոմ Հայերէնի ուսուցիչ եւ Ասորերէն թարգման էր, 1815ին ձեռնադրիչ Արքեպ. եղաւ աթոռակից "Կարնոյ", 1833ին եղաւ Մխարեան Անտոնեան վանաց, եւ վախճանեցաւ 1836ին ի Հռոմ։ Հրատարակած է փոքրիկ տետրակ մը (23 էջ) 1794ին ի Հռոմ՝ "Սրբա-

ղան Տեառն մերոյ Բենեդիկտոսի ԺԴ.. Սահմանադրութիւն», թարգմանեալ ի Հայ։ Գրած է նաեւ վկայական 1796ին ի Հռոմ տպուած «Սկզբունք բնական գիտութեանց» գրքին։ Ունի ձեռագիր ընդօրինակութիւններ եւ նամակներ (Գիւ. Ընտ.)։

Այն վերջին ընդօրինակութեան յիշատակարանին մէջ Բաղիշեան կը գրէ. «Օրինակեցաւ սա ի գաղափարէն Յովհաննիսի Բիւզանդիացւոյ արժանաւոր քահանայի մականուամբ Տուրսունեան կոչեցելոյ»։ Կ'երեւայ թէ Բաղիշեան կը շփոթէ Կ. Պոլսեցի Յովհ. Վ. Տուրսունեանը, Զմիւռնիացի Յովհ. Վ. Ագարեանին հետ, ինչպէս յայտնի կ'երեւայ վերջնոյս խօսքերէն, որ նոյն ձեռագրին մէջ իր մասին տեղեկութիւն կու տայ։ Յովհ. Վ. Տուրսունեան 1773—1780ի միջոցներուն Լիվոռնոյ էր (Ուղուրլ. 139), ինչպէս նաեւ 1787ին, որ յայտնի է Թովմ. Մեծոփեցւոյ մէկ ձեռագրին (Մատ. Ընտ. թիւ ՀԱ.) յիշատակարանէն։ «Այս գիրքս օրինակեալ եղեւ ի լաւ եւ սրբագիր օրինակէ, գրչութեամբ Գէորգայ ուրումն նուաստի Կ. Պոլսեցւոյ ի թուականութեանն Հայոց ՌՄԼԶ (= 1787), ի մարտի ԺԸ ի Թագաւորեալ քաղաքն Կ. Պոլիս։ Եւ անտի վերստին օրինակեալ եղեւ ձեռամբ նուաստի ուրումն Աբեղայի Տուրսունեան յովհաննէս կոչեցելոյ ի մեծէն Պոլսոյ ի վերոյ գրեալ թուականութեանն Հայոց ի Սեպտեմբերի ԺԸ ի Լիգուռնա (= Լիվոռնոյ) աւագ դքսական քաղաքի»։

Միեւնոյն ձեռագրին մէջ Յովհաննէս Վ. իր մասին հետեւեալ տեղեկութիւնը կու տայ. «...Արդ ես ամենանուաստ ծառայ Տեառն Յիսուսի, եւ յետինս աշակերտ նորոյս Սիոնի կաթուղիկէի մերն իմոյ Հռոմէականի անյաղթելի պետրոսեան գահին, Յովհաննէս Ագարիայն կուսակրօն արեղայս, եւ աշակերտ ձեռնասուն Տեառն Սարգսի Շնորհալւոյ եւ Աստուածաբան վարդապետին Կ. Պոլսեցւոյ եւ Արհիեպիսկոպոսին Կեսարիոյ, մինչ էի ի Հռոմ, յամի Տեառն 1747 Յուլիս ամսոյ 7, կարգեցեալ ի Սրբոյ Ժողովոյն ի վերայ փրոփականտայի դպրատան եղեալ տղայոցն Հայոց, առ ի յուսուցանել եւ վարժել զընթերցմունս հայկականի լեզուի:», Կը պատմէ փրոփականտայի աշակերտաց հետ գրատունը պտըտած ժամանակ՝ կը տեսնէ այս գիրքը, որ հին տառով Քռնայ վանքը գրուած էր, Թարգմանուած 1325ին Յովհ. Երզնկացի կամ Ծործորեցի վարդապետէն եւ 1705ին Անտիփաս Վ. Լեհացի փրոփականտայի նուիրած էր. եւ որովհետեւ գրատնէն գիրք տուն տանիլ արգելուած էր, Յովհաննէս Վ. կը դիմէ առ Վրթանէս ձեռնադրիչ Արքեպիսկոպոսն Կեսարիոյ, որ եւ Ս. Ժողովոյ քարտուղար «Մոնսինյիօր Լերքար Նիբօլայի» ձեռօք բերել. Ժ. Պ. Քահանայապետէն հրաման կ՚առնու տուն տանելու եւ ընդօրինակելու: Թէ Յովհ. Վ. 1748էն ետեւ որչափ Հռոմ մնացած է մեզի ծանօթ չէ: Այնուհետեւ Լիբանան գնաց եւ հաստատուեցաւ Զմմառու վանքին մէջ: Այստեղ կաթողիկեայ

Հայոց կաթողիկոսն՝ Միքայէլ Պետրոս Գ. Գասպարեան 1755ին Ս. Ժողովոյ հրամանաւ զինքն Ամիդայ (Տիգրանակերտի) Արքեպս. ձեռնադրեց եւ 1758ին հետը Հռոմ տարաւ (Աղէքս. Ա. 11) որ կաթողիկոսին հետ երկու տարի մնալէն ետեւ՝ դարձաւ հետն, մնաց ի Բերիա (— Աղէքս. էջ 28 եւ Ա. էջ 45 չիմոթմամբ զատ անձ մը կը դնէ՝ "Յովհ. Վ. Ամիդեցի ձեռնադրեցաւ ի վերայ Զմիւռնիոյ", որ նոյն անձն է միլիթին հետ՝ որ է Զմ—ն—ւ, ձեռնադրեալ ի վերայ Ամ—յ —)։ Յետոյ, անշուշտ 1763էն ետեւ՝ երբ անդուշն ի ծածուկ Հայ կաթողիկեայ Արքեպիսկոպոսն Աբրահամ Նուրիտեան՝ Յովհ. Վ. Նուրիխանեանի մօրեղբայրն վախճանեցաւ, Ամիդ գնաց եւ քիչ մ՚ատեն հոն հովուեց։ Սակայն հակառակորդ մոլովուրդն իրեն դէմ հալածանք հանեց եւ զինք վտարեց։ Յովհ. Արքեպս. այս միջոցին գտնուած պիտի ըլլայ ի Գաղատիա, ինչպէս վերն յիշատակեցինք։ Այնուհետեւ հաստատուեցաւ ի Կ.Պոլիս եւ այստեղ վախճանեցաւ։ Մահուան թուականն անծանօթ է, սակայն ունինք իր մահէն քանի մը տեղեկութիւններ։ 1785 Մայիս 1ին Կ.Պոլսոյ Հայ կաթողիկեայ կղերն եղբայրութիւն մը հաստատած էր՝ Հայ կաթողիկեայ եկեղեցականի մը մահուանէն ետեւ՝ անոր հոգւոյն համար պատարագ մատուցանելու։ Առոր տակը՝ ուրիշ երկու եպիսկոպոսներու հետ կը ստորագրէ նաեւ "Յօհաննէս աղարեան Եպսկօ. զմիւռնացի."։ Դարձեալ Յովհ. Արքեպ. 1797

Սեպտ. 28ին ի Կ.Պոլիս գրած է վկայական մը, որով կը ծանուցանէ՝ թէ ինք «Յովհ. Վ. Աղաբեան ի Զմիւռնոյ... արհիեպս. Համթայ...», եպիսկոպոս ձեռնադրեր է 18 Սեպտ. 1797ին Սահիման Վ. Աւգերեանը, որ Կ.Պոլսոյ Հայ կաթողիկէից Առաքելական փոխանորդ Սոփիալեան Սահակ Վ.ին «Օգնիչ վիքարն» էր, ինչպէս վերն յիշեցինք։ Այս վկայագիրը կը պահուի Վիեննայի Մխիթարեանց մատենադարանը (Տաշեան, 1033)։ Այսուհետեւ երկար ապրած պիտի չըլլայ, վասն զի այս ատեն արդէն 75—80 տարեկան էր։ Աղեքսանդրեան Ա. (էջ 12) կ՚աւանդէ թէ Յովհ. Արքեպս. 1770ին Յունիս 22ին Կ.Պոլիս վախճանած ըլլայ, որ սակայն ամբողջովին սխալ է, ինչպէս ըսածներէն յայտնի է։

Մինչեւ այս ժամանակ Սարգիս Արքեպիսկոպոս ուրիշ հանճարեղ շատ աշակերտներ ալ հրահանգած էր։ Ասոնցմէ մէկն էր Գաղատացի Իգնատիոս Վ., որ Էջմիածնի նուիրակ ըլլալէն ետեւ բարի մահուամբ վախճանած էր՝ 1789էն յառաջ։ Դարձեալ Կեսարացի Յովհան Վ. Արիմանեան, որ յետոյ Թիֆլիսի Հայ կաթողիկեայց երէց եղած էր։ Ասոր մահուան մասին՝ Թիֆլիսի Հայ կաթողիկեայ ննջեցելոց գրքին մէջ (Թղթ. 34ա—34բ. Փ.Զ. Տաշեան, 924) կը կարդանք. «Յամի Տեառն 1781, 30 Հոկտ. Յաւուր երեքշաբաթի 9 եւ կէս ժամու աւուրն փոխեցաւ առ Տէր բարի եւ երջանիկ մահուամբ յառաջագոյն ընկալեալ զամե-

նայն սուրբ խորհուրդս եւ զպապական ներողութիւն Վեր. Յովհաննէս Վ.ն Սրիմանեան, առաջին գարեղան ժողովրդեանս Հայոց զկնի միոյ եւ կէս ամի հիւանդութեան իւրոյ կոչեցելոյ սեւ գեղձացաւ ի տան պարոն Գրիգորին Հէրմէթեան, որում եւ զամենայն ինչս իւր նմա եթող կտակաւ, թէպէտ եւ սակաւ ոչինչ գտաւ առ նմա։ Եւ ի 31 հոկտեմբերի յերեկոյին ընկերակցութեամբ ամենայն ժողովրդեան Հայոց եւ բազմաց այլոց ազգաց, եւ ընկերակցութեամբ Եղբայրութեան Սրբոյն Անտոնի Պատուացելոյն փառաւորապէս բերեալ եղեւ յեկեղեցին մեր սաղմոսիւք եւ օրհնութեամբ, եւ զկնի բազում աղօթից թաղեցաւ առաջի աւագ խորանին Սրբոց Մարտիրոսաց ի գերեզմանին Սինոր Գայլին հրամանաւ նորա. եւ էին ամաց սորա 76։ Էր սա Կեսարացի եւ աշակերտ Սարգիս Վարդապետին։ Ես Հ. Ղուկաս Սիմոնեան եկեղեցպան վկայեմ։»

Դարձեալ Գաղատիոյ մէջ հրահանգած էր Էօրտէկճեան Պետրոս պատանին, զոր վերջէն Վենետիկի մէջ (1747—1753) քահանայ եւ վարդապետ ձեռնադրեց։ Այս Պետրոս Վ. վերջէն սիրով ընկերացաւ Սարգսի յաքսորս՝ անոր ծառայելու համար, ինչպէս վարը պիտի տեսնենք։ Պետրոս Վ. 1772ին Վենետիկ էր։

## 6.

*Սարգիս ի Վիեննոյի. Հռոմ երթալու պատրաստութիւնք. առ Մխիթար Աբբայ գրած ինը նամակներուն օրինակները. Սարգիս ի Հռոմ Հոկտ. 1745–1747. 1745 Նոյ. 20ին Հաւատոյ դաւանութիւն կու տայ, կը ներկայանայ Բենեդ. ԺԴ. Քահանայապետին: Վրթանէս Վ. Ստեփանեան, Աբբեպ. Կեսարիոյ, Ձեռնադրիչ ի Հռոմ, կենսագրութիւնը: Զէյթունցի Ստեփ. Եպ. Սաչը, եւ Զէյթունցի Կաբաալետո. Եպ. Առաջնորդը Գաղատիոյ: Կաթողիկէութեան սկիզբն ի Գաղատիա: Գր. Աբբեպ. Եղեսիոյ եւ Հ. Յովս. Վ. Ստեփանեան, Աբբեպ. Եղեսիոյ ի Հռոմ. Հ. Մկրտիչ Վ. Անանեան: Սարգիս ի Հռոմ ձեռնադրութիւններ կը կատարէ, Սրբազուցման ժողովոյ մէջ կը գտնուի: Յովհ. Վ. Գասպար, Աբբեպ Մէրտինի. Ակնցի Մինաս Վ. Փերուզեան, Աբբեպ. Զմիւռնիայ կաթողիկեայք: Սարգիս Աբբեպ. ի Վիեննոյի. տպարան կը հաստատէ եւ 18 կտոր գիրք կը տպագրէ. Սահակ Աբբեպ. Աճագին: Սարգսի տպարանն ի Կ. Պոլիս, եւ նոյնին երկրաշարժի ատեն փլատակներու տակ մնալը: Սարգիս 1769ին ի Կ.Պոլիս կը հրատարակէ «Ժաղկոցիկ»: Սարգիս ի Հռոմ, Լիվոռնոյ եւ Զմիւռնիա:*

**Սարգիս Աբբեպ.** 1744ին ամառուան վերջերն Վենետիկ հասաւ, եւ անդուռն կաթողիկէայ Հայերէն սիրալիր ընդունելութիւն գտաւ, եւ տեսնելով որ ամէնքն ուղղափառ են, մեծապէս ուրախացաւ: Շատ կը հրճուէր՝ երբ Ս. Ղազարու վանքն երթար, «զոր դեռ տըեսնէր զերթ քաջ Աբբայ հայր յոգնիմաստ, կարգոյ՝ ատրքին Մխիթար:

Մխիթար Աբբահօր հետ կենակցելով եւ Միաբաններէն շատ սէր եւ մեծ շուք գտնելով՝ շատ կ՚ուրախանար եւ կը մխիթարուէր, եւ զայս մեծ գոհութեամբ կը յիշէր մինչեւ կենացը վերջը: Վենետիկ էր նաեւ Յովհաննէս Սեպուհ

(Մարքիզ) Սեղբոսեան, որ զՍարգիս բանիւ եւ գործով կը մխիթարէր ու կը քաջալերէր։

Սարգսի Կ. Պոլսէն մեկնելուն նպատակը՝ նեղութենէ փախչիլ եւ հանգիստ փնտռել չէր։ Առաքելական մեծ դիտաւորութիւններ ունէր. 1. Նախ ուխտ ունէր Հռոմ երթալու Սրբոց Գլխաւոր Առաքելոց գերեզմանին, եւ Սրբազան Քահանայապետին իր հպատակութիւնն յայտանելու։ 2. Վենետիկի մէջ յատուկ տպարան մը հաստատել կ՚ուզէր ուղղափառական գրքեր տպելու եւ ազգին մէջ տարածելու համար։ 3. Վենետիկի մէջ կ՚ուզէր աշխարհական վարժարան մը հաստատել, ուր հայ պատանիները ուղղափառ կրթութիւն առնելով՝ երթան իրենց բնակավայրը եւ կաթողիկէութեան քարոզիչ ըլլան։ Այս դիտաւորութեանց մանրամասնութիւնը անտեսնենք այժմ։

Սարգիս Արքեպս. գրեթէ տարի մը Վենետիկ մնաց՝ հաստատուած բուն քաղքին մէջ, եւ Հռոմ երթալու պատրաստութիւն տեսաւ՝ կանխաւ հրաման խնդրելով Ս. Ժողովէն։ Այս նպատակաւ իր Արքեպիսկոպոսական ձեռնադրութեան վկայականը լատիներէն թարգմանել տուաւ Մխիթար Աբբահօր մէկ աշակերտին, եւ այս եւ ապագայ առթիւներով Մխիթար Աբբահօր հետ թղթակցութիւններ ունեցաւ։ Այս նամակները՝ թուով ինն, կը պահուին Վենետիկի Մխիթարեան Դիւանը. Հայոց գիտնականը, չորրորդ անեղուկն հանճարոյ յատուկ սիրով ընդօրինակ ամբողջապէս։ 28 Յունիս 1906 թուականէն նամա-

կամ Գեր. Հ. Աթանաս Վ. Տիրոյեանէն խնդրած էի ընդօրինակութիւնը, եւ իր ազնիւ միջնորդութեամբն՝ Գեր. Հ. Մկրտիչ Պոտուրեան ազնուութիւն ունեցաւ յիշեալ ինը նամակներուն ընդօրինակութիւնն եւ Սարգսի քանի մը հրատարակութեանց վրայ տեղեկութիւններ 4/17 Օգ. 1906ին ուղարկել ինծի.

Առաջին նամակին բնագիրը (Գիւ. Մխիթ. Վենետ.) հետեւեալն է.

Տեառն Տեառն Մխիթարայ, Տիրամբ զօրացելոյ եւ զգօնացելոյ Աբբահօր՝ քաղցրաբարբառի եւ գերահրաշ վարդապետի ծայրագունից. զՏեառնական ողջոյն յոյժ սիրով ընծայեմ:

Յետ որոյ, խոնարհաբար խնդրեմ ի քումմէ քաղցրախնամ Հայրութենէ, զի ընդ այս փոքրիկ ողջունագրի ց'ի քեզ ժամանեցելոյ դեսպանակցական մեկնութեանն իմ, հրամայեսցես անդրանձիլ ի մերոյին լեզուէ ի չարագրութիւն լատինական, ընդ առաւելով եղելով ամենայն հմտագունիւ եղբարբ. բայց չմնալ ազատէմ՝ զի որպէս եւ մարթ իցէ թարգմանչի այնորիկ՝ հարազատեալ զանդրանձեցեալն իւր՝ իւրոյն նախադասականի, որպէս առ բանն՝ այնպէս առ բանն, բայսուութեամբ ամենայն ընդդէմ առհեստի զանձեցելոց առարկը, եւ բանից. Իսկ թէ ի դէպ ժամու նորայնին ունոյթեան Սրբոյ ժողովոյն այիսոյացոյ ի Հռոմ. Եւ զի՝ յայնժամ՝ զառանիլն անդանոր կարօղի թարգմանչի ուղերտ՝ որպէս զատանի տառանօր, զորչի թէ իր ինն է ի զժուարագունից. Եւ զի թէպէտ ճանաչեմ իսկ, ի ձեռն այսպիսեաց թախանձանաց՝ յաւէտ ձանձրոյթ լինելն իմ Գերապայծառութեանդ. Սակայն ներելոյ մեծագործութիւն երկայնմտութեանդ, որպէս առ այս, զի առնիցէ զիս լինել հաւատարմակս՝ ոչ յանդուգն ժպրհութիւն, այլ խոնարհութեանց քոյոց

հայրենականաց հանդէսն չափազանց, որոց դատանիլն անճանաչ՝ ապերախտ բարուց է ցուցակ, քան զոր չէք գանհկագոյն ընձեռումն բարոյականութեան։

Արդ իցէ թէ, Ամենափառ խոհականութիւն Տեառն՝ կամեսցի առ իս առնել զայս բան, թէ այնքան աշխատանք թարգմանչին վարկպարազի եւ ի դերեւս է։ Քանզի ի սեամս Սրբոյ ժողովոյն ոչ որ է, որ հարցանիցէր լինելոց է զվկայականն քումդ, մինչ քոյդ գիտութիւն յայտ իսկ է ամենայն ումեք՝ յու ի յու եւ այլն։ Բարւոք վարկանիմ զայդ բան Տեառնդ առ իս. բայց ճանաչէ եւ իսկ մեծութիւն քոյոյ հանճարեղութեան, թէ նաեւ այս եւս է ի բարեպաշտագունիցն, զի գտանիցի որ յիրականութիւնս կասկածելիս՝ ի կոյսն անտարակոյս։ Զի բազմիցս՝ կարծելին՝ կարելի է առնն պատուաւորքն եկեղեցւոյ. մանաւանդ թէ՝ զօգուտն իւր յայլոց ձեռաց ճանաչելն՝ արանց վսեմագունից է՝ ազնիւ փորձառու բնագէտքն։

Վերջապէս, թէ զինի թարգմանեցեալ գոլոյն, ձեռագրելով համանշանիցես համահաւասար գոլոյ թարգմանեցելոյն՝ առ այն յորմէ թարգմանեցաւն, յաւարելի իմն առնես որքան առ իս, զի եւ ոչ այն փոքր շնորհ համարեցեալ լինի յաչս իմ։ Եւ որքանիցս կրկնապատկեսցի ի գերապատուութենէ քումմէ՝ առ ծառայս Տեառն այսպիսիք ձիրք բարերարականք, գրեթէ այնքանիցս բազմապատկեսցի եւ առ իս վերաճանաչումն պարտականութեան առ քոյդ երախտիս, ընդ որովք մնամ պարտաւորեցեալ ըստ ամենայնի։

Սարգիս Արքեպիսկոպ.
Կեսարիոյ Կապադովկեան

յամի Տեառն 1745 ի Սեպտ. 5 ի Վենետիկոյ։

Այն ինչպէս նաև. յաջորդ նամակներուն Մխիթար Աբբահօր գրած պատասխանները չեն գտնուիր Սարգսի թղթոց ծրարին մէջ ի Լիվոռնոյ։ Սարգսէն ունինք յաջորդ երկրորդ նամակը՝ նոյն տարին գրուած առ Մխիթար Աբբահայրն (Դիւ. Մխ. Վենետ.), որ կը խօսի Զմիւռնիոյ Առաջնորդ Սահակ Ահագին Արքեպիսկոպոսին տպագրել ուզած մէկ գրքին վրայ, որոյ մասին ընդարձակ պիտի գրենք Սարգսի հրատարակութեանց շարքին մէջ։

Գերյարգելութեանդ յաւէտ Ողջունմամբ. Խնդալ ի Տէր:

Գիտակ լեցի Աբբայադ իմ՛ Հայր, զի յերեկեան աւուր առ իս հասուցելոց գրեանց՝ մինն էր ողջունագիրն Սահակայ վարդապետին, յորում զտպագրեցմանէ Օրինակաց գրոցն զբաղմամբ ակներեւաբար գրեալ էր առ իս, զորոց ծանուցանել մի ըստ միոջէ Տեառնդ ի ձեռն գրոյ իմիք՝ առ երկարս տարածի, եւ մանաւանդ որպէս պիտոյն է ոչ բացայայտի։ Աւասի կարօտի այսմ, զի ի մէջ ամամիջոցիս այսմիկ՝ փոխարերապէս խորհրդակցիցիմք ընդ երկարս գիրակութենէ զայսմանէ, որովհետեւ ի պատրաստի է ոլանալն փօստին գէթ յոյնկոյս յերկուշաբաթիս։ Նա եւս զի փութացուցեալ է վերոգրեցեալ պետն՝ վաղագիւ գրել զպատասխանն գրոյն։ Յաղագս որոյ՝ եթէ կարելի իցէ յուղարկեացես այսօր ի քանեերորդ ժամու զպարզերյն վանաց, զի գալով իմ՛ յոյժ՝ խօսեցայց ընդ Տեառնդ իմոյ, առ ի համահամբոյր դիտաւորութեամբ գրել պատասխանատուտն, լինելով քոյ ողջ յաւէտազունիւ պերճափառութեամբ ի պարծանս իմս նուաստութեան

Սարգիս Արքեպիսկոպոս Կես.

1745 ի Հոկտ. 2 ի Վենեցիայ։

Այն Հոկտեմբեր ամսոյ մէջ Սարգիս Արքեպիսկոպոս՝ հետն առած վերն յիշուած Յովհ. Վ. Արարատը մեկնեցաւ ի Հռոմ, ուր Հայ կաթոլիկեայ ազգայինք եւ Հռոմայ Եկեղեցւոյն աստիճանաւորք շատ սիրով ընդունեցան զինք։ Այնտեղ 20 Նոյ. (Ն. Բ.) 1745 թուականով՝ Հաւատարմութեան Մ. Ժողովոյն Գահերիցուն կողմանէ թուղթ մը տրուեցաւ իրեն (Դիւան Կիլիկոյ Հայ Եկեղ.) որով կը ծանուցուի՝ թէ Սարգիս Արքեպիսկոպոս Հաւատարմութեան Մ. Ժողովոյն առջեւ ծնրադրելով՝ առած է Արեւելեայց համար սահմանուած հաւատոյ դաւանութիւնը եւ արձակում առած, Հետեւաբար կրնայ քահանայութեան եւ Արքեպիսկոպոսութեան ամէն իշխանութիւնները գործադրել։

Նոյեմբեր ամսոյ վերջերը՝ Հռոմ հասնելէն ետքն որ եղաւ, Ներկայացաւ Բենեդիկտոս ԺԴ. Սրբազան Քահանայապետին, եւ թարգմանի ձեռք խօսելով՝ շատ սէր եւ պատիւ ընդունեցաւ։ Սարգիս անձամբ կը ստորագրէ այս ունկնդրութիւնը Նոյ. 27ին Հռոմէն առ Մխիթար Աբբայ գրած նամակին մէջ մեծ ուրախութեամբ։

Յառաջ կը բերեմ այս երկրորդ նամակին (Դիւ. Մխիթ. Վենետ.) օրինակը։

Տեառն Տեառն Մխիթարայ գերապատուելոյ վարդապետի եւ Աբբահօրն կարգեցելոյ Սրբազանի, ողջոյն ի Տէր Յիսուս։

Ընդունակ քոյին աղօթից նպաստութեամբն, զինի տասանց աւուրց բարեբաստութեան ժամանելոյն մեր ի մեծս Հռոմ, առ ի յանդիման լինել երեւելոյ շնորհալեաց ծայրագոյն Քահանայապետին, նաեւ

առ ի համբուրել զոտս նորին սրբազանս, զնոյնպէս յերկնականագոյն պայման նորին հրաշալեօք։ Որ եւ ի տեսանելն զիս ամենամեծքս, տրամադրելոց զինքն տարածանելի շնորհանորոն բազկաց իւրոց, համահամագոյն աւետարանականն Հօր, պարանոցափար գգուանօք պատեցաւ գգլխով երկրորդի անառակին՝ զթանձականս ողջագուրանօք։ Ունէր ճշգրտիւ յայնժամ բառ Գրոյն զաւհեակ նորա ի մերոյ գլխոյ իմոյ, եւ զաջ նորա պատեցելոյ զինեւ։ Արդ ո Հայր իմ գերամենար, ներհմնութեամբ զիւեի իւկ յառաջինմ, մեզպարուզիս եւ ռեմնածորան զոյն առեանց կաթուղիկէ Եկեղեցւոյ Մօր մերոյ. բայց արդ եւս փառաւորութեամբ իւր ի յաղթեր լիութեան ճաշակի զամենալայնագոյն փափկութիւն նորին։ Նաեւ ոչ բաւականացաւ երեւելին այն Գլուխ Եկեղեցւոյ ի այնչափ զգուանս, եւ ի ողջամբ ընկալմունս իւր՝ դէպ առ նուաստութիւնս իմակեցելոյ։ Այլ եւ ի յառկեալ նշան իւրոյ յորդորել սիրոյ, երկիցս զգաղտն իմ զմեղաւորագոր համբուրելոց։ Թողլով արդէն ի բաց՝ երկարութեան անկն ի գրել, զհոյակապմունս նորին զերաշխաւորայիս, եւ խոնարհութիւնս ամենայնաբարոյութիւնս եւ սիրաբանականս։ Առատաձեռ եղկելով զիս առ այդ կարգացի զինէն, որպէս երբեմն սուրբն Օգոստինոս, զի յերեկոյին ճանեաց եւ այլն։ Ուստի սրբեմն, ի մեծութենէ հիացմանս ի լուռ եկեալ, եւ ի սպառ յափշտակութեան մնացեալ, չունիմ զայլ ինչ բնաւ երբէք զկար խօսելոյ, եթէ ոչ յետ ճանաչելոյն իմ զիս հող եւ մոխիր՝ ասել. Օրհնեալ է եւ օրհնեալ եղիցի Տէր ի պարգեւս իւր։

Վերջապէս, յուշ առնել Սրբազան Հայրութեան քում զատորեւ գրեցելոցս՝ ոչ է մերձանալի։ Զի համբաւն այն առատ հակ, եւ առաւել իսկ թէ առաւելք, զոր յանձնեցից ինձ առ ի առնել ի Հռոմ, զոր եւ բերեալ առ բառ ամփոփութեան, եւ ես յանձնեցի պատկերահան պարոն Յոհաննէ-

Առաջին երկու տուներու գլխագիրներն ընթացիկ՝ իսկ վերջին սեանը վերէն վար կարդալով կ՚ունենանք «Արրայ Հայր կոչէ Սարգսի.»։ Այն նամակին վերջը կը յաւելու. «Վրդանէս Արքեպիսկոպոս ալեծաղիկ Հօրէ խնդրէ Սրբազանէ, շնորհակալ եմ բառ ամենայնի, զի անդր քան զոր կարծիւքն՝ ողջամբ ընկալայ. եւ սիրով գգուեալ զմեզ։ Նմանապէս եւ զՍտեփաննոսէ Աստուածաբան վարդապետ եղբօրէ մերմէ անեմ։»

Այս ՎՐԹԱՆԷՍ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻՆ վրայ, զոր Սարգիս յաջորդ նամակներուն մէջ ալ կը յիշէ, Հետեւեալ տեղեկութիւնները ժողված եմ։ Ծնած է 1661ին ի Կեսարիա. մականունն է ՍԵՔԵՆԵԱՆ (կենդանի էր 10 Մայիս 1738. Գիւ. Անտ.), աշակերտած ի Գաղատիա Զէյթունցի Ստեփանոս Վ.ին, որ Սուլը կը կոչուէր մազն ու մօրուքը բնաւ չկտրելուն համար, եւ որ 1670էն մինչեւ 1694 Գաղատիոյ Առաջնորդ էր, որմէ ետեւ Զէյթուն մեկնած եւ հոն վախճանած 1697ին։ Վրթանէս Գաղատիոյ վանքին միաբան ըլլալով՝ Էջմիածնի միաբան եղած էր։ Ստեփանոս Զէյթունցւոյ յաջորդին ժամանակ, որ էր իր ազգականն Կարապետ Վ. Զէյթունցի (յետոյ 1726 փետր. 17ին ի Կ.Պոլիս Էջմիածնի կաթուղիկոս օծուած, Տաշեան 341, «Երեւակ» 1860, ձեռնագրութենէն ետեւ՝ Կ. Պոլսէն հպատակութեան թուղթ մը գրած է Իննովկենտիոս ԺԴ. Քահանայապետին Փափազեան Իգն. Արքեպ. Պատմ. Եկեղ. Վենետ. 1848, էջ 933

4), — ուղղափառութիւնն սկսաւ ի Գաղատիա Հայոց վանքին մէջէն, նոյն իսկ Հաւատութեամբ Կարապետ Վ.ի։ Գաղատացի կաթողիկեայց 30 Յունիս 1717 գրած մէկ նամակէն կ՚իմանանք, որ կաթուղիկէութիւնն սկսած էր հոն հաստատուն կազմել 1707ին, եւ 1717ին արդէն իրր 400 կաթողիկեայ Հայք կային, որոնց կ՚այցելէին Մխիթար Աբբահօր աշակերտք, ինչպէս Հ. Յովսէփ Վ. Պրուսացի կը յիշուի 1716ին։ Թէպէտ անկէ շատ յառաջ՝ Մելքոն Վ. Տաստապանեան, Ուրբանեան Դպրանոցի աշակերտն եւ Մերտինի Հայ կաթողիկեայ առաջին եպիսկոպոսն (1708ին ձեռնադրուած), 1686ին Գաղատիա գացած եւ հոն եկեղեցականներէն եւ աշխարհականներէն քանի մ՚անձինք շահած էր։ Նաեւ Մերտինէն կաթողիկեայ մէկ քանի վարդապետ եւ տիրացու եկած էին եւ կաթուղիկէութիւն կը սորվեցնէին. որոնցմէ դատ կը յիշուին նոյնպէս, Ընտանեան Միաբանութեան Հիմնադիրներէն (1707ին) Հ. Յակոբ Վ. Մուրատեան (1740ին Եպիսկոպոս Բերիոյ եւ 1749 Կաթողիկոս Տանն Կիլիկիոյ) եւ Հ. Սահակ Վ. Տէր-Բարսեղեան (1740ին Եպիսկոպոս Քիլիսի)։ Ասոնք հետզհետէ իրենց վաստըկեցան վանքին միաբաններէն Գաղատացի Պահատուր օղլու Պետրոս Վ., Գաղատացի Տէրզի Չիրին օղլու Մովսէս Վ., Ուռհայեցի Յովհաննէս Վ. եւ մանաւանդ Կեսարացի Վրթանէս Վ.ը։ Այս Վրթանէս Վ. արդէն 1705—6ի միջոցին Պոլիս գնաց, եւ անկէ Էջմիածին՝ Կե-

տարիոյ Արքեպիսկոպոս ձեռնադրուելու ։ Ինչպէս Իր քահանայ ձեռնադրելուն աթիւ տուած մէկ կոնդակին մէջ (10 Մարտ 1738, Դիւ. Անտ.) կ'ըսէ, Կեսարիոյ Կապպադովկացւոց Արքեպիսկոպոս ձեռնադրուեցաւ յէջմիածին 1706ին Աղեքսանդր կաթողիկոսէն (որուն ուղղելի Աղեքսանդր Ջուղայեցւոյ կաթողիկոսութիւնը՝ տեւած 1706—1714 Նոյ. 12)։ Աւգերեան, էջ 55, 84 սխալմամբ կը դնէ ձեռնադրեալ Աստուածատուր կաթողիկոսէ։ Եւ ինչպէս Իրքը յիշեալ կոնդակին մէջ կ'ըսէ, եպիսկոպոսութեանը 15դ տարին Հռոմ գացած է։ Ուստի 1706—1720 Առաջնորդ եղած է Կեսարիոյ (բառ այսմ՝ ուղղելի է Տրդատ Եպիսկոպոսի ցանկը «Բիւզ.» 3073, ուր չեն յիշուիր թէ Վրթանէս եւ թէ Կարապետ Եպիսկոպոս Կեսարիոյ «Հայ. Վենետ.» 343) որ 1743ին ի Վենետիկ էր։

Երբ 1714 Նոյ. 12ին Աղեքսանդր Կաթողիկոս Ջուղայեցի կը վախճանի, կ'երեւայ թէ Վրթանէս Արքեպ. անոր յաջորդին ընտրութեան համար Էջմիածին գացած է։ Վասն զի յաջորդն Աստուածատուր Համադանցի 7 Մայիս 1715ին կաթողիկոս ընտրուելէն ետեւ († 10 Հոկտեմբեր 1725)՝ մեր Վրթանէս Արքեպ.ը Կ. Պոլիս Նուիրակ ղրկած է։ Այս մասին ձեռքս կան վեց կոնդակներ (Դիւ. Անտ.) 1. Անթուական կոնդակ Աստուածատուր Կաթողիկոսի՝ ուղղեալ ի Կ. Պոլիս Նուիրակ գացող եւ մեռոն տանող «Տէր Վրդանէս Աստուածային վարդապետին,

որ է աջ բազուկ մեր եւ նեցուկ սրտի խնդոյ նաեւ վաղեմի բան բարեկամ մեր.„ Կաթողիկոսին կնիքը կը կրէ ՌՃԿԴ (= 1715) թուականը։ 2. Կոնդակ Աստուածատուր Կաթողիկոսի 18 Փետր. ՌՃԿԵ (= 1716) թուականաւ, առ «Պատուաւոր եղբարց գուլէկար վարպետանեաց որ կայք բնակեալ ի յաստուծոյ օրհնեալ մայրաքաղաքն Կոստանդնուպօլսի„, յորում կ՚ըսէ թէ «մեր սիրելի որդի Վրդանէս վարդապետն, որ է սեփական ծնընդական եւ անընդական ձեր աստուծոյ օրհնեալ քաղաքէն„, Կ. Պոլսոյ նուիրակ կարգած է եւ հետը սուրբ միւռոն ղրկած, եւ գիրքը կը յանձնարարէ ըսելով՝ «թօփրաղ ղայրաթի քաղեցէք„ եւ անոր թեւ թիկունք ըլլան։ 3. Ընթուական կոնդակ Աստուածատուր Կաթողիկոսի, ուղղեալ Կ. Պոլսոյ Վէզիր խան եղեալ Արեւելեան եւ Արեւմտեան վաճառականաց, որոնց կ՚ըսէ թէ Էջմիածնի համար սահմանուած գանձանակին մէջ ինչ որ գումարուած է, յանձնեն Վրթանէս վարդապետին, որ իր նուիրակն է։ 4. Կոնդակ Աստուածատուր Կաթողիկոսի, գրեալ 30 Մարտ 1717ին առ Մծամեծս Կ. Պոլսոյ, որով կը ծանուցանէ, թէ «զսիրելի եւ զհոգեւոր որդին մեր զՏէր Վրդանէս Աստուածաբան վարդապետ„ նուիրակ ղրկած է ի Կ. Պոլիս, եւ իրեն յանձնեն նուէրները եւ Էջմիածնի գանձանակին դրամները։ 5. Կոնդակ Աստուածատուր Կաթողիկոսի, գրեալ ի Թիֆլիզ 5 Հոկտ. 1717ին առ Վրթանէս նուիրակ ի Կ. Պոլիս, որով կը հաստատէ Վրթանէսէն

նաման ընդունած ըլլալը, կը խօսի աննելքերնե-րու վրայ, կը ծանուցանէ Ալեքսիանոս Վ.ը Արաբկերու առաջնորդ եպիսկոպոս ձեռնա-գրելը, եւ Վրթանիսին կ՚ըսէ թէ Ս. Աթոռը զանոնյ լի արդեամբք՝ 6. Կոնդակ Աստուա-ծատուր Կաթողիկոսի գրեալ ի 6 Հոկտ. 1717 առ «Խստամպօլու նուիրակ Վրթանէս Աստուա-ծատրանութեան Վ. եւ Հարազատ ս. Աթոռոյս, եւ առ վէքիլ եւ գանձապետ մահտեսի կարա-պետ„, որով կ՚իմացընէ թէ Մեղրեցի Մարտի-րոս Վարդապետն, որ հինգ տարի նուիրակ էր եւ հիմայ մեռած է, ամենեւին դրամ ղրկած չէ, եւ բաց ի կարնէն նաեւ ի Կ.Պոլիս ստա-ցուածք ունի, զայն գրաւեն եւ ղրկեն։

Վրթանէս Արքեպ. 1720ին արդէն Համ էր, ուր գացած է կամ Կ.Պոլսէն, կամ Էջ-միածնի վրայէն, եւ թերեւս ինք տարած է այն թուղթը ի Համ, որոյ մասին Ստեփ. Ռօշքա իր ժամանակագրութեան մէջ (1717) կը գրէ՝ թէ "Աստուածատուր Համատանցի ...կաթողի-կոսն Էջմիածնայ ...գոլով ուղղափառ՝ գրեաց առ Կղեմէս փափն զթուղթ հնազանդութեան իւրոյ, եւ զմեծ գոլասանս Սուրբ Եկեղեցւոյն Հռո-մայ„։ Այստեղ պաշտօնապէս կ՚ընդունի Վրթա-նէս Արքեպ. կաթողիկէ հաւատքը, եւ 1721ին Կղեմէս ԺԱ. Քահանայապետէն կ՚անուանուի (երկրորդ) Ձեռնադրիչ Եպիսկոպոս հայ աշա-կերտաց Պրոպականտան Հռոմայ, իբրեւ յաջորդ 1721ին վախճանեալ Գրիգոր Արքեպիսկոպոսին Եղեսիոյ, որուն արդէն փոխանորդութիւն կ՚ը-

նէր։ 1744ին ի Հռոմ՝ կաթողիկէ վարդապետութեանց պաշտպան գիրք մ՚ընդօրինակել տուած է Վրթանէս Արքեպ. (Մադրն. Անտ. Թիւ. Մխթ.)։ Վախճանած է ի Հռոմ՝ 3 Մարտ 1761ին 100 տարեկան, եւ թաղուած յեկեղեցւոջ Հայոց Ս. Մարիամ Եգիպտացւոյ։ Շիրմին վրայ գրուած էր հետեւեալ տապանագիրը, յօրինուած Կ. Պոլսեցի Հ. Միքայէլ Անանեան Մխիթարեան Վ.-է (Տաշեան, 460ր եւ 470ր, ուր կայ նոյն հայինակէն միեւնոյն անձին համար շինուած ուրիշ տապանագիր մ՚ալ, որ չէ գործածուած։) Նոյն Անանեան Վ. շինած է նաեւ Երանելի Տեառն Կոմիտասայ (նահատակեալ 1707ին) տապանագիրն, Կ. Պոլիս, ի գերեզմանոցի Պալըգլըյի (Տաշեան, 470, վերկած Հ. Յովհ. Թորոսեանի ուշադրութենէն, ի Վարս Մխիթարայ, Վենետ. 1901 էջ 231։)

Տապանագիր Վրթանայ Արքեպիսկոպոսի Կեսարացւոյ

ՏԱՊԱՆ ԿԵՍԱՐԵԱՆ ԱԹՈՌ ՊԱՐԹԵՒԻ·
ԿԱՊԱԴՈՎԿԻՈՅ ՔԱՋԸՆԹԱՑ ՀՈՎՈՒԻ·
ՎՐԹԱՆԷՍ ԱՆՈՒՆ ՎԱՐԴԱՊԵՏ ԱՐՀԻ·
ՊԵՏՐՈՍԵԱՆ ԳԱՀԻՍ ԺԱՏԱԳՈՎ ԱՐԻ։
ՊԱՏՈՒՈՅ ԵՒ ԸՆՉԻՑ ԵՂԵՒ ԱՆԱՐԳԻՉ·
ԲԱՐՈՒՔ ՎԵՀԱՆՁՆԵԱՅ ԳԹԱԾ ԵՒ ՏՈՒԻՉ·
ԵԿԵԱԼ Ի ՀՌՈՄ ՈՒԽՏԻ ԿԱՏԱՐԻՉ·
ԿԱՐԳԵՑԱՒ ՀԱՅՈՑ ԱԶԳԻ ՁԵՌՆԱԴՐԻՉ·
ՑԱՅՍ ՎԱՆԸՍ[1] ԿԱՑԵԱԼ ԱՄԸՍ ՔԱՌԱՍՈՒՆ·

[1] «Այսինքն՝ ի վանս Հայոց սրբոյն Մարիամու Եգիպտացւոյն որ ի Հռոմ»։ Նշան. գրչին — Տաշեան, անդ։

ՎԱՐԵՑԱՒ ՄԱՐՄՆՈՎ, ՈՐՊԷՍ ԶՈՒԱՐԹՈՒՆ.
ՄԻՆՉԵՒ ԺԱՄԱՆԵԱՑ ՆՄԱ ՕՐ ՄԱՀՈՒՆ.
ՎԱԽՃԱՆԵԱԼ ԱՄԱՑ ԵՐԿԱԿԻ ՅԻՍՈՒՆ.
ՅԱՄԻ ՏԵԱՌՆ 1761 Ի ՄԱՐՏԻ 3.

Մինչդեռ Սարգիս Արքեպիսկոպոս Հռոմ էր, Ս. Ժողովը տեսնելով որ վերոյիշեալ Վրթանէս Արքեպիսկոպոս ծերութեան պատճառաւ անկարող էր ձեռնադրութիւն կատարել, գահերէց կարգինալն ուզեց որ Սարգիս Հռոմ մնայ իբրեւ Օգնական ձեռնադրիչ։ Սակայն Սարգիս խնդրեց զինք ազատ կացուցանել, վասն զի ինք դիտաւորութիւն ունէր տպագրական եւ առաքելական գործերով ազգին լուսաւորութեան աշխատիլ, ինչպէս ինքն 1773ին առ Ս. Ժողովն գրած նամակին մէջ կը յիշէ։ Այնատեն Ս. Ժողովոյ գահերէցն 26 Յունուար 1746ին Սարգիս Արքեպիսկոպոսին նամակ մը (Դիւ. Լիվ.) գրելով՝ կը խնդրէ իրմէ, որ նամակ գրէ այլեւայլ տեղեր, ինչպէս նաեւ Մխիթար Եպիսկոպոսին, որ Վենետիկ Մխիթարեանց վանքը կը բնակէր իբրեւ ձեռնադրիչ, եւ ներկայացընէ հայ կաթողիկեայ վարդապետ մը (որ չըլլայ նորադարձ), որ ունենայ պահանջուած յատկութիւնները, եւ զայն ձեռնադրել տան իբրեւ Օգնական Եպիսկոպոս Վրթանէս Արքեպիսկոպոսին, եւ իրեն որոշեալ ամսական մը կապեն։ Այս Օգնականն եւ յետոյ յաջորդն եղաւ՝ Անտոնեան Միաբան Հ. Յովսէփ Վ. Սահիաննեան (կամ Այվազեան, Աճէմեան) որ 22 Յունիս 1749ին ի Լիբանան՝ յեկեղեցւոջ վանաց Յիսուս Փրկչի Աբրահամ Պետր. Ա. Ար-

ծիւեան կաթողիկոսէն ձեռնադրեցաւ տիտղոսիւ Արքեպ. Եդեսիոյ եւ 1750ին Հռոմ Օգնական կարգուեցաւ։

Սակայն Սարգիս Արքեպ. ցորչափ Հռոմ էր այս փոխանորդութիւնը կատարեց։ Այսպէս 7 Դեկտ. 1745 թուակիր թղթով (Դիւան Լիվոռնոյի Հայոց Եկեղ.) Հռոմայ փոխանորդ կարդինալ Եպիսկոպոսը հրաման կու տայ Սարգսի՝ ըստ խնդրանաց Ս. Ժողովոյ, որ Դպրատան աշակերտ Յովսէփ Պարխուտար եւ Յովհ. Գրախչեան (Craicion) հայ կաթուղիկէ պատանիներուն չորս փոքր աստիճանները տայ։ Դարձեալ 15 Դեկտ. 1745 թուականաւ՝ (Դիւ. Լիվ.) որ Դպրատան աշակերտ Յովհաննէս Դատապաշի եւ Յովս. Պարխուտարի երեք սուրբ աստիճանները տայ, որոնց առաջինը 1768 Ապրիլ 30ին Մէրտինի Արքեպիսկոպոս անուանուեցաւ Ս. Գահէն, 21 Յունիս 1768 ձեռնադրուեցաւ ի Զմմառ Միքայէլ Պետրոս Գ. կաթողիկոսէն, 22 Օգոստ. 1769 հրաժարեցաւ աթոռէն եւ տարիէ մը Հռոմ երթալով 3 Ապրիլ 1773ին վախճանեցաւ եւ թաղուեցաւ Ս. Մարիամ Եգիպտացի եկեղեցին։ Ունի ձեռագիր ընտիր երկասիրութիւն մը "Մեկնութիւն հանդիսաւոր պատարագի", գրուած 1767ին ի Հռոմ (Մատ. Անտ.)։ Նոյնպէս 11 Օգ. 1746 թուականաւ (անդ), որ Ս. Մարիամ Եգիպտացի Եկեղեցւոյն մէջ քահանայ ձեռնադրէ Սահփան Յովհաննէսեանը։ Ինքն ալ 1773ին գրած վերյիշեալ նամակին մէջ կ'ըսէ. "կարտինալ կարաֆա... ետ ձեռնադրել մեզ

զերիս քահանայս եւ զերկուս սարկաւագունս ի յեկեղեցին Հայոց, յորոց մինն էր Մոնսինեոր Դասապան, որ է այժմ այդր։»

Հետեւեալ (հինգերորդ) նամակին մէջ Տ. Մխիթար Աբբայ (Դիւան Մխ. Վենետ.) կը յիշատակէ այն ձեռնադրութիւնը եւ ուրիշ ազգային դէպքերու պարագաները։

Տեառն Տեառն Մխիթարայ Դպրապետեայ վարդապետի, եւ պերճափառ Աստուածաբանի մեծի, եւ մեծազնից պատուականաց Բազմ՝ ճառիկեայ ընծայեալ զՅիսուսականի աղէոյն, Ողջ կեցցես ի Տէր։

Թէպէտ մտադրեցեալ ի Հարկեցուցչէ առի-պանաց կրկին սիրոյ՝ որքան ի յանցելումն այնքան ի միւսումն շարաթոյն ի վարանս եղէ քանիցս՝ առ ի գտանել թերեւս գիւտ իմն յարմար, անթիւ որով մարթանայցէի վեհանձնութեան քոյ, գոնէ իբրու սակ ողջունագիր լեցի գրել. այպանաւ բա-ւանելոյ անհնարանաց սրտիս միայն որ առ ձերդ գերափառութիւն։ Բայց ըստ սրտի իմոյ ոչ գտանելն իմ զայնպիսի առարկայ ինչ՝ շուրջ զորով երկարիցէի չթամբքք գրչի զխօսիւն. բաւական վարկայ փոխանակ առարկայի փոխարինել զսէրն իմ պարզ, եւ զերձն իմ ջերմեռանդ, որ առ որբազան անձնդ, եւ առ որբազնայն անձինս որ ընդ քեւ։ Ես կամիմ թէ վարկցէ քոյդ գերամեծար Հայրութիւն զգրելն այսօրինակ քարտիցն առ քեզ, ոչ վասն այլոյ ունիցէ իրաց, եթէ ոչ սակս պարզագունի սիրոյ՝ որով սիրէ զհազարիցս արժանից սիրոյ եւ զսիրեցեալդ ի Տեառնէ սիրով մանկանաս։ Այլ եւ զՀալածմանէն, զոր արդէն լսեալն պատահելոցն՝ փոթորիկն Հայոց ըստ անուան, եւ ըստ գործոյն համանման Յակոբկայ՝ Հալածէ զեկեղեցին՝ լուար։ Զինչ առնեմ. Տէր Յիսուս զգաստութիւն տացէ այնց անմտաց, որ զայդ կատարեցեալ զայլք ի

յորջէն ի բռնէ խորամանկութեամբ հանիցեն ի հրապարակս եւ ինքեանք ի բացեայք եղեն, չքմեղելս ձեւանալով, բստ բանի Տեառն Յոհ. 20, 12։ Մանաւանդ թէ լալին առէ, զի պարտան թէ զայն ինկ ապարին։

Եւ զմերն զխարդաւթիւն յանձնիցուք ի յԱստուած՝ աղօթիւք սրբոց իւրոց զի ի յամենայնից կողմանց շնորհիւ Տեառն գլխադրութիւն ունիմք։ Եւ ի յանցեալում Կիւրակէի զվեցերորդ ատեանն Սարկաւագութեան եւս Գօլէճու երկու որդեկայն, այսինքն Թաստպատ Յօհաննիսին եւ Պէրխուտարէնց Յովսէփին։ Այլ եւ յայժ յաւէտաղէս ուրախացայ վասն ազատելոյ զծերունին Յօհաննէս վարդապետ հայրն մեր ի յայն աշխատաւոր գործաւութենէն, քանզի արդէն նա զբարւոքն պատերազմն պատերազմելով զընթացս իւր կատարուեալ է, եւ յուսամ թէ այսուհետեւ կայ եւ մնայ նմա արդարութեան պսակն, եւ այլն։

Վերջապէս ընտրից մնակրանից եղբարց, ի Սրբանոցի այդր որդոցանելոյ, բստ իւրաքանչիւր առաքինի այդէյն մատուցանեմ։ Յանձնելով զիս ի յաղօթս նոցին, որ եմ բստ ամենայնի պարտական, եւ պատրաստական ծառայ ձեզ ծառայից Աստուծոյ։

Սարգիս Արքեպիսկոպոս Կեսարիոյ

Յամի 1746 ի փետրվ. 12, ի Հռոմ։

Եւ եթէ գիր ինչ եկեալ իցէ, եւ կամ այսուհետեւ գայցէ վասն իմ ի Կ. Պօլսոյ, շուտով առ իս առաքեսցեն՝ աղաչեմ։

Այս 1746ին ի Հռոմ հինգ երանելի անձանց սրբացուցման հանդէսը պիտի կատարուէր, եւ ամէն կողմանէ կաթողիկեայ եպիսկոպոսներուն կարծիքը կը հարցուէր։ Արքայական Քահանայապետը հարցուց նաեւ Սարգսի կարծիքը,

որուն պատասխանեց Սարգիս Հայերէն գրութեամբ մը, եւ ըստ բաղձանաց Քահանայապետին Սարգիս իւր Հայերէն գրութիւնը կարդաց Համագումար Հանդիսական ժողովոյն մէջ։ Այս Հայերէն գրութեան մէկը եւ լատիներէն թարգմանութեան օրինակն ունիմ (Դիւ. Լիվ.), որուն կռնակն իր կենսագրին Նուրտինեան Յովհ. Վ.ին գրով գրուած է "Վճիռ տուեալ ի գերիմաստ եւ յոգնահանճար շնորհապարտ Սարգսէ Վ.է եւ Արքեպիսկոպոսէ Կեսարիոյ ի սրբազնագման երանելւոյն Փիլիպպոսի ի կարգէն Կարուճինաց։" Ահա այս գրութեանց օրինակը.

Ով Ամենագերապատիւ սրբազոյն Հայր, եւ երեւելի գլուխ զինուորեցելոյ Սրբոյ Եկեղեցւոյ։ Զի որովհետեւ զանազան տարբերութիւնքն երանեցելոյն Փիլիպպի սիմարբինկոյ քահանայից, ի կարգէ Սրբոյ Ֆրանչիսկոսի Կապուճինաց եղելոյ։ Նաեւ պրանչելագործութիւնքն նորին թարց իմիք երկբայութեան հաստատեցելոց եղեն ի ձեռն ճշմարտապատում ապացուցութեանն, որ տուաւ ի Հռոմ։ Յաղագս որոյ ամենայն կերպիւ վայելէ, եւ պատկանի զի սրբութիւնձեր սկսանիցի ի սրբազասցանել զնա ի պայծառութիւն Սրբոյ Եկեղեցւոյ, եւ ի յոգուտ հաւատացելոց։ Եւ մանաւանդ արժան իսկ համարիմ ի յայսպիսում ժամանակի տանել զայս, յորում տառապեալ է ի յարեւելեան կողմանն Հայաստանն ուղղափառաց ի ձեռաց հերետիկոսաց, եւ հերձուածողաց։ Քանզի ունիմ յոյս ի բարձրեալն Աստուած, եւ ի բարեխօսութիւն երանեցելոյն այնորիկ, զի որպէս նա՛ նահատակեցաւ մարտիրոսութեամբ վասն ուղղափառ հաւատոյն, ի ձեռաց հերետիկոսաց։ Նոյնպէս աղօթիւք նորին զադարեսցին հալածմունքն ի յուղղափառաց, եւ եւս ի յարգէն

Հայոց։ Այլ եւ Հերետիկոսք եւ Հերձուածողք դարձցին ի ծոց, եւ ի յարկն Սրբոյ եկեղեցւոյ, առ ի լինել մի հօտ եւ մի հովիւ։

Սարգիս Աղեքսանդրեան, Արքեպիսկոպոս
Կեսարիոյ Կապադովկեան Հայոց։

Beatissime Pater. Quum virtutes, martyrium, et miracula Beati Fidelis a Sigmaringa Ordinis Fratrum minorum Capucinorum Sacerdotis jam sint apud Sanctam Sedem comprobata, sicut ex Compendio typis edito, et mihi per fidum interpretem Armenice reddito colligitur; haesitandum minime puto, quin imo aequum, justumque censeo, ut a Sanctitate vestra in Sanctorum albo descubatur, his praesertim temporibus, quibus Catholicae fidei Cultores, ac mei praecipue gentiles Armeni, a schismaticis et haereticis in Oriente saevissime exagitantur. Futurum enim confido, ut eo inter Sanctos relato atque invocato, qui ab haereticis pro Fide orthodoxa mortem sustinuit, et persecutio heterodoxorum cesset, et ipsi etiam heterodoxi ad sinum matris suae Romanae Ecclesiae revertantur: atque ita fiat, ut unum sit Christianorum omnium ovile, et unus Pastor.

Sergius Alexandri Armenus
Caesareae Cappadociae Archiepiscopus.

Այս մասին ինքն եւս յիշատակութիւն կ՚ընէ 28 Մայիս 1746ին առ Մխիթար Աբբայ

գրած (վեցերորդ) նամակին մէջ (Գիւ. Մխ. Վենետ.), որուն մէջ յիշատակութիւն կ'ըլլայ քանի մը հոգւոյ կողմանէ իրեն դէմ եղած թշնամութիւններու մասին, որուն ինչ ըլլալը շատ յայտնի չէ։

Ընտանեան Միքայէլ Հ. Պօղոս եւ Հ. Գրիգոր վարդապետներուն 20 Յուլիս 1746 թուականաւ Կ. Պոլսէն իրենց Մեծաւորին ի Լիբանան գրած նամակէն այնչափ միայն կը հասկցուի, որ Սարգսի այստեղ յիշած «երկու ախտակիր ընկերակիցքն», են՝ երկու կաթողիկեայ եպիսկոպոսունք, Աթանաս եպ. Մերասեան եւ Յակոբոս Մեսրոբ Արքեպ. Քեահեա Արապեան, որոնք նոյն միջոցին Հռոմ կը գտնուէին իրենց ձեռնադրութեան անվաւեր ըլլալու խնդրոյն լուծումը Ս. Ժողովքէն ընդունելու համար։ Այս երկու անձանց վրայ ուրիշ առթիւ ընդարձակ կը գրեմ։ Ահա նամակագիրներուն խօսքը. «Սարգիս Եպիսկոպոսին կողմանէ այժմ Հռոմայու մէջն հրատարակեն երկու անձինքն որք նախ ձեռնադրեցան նախ քահանայք յետոյ եպիսկոպոսք երկիցս անգամ՝ յետ ձեռնադրութեան մնացին զուրկ յեպիսկոպոսութենէ եւ նուաստագոյն ի մէջ քահանայից մնալով, այսպէս եւ այժմ սկսան զայլը վիրաւորել այսպիսի կատակական բանիւք. այժմ շուարեալ է Սարգիս եպիսկոպոսն. այսպէս ասէ Վեհալուստերին (այն է՝ Աբրահամ Կաթողիկոսին) մերում թէ այս է յետ ամի միոյ հասանելոյն ըստ ամպոյ Ճամբեր է բերեր է իւրեան կոնդակ մի յետ բերելոյն ոչ հաւանելով նոյն կոն-

դակին թէ ոչ է գեղեցկացուցեալ կամ ծաղկեցեալ գեղօրէնիւք վասն այնմ պատճառաց, գրեցոյց մին կոնդակ որպէս որ կամի այժմ ։ Որչափ կը հասկընամ՝ այս երկու անձինք, որոնց ձեռնադրութեան կոնդակներն իրապէս անվաւեր էին, կասկած յարուցեր են Սարգսին Արքեպիսկոպոսութեան կոնդակին վրայ. վասն զի Սարգիս իր նախկին անպաճոյճ կոնդակը չհաւնելով, նոր ծաղկնկար կոնդակ մը բերել տուած է եղեր, որպիսի է իրօք այժմ իմ վերն յառաջ բերած կոնդակը ։

Իսկ արբայուցման հանդիսութիւնները, կը պատմագրէ (ութերորդ) նամակին մէջ, գրեալ ի 20 Օգ. 1746 ։ Ահա վեցերորդ նամակին օրինակը ։

*Տեառն Տեառն Մխիթարայ վեհանձնեայ գերգգօնութեանն ընծայեցի սէր եւ ողջոյն Յիսուսակիր:*

Զգիր վսեմախոհ հայրութեանդ թէպէտ կանխաւ առընկալայ, որով եւ զպարտանակեցեալն ի նմա գոյուշարարութիւն ծանեայ ։ Բազմայօժարիչ կարեմ՝ արդէն բացորոշել թէ հիմ՝ արդեաք իցէր այս, որ ի համապատասխանելն այսքան յամրացայ, յապաղս որոյ եւ գիր զարմացայ, ասասի եւ առ ինքն վարկայ թէ մոռացայ կամ՝ անփութացայ ։ Որոյ զներուած ընդ այլոց ներելեաց նուիրեց՝ իմոց պատկառութեանց ի ձեռն շրթանց գրչի իմոյ՝ խոնարհաբար աղաչեմ՝ ։ Դուեւ յետ այսորիկ գկրիցն իմ՝ վէպ՝ քոյդ մեծութեան յուշ առնել կամիմ՝ համառօտիւք ։ Քանզի Սահակեան վարդապետ եղբայրն մեր՝ հրապուրեցեալ ոչ գիտեմ թէ յորպիսւոյ ոգւոյ, հանդերձ երկու աշակերօք ընկերակցօքն, զխորհուրդս իմն խորագոյն միծուք արա-

ծայր ննդութեան՝ բրել կամեցաւ, առ ի խառ-գատանել զմեզ գահավիժապար։ Բայց մինչ յետս (քան զոր յանձախ պատահի ննդողաց) ընդ կամէր զնա անձամբն, վասն կարծ գոլոյ հատակին ոչ բաւականացաւ ի լնուլ. քանզի քան զգլուխ իւր բարձրացաւ բազմաւ կանգնաւ։ Ամենայն ցաւիմ եւ զայնպիսեաց վասաւ, զի բաց ի սնեհերեան-թեանց զայլ ինչ ինչ ոչ կարեն արդիւնաւորել, որ եւ աշխա զարգ իւնս վատարկաց իւրեանց (թարգ մխիթարիր լինելոյ իմ) վայելելով վայելեցին։ Եւ չէր արժան մխիթարիր լինել, զի բարերարք զա-նեցան ինձ՝ չարերարելոյն իւրեանց, եւ ինքեանք յորմէ զգուշանայինն՝ այնմ պատահեցան "Որո-գայթք նոցա փշրեցան եւ մեք։"

Բայց ի բաց թողլով զանպիտոյս մէջս, զպիտանաւորս զգացուցից Տեառնդ։ Քանզի Արքա-յան Քահանայապետն միջադառնալով Տերամբ ի Յունիսի 7 ի քաղաքս զՀնդկասին յառաջացուցել զերանեցեալս որբացուցանելոց է ուրոյն ուրոյն փառաւորութեամբ մեծաւ։ Որոց զհաւատոյ պատ-մութեանց զապացուցութիւնն ի կողմանէ որբոյ ժո-ղովոյն եբեր առ իս Մանուկեան Սամանին, զի եւ ես (որպէս եւ այլքն եպիսկոպոսաց) շարադրիցէի առ իւրաքանչիւր որբացուցանելի երանեցեալս յարմար հինգ կերպիւ Արզուհայրապետ համահատա-տութիւնս. եւ ի գէպ ժամու ընթեռնուցուի զՀայերէնն ես, եւ զլատիներէն թարգմանութիւնն այլք. ի մէջ մեծի հանդիսի, ի ներկայութեան Արքայանի Պապին, որք եւ պատրաստեցանն իսկ։

Այլ եւ խնդրի ի Հայրութենէ քումմէ, զի եթէ գէպ ի տեղս գալոց մէլէկերին ոք գտանիցի ի տեղդ, յանձնեսցես ի նա առ ի բերել ինձ զմինչեւ ցայժմ տպագրեցեալ տետրան բառարանին[1]. բայց զխանա զի մինչեւ ցքառասուն եւ ութն տետրն

[1] Որ հազիւ 1740ին լոյս ետես։

ունիմ առ իս, որ է երեւ՝ 384։ Եւ վերջացեալ ա-
ղերսանս, զի եթէ զգիր ինչ ընկալնուս վասն իմ՝ վասագիւ առ իս հասուսցես. եւ եթէ ի Պօլսոյ մեծէ՝ պատկան մեզ գիտելոյ, ունիցիս լուեալ զնորս, ի ծանուցանել մեզ զայնս մի վերջացցիս, այսու ենթադրութեամբ՝ եթէ կամիցի բարեհաճութիւն հայրութեան քոյ։ Որ եւ լիցիս ողջ յաւէտապատնիւ գերապատութեամբ, հանդերձ քոյային կրօնաւորօք, ի պարծանս բոլոր ազգի մերոյ, նաեւ իմ։ Որ եմ անմնանուտ ծառայ ծառայից Տեառն, Սարգիս Արքեպիսկոպոս Կեսարիոյ Կապադովկեան։

Յամի Տեառն 1746 ի Մայիսի 28 ի Հռոմ

Արհին ալեծայիկ Մօնսինեօր Վրդանէս եպիսկոպոսական սերտ սիրով ողջունէ զհայրութիւնդ ընդ քեզ եղելովք հանդերձ։

Վերյիշեալ խարդաւանաց վրայ կը խօսի յաջորդ (եօթներորդ) նամակին մէջ ալ։

Գերամենապատուելոյ Տեառն Տեառն Մխիթարայ Աբբայի, մեծաւ յարգութեամբ ողջոյն ընծայեսցի

Զառ մեզ վերակրկնեցեալ զՅիսուսատանդ Ողջոյնդ յարգելաբար ընկալաք վերստին ուրախութեամբ։ Բայց թէ ընդէր իցէր այնքան անագանեցումն պատասխանւոյ նախկնոյդ ողջունագրի, ծանեար թերեւս առ Գերապայծառութիւնդ ի 28 Մայիսի գրեցելոյ գրոյս։ Եւ կ գոյարուցելոյ չփոթութեանէ ընդդէմ ինձ՝ ոչ գրելոյս փաստըն է այս։ Զի նեաք ազդայց էին այնք վէրք, եւ ես այն հիւանդութիւնն ոչ էր ի մահ։ Այլ եւ զանելիցդ որհնեցեալ՝ այսպիսեաւ անախորժելեաւ բանիւ մի գուցէ տաղտկացուցից, որպիսեաց ծանկելն՝ քան գոյայանելն բազմապատկորէն լաւագունեղ երեւի։ Եւ թէպէտ Արհւոյն Մինասայ, սակայն այն էր որքան առ այս, զի լուայ ի Մօնսինեօր Աէկրէթարէն, թէ գրեալ իցէր նմա զայսմանէ նենգական անցից, եւ զպատճառս զէպ առ նոսա եղելոց։ Ուստի

նաեւ հարկ եղեւ ինձ ի գրել՝ զի զխօսքին ծանիցէ։ Բայց զի եօթամբք շաբաթուք յամենացուցանելոց եմ զպատասխանն, եւ կամ թէ վասն բառ ոմանց յուշ ածնելոյն այդր Տեառնդ, հաստատեալ գրեղ առաջեալ ես ի կարծիս այս, իբրու թէ ես կարծեցեալ իցեմ զՀայրութիւնդ Համաձայն գոլ ամբաստանչացն այնոցիկ, զոր մի արասցէ Տէր, եւ քաւ լիցի ինձ այս ի Գերապատուէ Հայր՝ ոչն իմն կարծեալ կցորդել զգերայարգութիւն քո ի համարս այնպիսեաց դաւաճանողաց։ Յաղագս որոյ, որպէս Հայրութիւն քո առ իս, հանգունապար եւ որդիութիւնս առ քեզ ազատէ յայժ, զի ի բաց բարձցես զայնպիսի տարակոյս կարծիսն զմէնջ, որպէս եւ ես ի բաց բարձեալ էի եւ եմ զՏեառնէդ։ Այլ եւ վերջապէս, յաւէտ հրճուանս եղեւ հոգի իմ ի լսելն զապաքինեցմանէ տկարութեանդ, որ եւ աչք մեր ի լոյս լիցի, եւ Տէր պահեսցէ ի գլխոյ մերոյ տարակեաց ժամու մի անծուցու, եւ զճրագդ աշտանակի ընդ զբուանու մի թարացէ, առ ի ցնծալ մեզ աղօթիւն ի լոյս քո, եւ տացէ քեզ զկեանս երկարս ի յօգուտ եւ ի պարծանս ազգի մերոյ, ամէն։

Նաեւ բնաւից եղբարց միաբանից ի սրբանոցի այդր համարձակեցելոց, ողջունահիւան սիրով աչք ի լոյս առեմ, վասն առողջութեան Տեառնդ։

Սարգիս Ալէքսանդր Արքեպիսկոպոս

Կեսարիոյ Կապադովկիոյ

Յամի 1746 ի Յունիսի 11 ի Հալամ.

Արհիապատիւ Վրթանէս եպիսկոպոսն, սրտի սիրով ողջունէ եւ ողջագուրէ զգերապատուելիդ, գոլով եւս ընդ իս ուրախակից զապաքինեցմանութենէ Տեառնդ։

Նամակիս մէջ յիշուած «Արհին Մինաս», որուն վերն ալ յիշատակութիւն եղաւ, էր

Ակնցի, Փերուազեանց տնէն, Զմիւռնիոյ Արքեպիսկոպոս Առաքելոյ․ 1736ին Վենետիկ գնաց, կաթողիկեայ հաւատքն ընդունեցաւ, Մխիթարեանց քով հաստատուեցաւ իբրեւ ձեռնադրիչ եպիսկոպոս, 1737ին մայրի եկեղեցւոյն Ս․ Անտոնի խորանը շինեց մարմարէ, եւ 24 Դեկտ․ 1757ին վախճանելով՝ նոյն խորանին առջեւ թաղուեցաւ։ (Ալիշան, 343, Տաշեան, 470․ Թորոսեան, անդ, 364—5։)

Ճառմէն ուրիշ երկու նամակ եւս գրած է առ Մխիթար Աբբահայրն, որոնց առաջինոյն մէջ վերյիշեալ սրբացուցման սարքապրութիւնը կ՚ընէ եւ կը ծանուցանէ թէ ի մօտոյ Վենետիկ պիտի վերադառնայ։ Այս երկու նամակներուն օրինակները կը դնենք։

[illegible]

Ես մեզ նուիրեցեալ ողջոյնդ հայրական ի ձեռն յուլիսի 2 գրեցեալ պարէտիդ՝ ուրախութեամբ ընկալայք․ եւ հետեւեցելոց գգացուցմանդ՝ բառ գրելոյդ անցեկացայք, եւ յով դոհութեան զբարերարդ մարդասիրութեանդ, զոր դէպ առ մեզ ցուցանելոյ ոչ բնաւ երբէք վերջանայ։ Զպատրիարքին Հայոց զապառնալիսն համբաւ տանաց, ծանեալ էաք, եւ ծանեայք, որոյ վասն եւս՝ ի կասկածի վտանգման կայ հոգացողութիւնն մերոյ խմոց, թէ գուցէ այդպիսիք որոտմանց ձայնթմունք ի վախճանի զարթիցեն անձրեւիցեն, ի վայ եւ ի եղուկ այգի մերոյ տառապեցելոյ։ Նաեւ զխորհրդամանէ զեկնարգաւ գրիցդ՝ զոր գրեցեր ի հոգի եւ ի մարմին բերկրեցայ․ եւ յուսամ թէ մինչեւ ցայդ՝ բառ բոլորին ընդունեցելոյ իցէ՝ բարեխօսութեամբ

տիրուհւոյն մերոյ։ Զգեղապանծ վայելչութիւնն զինուորեցելոյ եկեղեցւոյս որ արդեւ զերբեւ ի որբացուցանելն զՀնդկեսին աւուրբն ի տանի գլխաւոր Առաքելոյն՝ թէ եւ ունիցիմ զՉիչէրոնինն լեզու ճառաճարտկեալ, ոչ կարեմ նաեւ բառ փոքրագունի մասին ճառել Տեառնդ։ Քանզի եթէ գրել կամեցայց զաւեհուան գեղապանծութենէ Գեթխոյիս տրբիականի, միայ տակաւին գրելի բազում ինչ զարմանավայել վեհագոյն նորին, զօրհօրգաց, եւ զմանկանցն առագաստի, զպարուց եւ զակէլուսիայից նորին։ Ընդ որս եւ մեք անարժանագոյնքս կցորդեցաք։ Ուրեմն, ո Հայր իմ գերապատիւ, եթէ տարրինս այս եկեղեցւոյ այլազանեաց շքեղապանծու գեղափառութեամբ գերազարդեցեալ է, որդեաց զորդիս անմնապաստակելիս ունելոց իցէ գիտեանն Ընդրանկոյն եկեղեցի, եօթնաստեղեանն խորան, Սիոնն վերին, յաղթողն եկեղեցի եւ վայրն երանական, միանգամն Հաստատնոյ, որոյ ժառանգաւոր լինելոյ՝ Տէր Յիսուս արժանի արասցէ զՀայրդ որբացեալ, Համագունդ որդեգրօքդ մաքրացեանիւք, կցորդեսցէ եւ զիս Տէր ձեռին աղօթիւք ընդ ձեզ, ամէն։

Նաեւ եթէ զանեալքն բաղարանի քոյ, ոչ իցեն աւելայ ու մեք մինչեւ ցարդ առ ի բերել մեզ, ծանուցանեմ Տեառնդ այսուհետեւ չաւալ․ զի եթէ Տէր կամեսցի մինչեւ ցլուծ Սեպտեմբերի ամսոյ եղանելոց եմ ասաի՝ առ ի գալ այդր, որ եւ Տէր Յիսուս աղօթիւք ձերովք առաջնորդեսցէ մեզ բառ կամաց իւրոց, Ամէն։

Ամենից որդոցներան եղբարց Համագումարեցելոց ի յայդմիկ որբարանի, բառ արժանապատուութեան իւրաքանչիւրոյ, ողջոյն Համանուիրեմ։

Սարգիս եպիսկ. Կեսարիոյ Կապադովկ.

Յամի Տեառն 1746, եւ ի Օգոստ. ի 20 ի Հռոմ

Ամենապայծառ ծերունի Վրդանէս Արհիեպ.ն յաւէտ սիրով ողջունէ զգեղյարգութիւնդ, հանդերձ քոյայնովքդ։

Բազմաշնորհ գերապատուականութեան Ուսուցչութեանդ պետրոնեցւոյ՝ Տեառն Տեառն Մխիթարայ Աբբայի մեծի, եւ ուսուցչապետի Անտոնեան կարգի, ձեռնաւ ձեռնիցեալ յորդորեալ սիրով ողջոյն աւետարանական։

Գրեթէ որքան մերձին աւուրք ճանապարհորդելոյն իմ՝ դէպ առ այդր, այնքան ամին առ իս տարիճանք ուրախականի կրից։ Եւ այս զգամ թէ մանաւանդ թէ ծագի ի խանդաղակաթ բղձէ անսանելոյ զգերամեծարելիդ քան զայլս բարեկամս բարերարսըս։ Որոյ արժանաւորին արժէ որքան առ իս անդր քան զբազում գինս։ Իսկ թէ՝ թերեւս արժանացայց այսթիւք Տեառնդ։ Զնորագունից չունիմ ինչ գրելի առ քեզ, եթէ ոչ զայս միայն՝ թէ աւուրք ժողովքդ գործունալէս կամի բառնալ զձկնակերութիւնն յաւուրս պահոց, ի յուղղափառաց ազգի մերոյ, եւ այն ազգադաղագունդին. Տէքրէթիւ պապականեա, ի գերուամն այնոց մերայն մխիթանարաց, եւ ապաքականաց թէ նշան յայտնագունի ուղղափառութեանն՝ է ձկնկերութիւնն յաւուրս պահոց։ Այլ եւ եթէ կամեցի Տէր, մինչեւ ցլրումն ամսոյս այսորիկ երթամ առ ի, իսկ թէ ծովային ճանապարհաւ Անքոնայու։ Եւ եթէ ունիցի հայրութիւն քո՝ որքան պատկան առ իս՝ կատարելի զպատշաճն ինչ. վարկեալ թէ՝ հրամայելն քո զայն ինձ պարտաւոր, է ինձ մեծ ուրախութիւն, եւ եմ պատրաստ բառ ամենայնի ի կատարել, որքան կարեմ։ Վերջապէս, կարեա զայլս որդիութիւնս մեր վերաբերմանց ի գրաբերել այսմանէ, որ յառաջնոյ վարդապետն քան զմեզ, որոյ եւս հրեշտակ Տեառն լիցի ուղեկից, ի պահել զնա յամենայն ճանապարհս իւր։ Ամէն։

Հանուրց եղբարց միաբանից, ողջոյն եւ սէր ընծայեմ ի Տէր։

Սարգիս Արքեպիսկոպոս Կեսարիոյ

Յամի Տեառն 1746 ի Սեպտեմբերի 5 ի Հռոմ։

Սարգիս Հռոմէն չմեկնած՝ Առաքելութեան Ս. Ժողովքէն 29 Յունիս 1746 թուականի թուղթ մ'առաւ, որով նոյն Ս. Ժողովոյն կողմանէ արտաքոյ կարգի խոստովանահայրն կը յայտնէ թէ Սարգիս Արքեպ. անձամբ Հռոմ գալով, Առաքելութեան Ս. խորհուրդն ընդունած է եւ մեղքերէն արձակուած։ Այս տպեալ լատին բնագիրը (Դիւան Սիսոյ. Հյ. ՆԿ.) կը դնենք այստեղ. Հաստ տպուածները ձեռագիր են, եւ ամբողջը. պաշտօնական կնիքներ ունի.

Universis praesentes litteras inspecturis salutem in Domino. Nos infrascript. Sanctissimi Domini Nostri Papae in Basilica Principis Apostolorum de Urbe Poenitentiarius Extraordinarius

**Sergius Alexander Archivescovus di Cesaria Capodocia Armeno**

Limina Beatorum Petri et Pauli, ac Sedem Apostolicam personaliter visitantem, et ad Poenitentiae Sacramentum humiliter recurrentem in Sacramentali confessione audivimus, et a peccatis suis, Apostolica auctoritate, injuncta ei Poenitentia salutari, absolvimus. In cujus rei fidem praesentes litteras signo

Collegii Apostolici Poenitentiariorum signatas, et propria manu subscriptas, ad humilem ipsius supplicationem, gratis concessimus. Dat. Romae apud S. Petrum anno millesimo septingentesimo quadragesimo 6 Die 29 mensis jovnj Pontificatus Sanctissimi D. N. Benedicti Papae XIV. Anno 6.

**Fr. Antonius W.**

**Ord<sup>s</sup>. S. Fran<sup>ci</sup>. Ref.<sup>rm</sup>.**

Sigillvm. Poenitentiariorvm.

Domini. Papae.

Թէպէտ վերոյիշեալ նամակներուն համեմատ՝ Սարգիս 1746ի վերջին ամիսները Վենետիկ գացած պիտի ըլլայ, սակայն Նուարինեան Սարգսի դարձը կը դնէ 1747ին։ Առաջին գործն եղաւ՝ Վենետիկի մէջ դպրոց մը հաստատել, եւ աշխարհական Հայ մանուկներ բերել տալով՝ զանոնք ուղղափառ հաւատոյ եւ բարոյից մէջ հրահանգելէն եւ ազատ արուեստ մը սորվեցընել տալէն ետեւ՝ ետ ղրկել իրենց հայրենիքը։ Այնտեղ ասոնք իբրեւ կրթեալ եւ ուսեալ ուղղափառներ՝ իբրեւ պատուաւոր պիտի կցուէին իրենց ազգին եւ լաւ պտուղ յառաջ բերէին։ Վասն զի, կը մտածէր, ասոնք իբրեւ աշխարհական քարոզիչներ՝ ազգայիններու մէջ դիւրաւ ելեւմուտք գտնելով, զանոնք աւելի դիւրաւ կրնային օրինակի խօսքերով շահիլ, քան թէ առաքելականները (միսիոնարները), իբրեւ կայծ մը ածուխի մէջ իյնալով՝ եւ ածուխը հրավառելով։

Բայց այս գործը չյաջողեցաւ. վասն զի Բիք պէտք եղած դրամը չունէր. իսկ անոնք որ դրամով օգնել խոստացած էին՝ ետ կեցան։

Իսկ որովհետեւ Սարգիս չէր կրնար անգործ կենալ, ձեռնարկեց գրքերով նոյն նպատակին հասնելու։ Թէպէտ Վենետիկ քաղաքին մէջ այն ժամանակը կային Պոլթոյի եւ Որլանտեան տպարանները, որոնք հայերէն գրքեր կը տպէին, Սարգիս իրեն համար սեպհական հայերէն քանի մը տեսակ տառեր շինել տուաւ, եւ գիշեր ու ցերեկ անձամբ աշխատելով՝ 1747էն 1752 իրր 15 կտոր մեծ ու փոքր գրքեր տպագրեց իր տառերով՝ բայց Անտոն Պոլթոյի տպարանը։ Ասոնցմէ ոմանք պատկերազարդ են, եւ Էֆէմէրտէ գիրքը իր ձեռօք 1752ին 2ր եւ յետոյ 3ր եւ 4ր տպագրութիւն ունեցաւ։ Տպագրած գրքերու մէկ մասին ձեռագիրը հետը բերած էր Կ.Պոլսէն, որոնք բատ մասին հայ Քարոզողաց գէշ թարգմանութիւններն էին՝ լատիներենէ եւ իտալերէնէ։ Սարգիս այս լեզուներուն անտեղեակ ըլլալով՝ ստիպուեցաւ նոյները սրբելու, եւ թարգմանութիւնները բնագիրներու հետ համեմատելով սրբագրելու, եւ անոնց Յառաջաբաններ գրեց, անձամբ ալ քանի մը բան թարգմանեց։

Կ.Պոլսոյ «Հայաստան» լրագրոյ (1846 Թ. 21) խմբագրին (անշուշտ Կ. Տէրոյենց Զամուռճեան) Սարգիս Արքեպ.-ի մէկ նամակը կը հրատարակէ, որուն մէջ Սարգիս տեղեկութիւն կու տայ շինել տուած տառերուն եւ տպագրե-

տպագրելի է. որ այն հատորի երկու մասն ի միասին բաղադրեալ ոչ լինի պակասագոյն քան զառաջին հատորն:

Նա եւ եթէ այսու ամենայնիւ կամիցիս եւ զիմն հարցանել զիարդ. շնորհակալ եմ զՏեառնէ, որ տակաւին պահեալ է կենդանի զիս, որ անարժան իսկ եմ անհնիցս՝ նա՛ եւ զբօսէ մի կենաց ժամանակել: Եւ աշխատիմ եւս առ ի յարմարագրել եւ ուղղագրել [illegible] [illegible]՝ բառ յառաջնականին իւրոյ. որոյ տպագրութիւնն արդէն մերձ է առ ի հատանիլ ի կէսն: Նոյնպէս նա եւ աշխատիմ վասն [illegible] [illegible] կոչեցեալ գրքի միոյ. զորոց եթէ կամիցիս տեսանել զկերպն, զգիրն եւ զյարմարագրութիւնն, կարես ի յեղանելոց ի [illegible] հանդիպել ի յատայն տիրացու Հայրապետեան. եւ անդ տեսանել. զի ի [illegible] [illegible] երեք թուղթ. եւ ի [illegible] [illegible] տասն թուղթ տպագրեցի առ նա: Բայց թէ զորքանօ կրեմ զաշխատութիւնս առ ի վերստին բաղդատել բուն լատինականի զհայերէնն, վերստին գրելով եւ յարմարելով, եւ զվկայութիւնս Աստուածաշնչին յարմարելով, զայն աշխատութիւնն Տէր ի վերայ իւր համարեսցի, եւ այնու ինձ ողորմեսցի: Որ եւ աղօթիւք երանելւոյ Կուսին, որոյ եւ նուիրեցաւ այն գիրքն, ինքն Աստուած բարեաւ եղերեացէ: Քանզի այսու զխաւարութեամբ էր, որ միայն զԺԸ գլուխն առաջնոյ հատորին փոխեցեալ ի անդւոյն՝ եդի ի սկիզբն գրքոյն, եւ այլ ամենայն կարգն պահի որպէս եւ է բունն:

Նաեւ այսու առթիւ կարի լաւագէս ուսայ զգիր չինելն հայրով եւ մայրով. առաւել յատագոյն քան զՄբողբատաման գիրն. որ եւ չինեցի զմի տեսակ գիր՝ եւ ունիմ առ իս. Նա եւ չինել տուեալ էի յառաջ զանազան իմն փոքր գրոյ, որպէս է այս տեսած բառարանիդ գիրն: Բայց խիստ կու նեղէ զիս անդոյս եղանակն, եւ սոյն վասու-

թիւնն. որ գրեթէ հալեց եւ մաշեց զիս այնքան, որ կէսս չի մնաց։ Եւ մանաւանդ ի վեր քան զայլս՝ կարօտութիւնն եւ նեղեհութիւնն ցամաքեցուց զոսկերս իմ. զի այժմս փորձիւ գիտացի եւ հաստացայ, թէ ի յորքան գնոյ իցեն բարեկամք եւ սիրելիք. որոց անասութիւնն ցուցցէ ինձ վերստին Տէր Յիսուս։

Նաեւ յանցելումն աշխունադիր իմն գրեցի առ Հոգեւոր ցանկալի Պատրիարքն վարդապետն ի ձեռն Յօհաննէս չէլէպւոյն, որոյ զպատասխանն ոչ ընկալայ։ Եւ միայն թէ ի ձեռն տիրացու Յարութիւնին ազդեալ էր, թէ կամեցեալ իցէ առ ի առալ տպագրել Գիւանիսկան՝ ինձ. որոյ վասն պատրաստեցի եւ գրիտոյս ամանս. առկայն այնուհետեւ այլ գրոյց ինչ ոչ առնի։ Աւասի եթէ կարելի իցէ սիրայնոյդ գնալ առ նա, եւ յինէն ողջոյն ընծայել մեծագունիւ սիրով, եւ քաղցրագունել զախրան նորին առ իս, զի իմ աչաց լոյս եւ սրտելի եղբայրս է. եւ մանաւանդ ի անեղի հօր եւ երախտաւորի կու ճանաչեմ զնա։ Զինչ առնեմ. պիտոյ չէր այսպէս լինելն, բայց եղեւ։ Եւ յայս մնաեբս վերստին գիր գրելոց եմ առ ինքն։ Վերջապէս կու խնդրեմ, որ հրամանքդ եւս զոնէ գրով միով միսիթարեսցես զթախծութիւնս մեր, որ եւ ողջ լիցիս ի Տէր ի պարծանս իմ։

Սարգիս վարդապետ եւ

արքեպիսկոպոս Հայոց։

Յամի Տեառն 1748. ի Յուլիսի 25. ի Վէնէտիկ։

Յ. Գ.։ Եւ զուցէ ոչ իցես տեսեալ լիսպէս զաճն եւ զեղբայրն Արբայի բառարանին, յայնժամ ընդ այս գրոյս յուղարկեցի զթուղթ իմն ի նմանէ, որ նորապէս յայս չարթոյս տպագրեցաւ. զի առաջին հատորն մինչեւ ցարդ եհաս այժմ։

Սարգսի կենսագիրը Նուրիճեան Վ. յառաջ կը բերէ հետեւեալ հրատարակութիւնները՝

1. Ներածումն առ ջերմեռանդ կեան Ս. Փրանկիսկոսի Սալեզացւոյ։

2. Ճշմարտութիւն յաւիտենական։

3. Գիրք օրինակաց եւ նմանութեանց։ Ասոր տպագրութեան ծախքը Սահակ Ահագին Զմիւռնիոյ Առաջնորդը խոստացած էր տալ, սակայն հրատարակութենէն առաջ մեռած էր հատուցանել։ Վերի նամակին մէջ «Գիրք կենդանեաց» կոչուածն այս գիրքն է։

4. Մովս. Խորենացւոյ Պատմութիւն եւ Աշխարհացոյց։

5. Վարք Ս. Յովհ. Ոսկեբերանի։

6, 7. Մեծ եւ փոքր Էփիմերտէ, որուն վրայ իր կողմանէ Յաւելուածներ ըրաւ։

8. Արթութիւն Ապաշխարութեան, զոր ինքը թարգմանեց իտալերէնէ։

9. Ուրիշ պէսպէս տետրակներ.

10. Կատակագրութիւն։

Վերջիններուն վրայ իր անունը գրած չէ։

Այն հրատարակութիւնները, ինչպէս նաեւ հոն չյիշուածներ, աչքէ անցուցի, եւ իրենց հրատարակութեան ժամանակին կարգաւ մանրամասն յառաջ կը բերեմ։

1. «Ներածումն — Ջերմեռանդ կեանն։ Սրբոյն Փրանչիսկոսի Սալեզացւոյ։ Թարգմանեցեալ ի Տա-լիականէ ի Հայս, ի Ղուկասու Վ.-է Խարբերդացւոյ։ Յարմարագրեցեալ եւ Տպագրութեամբ ի լոյս ածեցեալ ի Սարգսէ Արքեպիսկոպոսէ Կոստանդ-նուպոլսեցւոյ։ Ի Հայրապետութեան Տեառն Ղա-

մի զնոյն գիրքն օրինակաց, ոչ այլ յառաջացուցանել զայնս մեծաւ աշխատութեամբ... Սարգիս Վ. եւ Արքեպիսկոպոս Կոստանդնուպոլսեցի։»

2. «Սաղմոս Դաւթի, տպեցեալ աշխատութեամբ Սարգսի Արքեպիսկոպոսի Կ. Պոլսեցւոյ, ի Հայրապետութեան Հայոց Տեառն Ղազարու։ Յամի Տեառն 1748 ի Մայիսի 2։ Ի Վենետիկ, ի տպարանի Անտոնի Պոռթոլի. (Զարբհ. Մատ. էջ 602.) Այս եւ ուրիշ հինգ գրքերու Վենետիկի Մխ. Մատենադարանի օրինակներուն մասին ինձ տեղեկութիւն տուաւ Գեր. Հ. Մկրտիչ Պոտուրեան։

Մեծութիւն էջ 10.5×6 սմ. էջք 1—372. քանի մը պատկեր։

Էջ՝ 1—355 Սաղմոս. էջ 355—360 Համառօտ խոստովանիմ. էջ 361—364 Աղօթք Ներսեսի, էջ 365—372. Ցանկ սաղմոսաց։

3., 4. եւ 5. Էփիմերատէ. «Գիրք որ կոչի Էփեմերտէ։ Նախ պարունակի սա զչորից ժամանակագրութեանց՝ տարեկան ցուցմունս։ Եւ ապա Համաձայնութեան Էփեմերտեան տոմարաց, այսինքն՝ Համեմատութեանց Աղարիայի, Հայոց եւ Տաճկաց. յօրինեցեալ ի Մատթէոսէ եւ ի Գրիգորոյ Վանանդեցւոյ։ Երկրորդն, նաեւ տարեկցի (4.) Համառօտութիւն Տոմարին Հռոմայեցւոց, որով հասարակաբար վարի այժմ ազգս Հայոց։ Որք վերստին տպագրեցեալք եղեն ջանիւ Սարգիս արքեպիսկոպոսի Կոստանդնուպոլսեցւոյ։ Յամի Տեառն 1748, ի յունիսի 20, եւ ի Հայոց ՌՃՂԷ. Երրորդ՝ յաւելեալ լինի ի վերջն՝ (5.) Գրքոյկ ինչ վասն Նախասահմանութեան, Արդեան Թովմայի Հերձուածողականն վարդապետի, որ բառ ինդրոյ իմ՝ թարգմանեցեալ եղեւ ի Գաղիերէն Հռոմէականէ։ Ի Վենետիկ, ի տպ. Անտոնի՝ Պոռթոլի»։ (Հ. Զ. Մատեն. էջ 198.)

Մեծութիւն 10.5×6 սմ. պատկերազարդ։
Էջ 1—72 Էփիմերատէ։

Էջ 1—48. «Տօմար Լուսաւոր. Այսինքն Համառօտութիւն Հնոյ տօմարին Հռոմայեցւոց, որով հասարակաբար վարի ազգս Հայոց։ Շարակարգեցեալ դիւրին ոճիւ եւ ի յօգուտ պարզամտաց։ Ի Գերյարգելի Մխիթար Սեբաստացւոյ Աբբա-Հայր կոչեցելոյ Յամի Տեառն 1733, Տպագրեցեալ ի Վենետիկ, ի տպարանի Անտոնի Պորթոլի, Հրամանաւ Մեծաւորաց»։ Այս գիրքը տպուած է ի Վենետիկ՝ Ա. տպ. 1733, Բ. 1748 (այս), Գ. 1755, Դ. 1771, Ե. 1807 (Սարգսեան եւն.)։

Էջ 1—72. «Համառօտ գրքուկ իմն [illegible], զոր արար բան խնդրոյ ոմանց բանաւորաց Սուրբն Թովմա Աքուինացի, որ եւ աստ Հրեշտակական վարդապետ։ Որ եւ բան խնդրոյ իմ' թարգմանեցեալ եղեւ ի [illegible] ի Կոստանդնուպօլիս։ Իսկ յամի բանամարմնոյն Տեառն տպագրեալ եղեւ յարմարագրութեամբ ի փառս Աստուծոյ եւ ի յօգուտ բանաւորաց Ազգի մերոյ, ի Վենետիկ»։

6. «Կանոնք եւ Ներողութիւնք, վասն նոցա, որք գրին ի յընկերութիւն, կամ ի մարմին Ջերմեռանդութեան Քրիստոսի Աստուծոյ մերոյ ի խաչին տառապեցելոյ, եւ ցաւագին մօր նորա սուրբ Կուսին։ Որ եւ կոչի [illegible], եւ եղանի յեկեղեցւոջ Հարց Կարգին Յիսուսեանց։ Թարգմանեցեալ ի Հայ բարբառ։ Յամի Տեառն 1748, Օգոստոսի 7, ի Վենետիկ, ի տպ. Անտոնի Պորթոլի»։ (Զ. Մասեան. էջ 496)։

Մեծութիւն 9.5×5.5 սմ. էջ 1—29։

Այս աւետարանիս գիրքս Սարգսի չինել տուած մեծկակ գրէն ըլլալուն՝ իրեն կը վերագրեմ։

7. «[illegible]. Յորում գտանին պարունակեալ աղօթք, Նախ վասն ամենայն աւուր շաբաթու, Երկրորդ՝ վասն առաւօտու, միջօրէի եւ երեկոյի, Երրորդ՝ մաղթանք ամենօրհնեալ Կուսին՝ տասնաւոր կերպիւ։ Եւ չորրորդն քննութիւն խղճի

մատոյց նախ քան զխոստովանութիւնն ամենահաղոր-դուաց։ Տպագրութեամբ ի լոյս ածեալ ի խնդրոյ մեծայարգոյ Ջերմեռանդի սրբումն, ի վիճակս Տեառն ի Վենետիկ, յամի Տեառն 1748, ի տպ. Անտոնի Պոռթոլի։" (Մատ. էջ 15. «Բազմավէպ» 1906, թիւ 3.)

Մեծութիւն 8×5 սմ. շրջանակի մէջ։ Էջ 1—16 ոչ նշանակեալ, էջ 1—46.

Էջ 1 ճակատ. 2 պատկեր, 3—16 եւ 1—46 բնագիր։

Այս գիրք Սարգսի տպարանին մանր գիրն ըլլալուն՝ իրեն կը վերագրեմ։ Նոյնը տպուած է յետոյ՝ Բ. 1770 Վենետ. Գ. 1785 Վենետ. եւ Դ. 1787 Թրիեստ։

8., 9. «Ճշմարտութիւն յաւիտենական։ Հարա-գրեցեալ ի Կառլօ սիւօյի կոչեցելոյ ի Կարգէ Յի-սուսեան։ Եւ թարգմանեցեալ ի Պետրոս Վ. Է Թիֆլիզեցւոյ։ Եւ տպագրութեամբ ի լոյս ածե-ցեալ ի Սարգսէ Արքեպիսկոպոսէ Կոստանդնուպոլ-սեցւոյ, յապաւմամբ խորդ շարագրութեանց, որ-քան իցէր կարելի։ Ընդ որ առաւելին նաեւ երկու գեղեցկագոյն (9.) Կոչ եւ Քարոզ, վասն Աւագ ուրբաթի աւուրն։ Օժանդակութեամբ ծախուց մեծահանի Յակոբի որդի՝ Յօհաննէս չէլէպւոյն Սեղ-բոսեան։ Ի Հայրապետութեան սրբոյ Էջմիածնի՝ Տեառն Ղազարու Կաթուղիկոսի Հայոց։ Յամի Տեառն մերոյ 1750. Յապրիլի 18. Ի Վենետիկ, ի տպ. Անտոնի Պորթոլի։ Հրամանաւ մեծաւորաց։" (Մատ. էջ 393.)

Մեծութիւն 135×8. շրջանակի մէջ. 2 պատկ. էջք՝ Ա—Ը, եւ 1—520.

Էջ 1—394 «Ճշմարտութիւն յաւիտենա-կան։»

Էջ 395—520, (9) «Քարոզ եւ Կոչ յա-ղագս Աւագ ուրբաթին։»

այժմ ի ձեռն յաջողման աշխատասիրութեան Սարգսի Արքեպիսկոպոսի Կոստանդնուպոլսեցւոյ ի լոյս ածեալս. յարմարագրութեամբ եւ տպագրութեամբ... Յորդորմամբ եւ բոլոր իւիք արդեամբ Տեառն Խաչատրոյ իմաստնախոհ վարդապետի եւ հռչակաւոր Արքեպիսկոպոսի, մականուամբ Ահաքէն կոչեցելոյ։ Ի Հայրապետութեան Հայոց ի լուսանկարն սուրբ Էջմիածնի Տեառն Ղազարու Կաթուղիկոսի Ջահկեցւոյ։ Յամի Ներմարմնութեան Տեառն մերոյ 1750։ Եւ ի թուականութեան Հայոց ՌՃՂԹ։ Յամսեանն Յունիսի։ Ի Վէնէտիկ, ի տպ. Անտոնի Պոռթոլի Հրամանաւ մեծաւորաց„ (ակ.-կարմիր տիպ)։ (Մատեն. էջ 726։)

Մեծութիւն 19×12 սմ. երկիջեան. էջք՝ I—XX, 1—1093. 1 պատկ.։

Էջ III. «Առաջաբանութիւն... կարեւ ուսանիլ... զբարեմտութիւն հարազատի իմոյ ի Քրիստոս, Տեառն Խաչատրոյ Արքեպիսկոպոսի, որ ի ձեռն յորդորականն եւ յաջողութիւ ծախուց իւրոց՝ գլխովին պատճառ եղեւ տպագրութեան սորին. վասն լուսաւորութեան Լուսաւորչածին ազգիս Հայոց, եւ վասն օժանդակ գտանելոյ քարոզել եղբարց, յորս ոչ օգտին գտանիւ, նաեւ վասն այլոց իմն բարւոյ վախճանի, զորմէ ընթերցցիս ի վերջին երեսն գրգոյս։ Հաւակ յետոյ՝ կարեւ ճանաչել եւ եւս զծանրագոյն երկուցն աշխատասիրութեան իմոյ ի յարմարագրելն զսորա շարագրութիւնս եւ ի բացում ուրեք զախալական բանս, եւ զբանս ի հեզգութենէ թարգմանչին ի յանհմտութենէ գրագրին պատճառեալս, որք եաւուն մեզ զաշխատութիւնս ոչ սակաւս։ Քանզի ունելով մեր զմի միայն գաղափար ձեռագիր, եւ այն գրեթէ լցեալ էր յամենայն տեղիս իւր պէսպէս ախալանօք. վասն որոյ հարկ եղեւ մեզ գտանել ասա զբուն օրինակն լատինականն՝ առ ի համեմատել զմերն առ նա... Եւ զախալանաց տպագրու-

Ջմիւռնիոյ տաճիկորդ Սահակ Ահագնի եւ Սարգսի մէջ, եւ մէջերնին եղած միաբանութեան համեմատ գրքին ճակատը գրուած էր՝ թէ Սահակայ ծախիւք տպուած է. սակայն ինչպէս Նուրիխեան Վ. կը գրէ, Սահակ այս գրամը հատուցած չէ Սարգսի։ Լիվոռնոյի Հայ Եկեղեցւոյ դիւանին մէջ կը գտնուի Սահակայ խակագիր եւ կնքեալ մէկ գրութիւնն այս մասին, գրուած "Թվին ՌՃՂԹ (= 1750) յունիսի մէկուն յաւուր ուրբաթու եւ ի սուրբ Լուսաւորչի Եկեղեցւոյ խցումն"։ Այս նամակն՝ որ ուրիշի մը գրուած կ'երեւայ եւ ոչ ուղղակի Սարգսի, կ'երեւայ թէ սկիզբէն պակաս է. ասոր մէջ Սահակ կ'առաջարկէ որ հազար օրինակ կազմուած իրեն տրուի, եւ փոխարէն վճարէ հատին 3 ղր. իսկ իր տեղն եթէ յանձնուի՝ հատին 5 ղր.։ Ինքը հատը պիտի ծախէ 10 ղր.ի, եւ սակայն կը պահանջէ որ գրքին վրայ գրուի՝ թէ ամբողջն իր ծախիւք տպուած է. ասկէ ահա կռիւը։ Այս նամակը կը հրատարակենք նոյնութեամբ։

Եթէ Վենետիկ տեղն կու վաճառէ հազար հատն երեք հազար ղուշի ինձ ղապուլ է հայր փողն նաղտ տեղս պէ ղուռուշ թէսլիմ անեմ եթէ ասա ի տեղս կու վաճառէ հազար հատն հինգ հազար ղուշի մէջին նաղտ փողով կանեմ՛ այսու պայմանաւ, որ հինգ հարիւր հատն սեւ տղթի կազմով նման մաթէոսի մեկնութեան կազմին լինի. եւ հինգ հարիւր հատն այլ վարագի կազմով լինի. եւ եթէ վերոյգրեցելոյս կերպն իւրն օգուտ եւ հաճոյ իցէ, նա ինձ եւս է հաճոյ գլխովին եւ եթէ վերոյգրեցեալքս իւրն չէ հաճոյ եւ օգուտ, նա ինձ

եւս արտաքոյ վերոյգրեցելոյս չէ ընդունելի։ Այնուհետեւ որն որ իւրն չափ եւ օգուտ է թող զայն արասցէ, զի մեք եւս աշխատեցաք իւր չափ եւ օգտաւն կու կամիմք, զի այս եւս վասն իւր եղբայրական սիրոյն կամեցայ եւ թէ հաճեսցի ի վերոյգրեցելոյս, զյիշատակարան գրքոյն բարեհամ ագ-բերբ անուանն լիցի իւր թէ բոլոր արդեամբ նորին ապագրեցաւ զի վախճանը լիցի բոլոր գիրքս նոյն աղբիւրին, որպէս յառաջագոյն եւ եւս իւրն գրեալ եմ զկերպ նոյն իրականութեանն Հոկտեմ-բերի ծննդեանն եւ այսու գրովս պատրաստ յօգուտ իւր խորհիլ եւ զայն առնել. ահա այս է իմ ձեռագիրս որ կնքեցի կնքաւ իմով թէ որ իւրն հաճոյ է վերոյգրեցելոյս ինձ եւս հաճոյ է նաեւ որքան գիրք որ պակաս եկն ի հազար հատէն ամէն հատ Ժ. Ժ. դուշ իւր վերայ կու գրեմ փողն տալոյ ժամանակն, այս եղեւ թվին ՌՃԿԶ յունիսի մտանն յառաջ ուրբաթու ի սուրբ Լուսաւորչի եկեղեցւոյ խցումն բան է։

Գիրս այս ինձ իրր ըէին թէմճառակ լիցի թէ որ հաճոյացս գրեալ ի սմա, վերջ բանիս եղիցի։

Անիք. որուն փոխագիր ընթերցուածը՝ "Խաս-հակ վարդապետ ՌՃՀԷ„ = (1728)։

11. "Կ.Ի--Ի-Ն --Ա-Շ-Ի--Ա-Կ առ ի բարեպէս խոստովանիլ։ Գիրք հոգեւոր, յորմէ ամենայն ոք կարէ ուսանիլ զհաւատս եղանակ զանազանն ի շնորհս Տեառն, եւ պահել ի նոյն։ Շարադրեալ ի Պօղոսէ Սեներեան, յընկերակցութենէ Յիսուսեան։ Նորապէս թարգմանեցեալ յիտալական բարբառոյ ի Հայոց լեզու, ի Սարգսէ Վ.Է, եւ Արքեպս.Է Կ. Պոլսեցւոյ, որոյ աշխատութեամբն նաեւ տպագրեցաւ։ Ի Հայրապետութեան սրբոյ Էջմիածնի, Տեառն Ղազարու Հայոց կաթուղիկոսի։ Յամի Տեառն 1751։ Եւ Հայոց ՌՄ։ Ի Վենետիկ, ի տպ. Անտոնի Պորթոլի. Հրամանաւ Մեծաւորաց։„ (Մատ. էջ 313։)

Մեծութիւն 10×5.5, էջք՝ I–XXVII, 1—240, եւ 1 պատկեր.

12. «Նոր Կտակարան. Պարունակող զԳործս Առաքելոց, զԹուղթս Պօղոսի, զԹուղթս կաթուղիկեայց, եւ զՅայտնութիւնն Յովհաննու: Տպագրեցեալ աշխատասիրութեամբ Սարգսի Արքեպիսկոպոսի Կ. Պոլսեցւոյ. ի Հայրապետութեան Հայոց ի սուրբ Էջմիածին Տեառն Ղազարու Կաթուղիկոսի: Յամի Տեառն 1751, եւ Հայոց ՌՄ: Ի Վենետիկ, ի տպ. Անտոնի Պօրթոլի. Հրամանաւ Մեծաւորաց.» (Մատ. էջ 140.)

Մեծութիւն՝ 11.6×6, էջք՝ 1—526.

Էջ 3—12 «Համառօտ զեկուցումն բանադիրաց վասն հեռացեալ գրեանց նորոյ կտակարանի, առաջաբանօրէն... Գրեանք նորոյ կտակարանի, որք պարունակին յայսմիկ գրգոջ (բաց ի չորից Աւետարանաց) են գիրք 23...»

Էջ 13—502 «Գործք Առաքելոց ... Յայտնութիւն Յովհաննու ....»

Էջ 305—522 «Ցանկ վկայութեանց ի Քրիստոսէ եւ յառաքելոց նոր նորում կտակարանում առ բերեցելոյ ի Հնոյն:»

Էջ 523—526 «Նախագրութիւն Հերոնիմոսի քահանայի ի նոր կտակարանս:»

13. «Պատմութիւն վարուց Յովհաննու Ոսկեբերանի» (նախաձայնական սունդապարգ):

«Պատմութիւն վարուց, Սքանչելեաց եւ Գիւտոց՝ Սրբոյն Յովհաննու Ոսկեբերան Հայրապետին Կոստանդնուպոլսոյ: Թարգմանեցեալ ի Յունականէ ի Հայս՝ ի Գրիգորէ կաթուղիկոսէ Վկայասէր կոչեցելոյ, շուրջ զԹուականութեամբն Հայոց ՆՃ: Տպագրեցեալ աշխատասիրութեամբ Սարգսի Արքեպիսկոպոսի Կոստանդնուպոլսեցւոյ: Խնդրանօք եւ արդեամբ՝ Կարուշեցւոյ Ներսեսի Պօղոսին, որ արար յիշատակ վասն հոգւոյ հանգուցելոյ կողակցի իւրոյ Տէֆլէթին, եւ որդւոյն

Յակոբ Խոհեմ դպրի ՚ի Հայրապետութեան սրբոյ Էջմիածնի՝ Տեառն Մինասայ ակնեցւոյ։ Յամի Տեառն 1751, ի Յունիսի ի Վենետիկ, ի տպ. Անտոնի Պորթոլի։ Հրամանաւ Մեծաւորաց։ (Մատ. էջ 539։)

Մեծութիւն 12.5×7.5 չափականի մէջ. էջ I—XII. 1—318, 1 պատկեր։

Յիշատակագրութիւն. էջ IV. «Նախերգան... Խակ որ առ բան տպագրութեան սորին՝ գիտել պարտիս. զի ունելով իմ առ ձեռն միայն հնագոյն օրինակ ձեռագիր, որոյ տառքն ի բազում տեղիս եղծեալք էին, և բառքն գրեթէ անհետացեալք, և ոմանք անդէն եւս այնպէս չփոթական սխալմամբ լցեալք էին, որք իբր թէ՝ կարօտանային մարգարէանալոյ... որքան կարելի էր միով օրինակաւ, ջանացի ուղղագրել բստ տկարութեան ենթադասման իմոյ՝ առանց այլայլելոյ գրուածն... նոյն նախատացեալ նննեց Պօղոսն... ոչ խնայեաց ծախել զդրամս իւր յաղագս ծախուց տպագրութեան սորին... Արդ թէպէտ խնդրող էր վերոյիշեցելոյն. բայց միջնորդն խնդրոյն, որոյ անուանդ եղէ ես, էր Հարազատ սիրելի ոմն ինձ ի մանկական տիոց հետէ, և մանաւանդ երախտաւոր, որ կոչի իսկ՝ Տիրացու Յօհաննէս Խդրասիաեան... վերջապէս և ինձ... որ մեծաւ աշխատութեամբ պնդիմ վասն օգտի ձերոյ՝ Պանդխտակեցեալ լեալ ի նշդեհութեան վայրի, Տէր այցելութիւն արասցէ բարեխօսութեամբ Սրբոյս, պաշտպանելով ի հոգւոր և ի մարմնաւոր դարանակալաց. նաև յազգաւորարոյ մարգելուծ, և խորամանկաց, յորոց ոչ սակաւ միտաւ կրեցաք, և կրեմք տակաւին... Սարգիս Վարդապետ եւ Առաքելեան Կ. Պոլսեցի։»

14. «Էֆեմերիտէ եւ Տարեգրութիւն»։

Նոյն մերն յիշուած՝ 1748ին տպուած «Էֆիմերտէի» հետ, այլեւայլ փոփոխութիւններով։

Իրմէ ետեւ այս հրատարակութիւնք լոյս տեսած է 1772ին Վենետիկ, իբրեւ Բ. տպագրութիւն, եւ 1796 իբրեւ Գ. տպագրութիւն, երկուքն ալ "օժանդակութեամբ եւ ծախիւք յումեմնէ բանասիրէ„ (Գ.ն՝ "ումեմն բանասիրի„)։

Այն 1752ի տպագրութեան ճակատն ու բովանդակութիւնք յառաջ կը բերենք

"Գրքոյկ որ կոչի Էփիմերտէ. Յորում պարունակի նախ՝ Շրջան միջանկեալնացոր գեկուցմանց։ Երկրորդ՝ Ընձեռումք տարեբականն որակութեանց։ Երրորդ՝ Հաւաքմունք նշանաւոր բանից իմաստասիրաց։ Չորրորդ՝ Տօմարական համեմատութիւնք, եւ խաղք։ Տպագրեցաւ աշխատասիրութեամբ Սարգսի Արքեպ.ի Կ.Պօլսեցւոյ, ի յոգուտ եւ ի զուարճութիւն Գեղեցիկ մանկանց ուսումնասիրաց մերային Ազգի։ Օժանդակութեամբ, եւ խնդրանօք Մահտեսի Յակոբի որդի, Շէրեզպանն Թովմայ չէլէպւոյն Անգրեանեան (որ եւ Տալիաներէն կոչի) Թոմազօ աի Սէռաֆօս։ Ի Հայրապետութեան Հայոց ի Լուսանկարն տուրբ Էջմիածին. Տեառն Մինասայ Կաթուղիկոսի Ամենեցւոյ։ Յամի կենարարին մերոյ 1752, ի Մարտի 3։ Ի Վենետիկ, ի տպ. Անտոնի Պօռթօլի։„ (Մատ. էջ 199, ուր կայ այլ ճակատ, եւ ծանօթութիւն անճիշդ։)

Մեծութիւն 10.5×5.5, էջք I—XXII եւ 1—456, 6 պատկերք եւ 2 տախտակք։

Էջ 456. "Շնորհիւ եւ ողորմութեամբ Տեառն երկրեցաւ տպագրումս այն փոքրագիր գրքուկս (որ է իբր զրօնարան իմն ուսումնասէրն մանկանց) ի բարեփայլեալ քաղաքն Վենետիկ, ի խնդրոյ այնորիկ պերճափառի, որոյ անունն ի յառաջին ճակատի սորին մակագրեցաւ։ Ուստի խնդրեմ ի վայելողացդ յիշատակել յազօթս ձեր, զծնօղս նորին, եւ զմեզ միով Հայր մերիւ ի Տէր։„

15, 16. "Աշխարհացոյց [illegible] Յոբե-լեան։ Յօրինեալ ի Մովսիսէ Խորենացւոյ Յեռա-

իր ծախքով տպագրած է «Երեւանցի Աղալարի որդի պարոն Գաբրիէլ»։

Սարգիս ունեցած դրամը տպագրութեանց ծախսելէն ետեւ ստիպուեցաւ դադրեցընել։ Տպագրեալ օրինակներու մեծ մասն Արեւելք ղրկեց, ուր հետզհետէ կը ծախուէին թէպէտ, բայց կարելի չէր այնչափ դրամ գանձել՝ որ կարող ըլլար գործը շարունակել. մանաւանդ որ դրամին մէկ մասն ալ անհաւատարիմ գործակալներ կերան։ Եւ այսպէս դրամական նեղութեան մէջ իյնալով եւ անկէ մ՚ազատութիւն չգտնելով՝ որոշեց դադրեցընել գործը եւ Պոլիս դառնալ։ Այս վերադարձին պատմութիւնը չշարունակած՝ աւարտենք այստեղ իր տպարանին պատմութիւնը։

Սարգիս 1752ին վերջը տպագրութիւնը դադրեցընելէն ետեւ՝ տպագրութեանց մէկ փոքրիկ մասը Վենետիկ՝ Յովհաննէս Սեղրոսեան Ճէլէպիւոյն քով թողած էր, որոնց ցանկը գրած է իրեն 24 Յուլիս 1773ին Վենետիկէն «Պետրոս Արեգա Վ.» (Գիւ. Լիվ.), երբ Սարգիս երկրորդ անգամ Իտալիա գալուն Լիվոռնոյ կը գտնուէր։ Այս ցանկէն կ՚իմանանք որ Սարգիս տպագրեր է նաեւ Ս. Աստուածածնի եւ Ս. Գր. Լուսաւորչի մեծադիր պատկերներ, ինչպէս նաեւ Ս. Աստուածածնի, Ս. Գր. Նարեկացւոյ, եւ Ս. Յակոբ Մծբնայ Հայրապետի պատկերները։ 1754—5ին Կ. Պոլիս հաստատուելէն ետեւ՝ էր ի Պոլիս առ Կեսարացի Սարգիս Վ.ն գիր տպագրական փոխադրեցեալ ի Վենետիկ, յայժ

ազնիւ եւ քաղցրատես, որով [illegible] գիրքն տպեալ էր եւ պահէր առ ինքն զգիրն, եւ ոչ ումեք տայր եւ ոչ ինքն զտպագրութիւն բանայր։ Վասն որոյ՝ գրեաց առ նա Սրբազան վեհն (Սիմէոն կաթողիկոս) զթուղթ սիրոյ եւ խընդրեաց տալ զտպագրական գիրն որդւոյ Աթոռոյս, կամ գնով եւ կամ ի յիշատակ հոգւոյն իւրոյ։ Եւ թէ կամիցի զայս որով կերպիւ եւ իցէ ծանուսցէ միաբանիցն որոց եւ կամիցի ինքն զմիտս իւր, զի գրեսցեն ինքեան. եւ կամ ինքն խօսիցի գրով եւ որպէս կամիցիս, առէ, եւ ինձ է հաճելի։" (Գիւտ քհ. Աղանեանց, Դիւան Գ. Սիմէոն կթղկսի. յիշատակարանը, Թիֆլիզ 1894, էջ 551, Հ. Գ. Զարբհ. Պատմ. հյկն. տպագրութեան, Վենետ. 1895, էջ 184։) Վասն զի Սարգիս ինչպէս Նուրիխանեան Վ. կ՚աւանդէ (Երգ Է). 1755ին Վենետիկէն Պոլիս իր տունը բերել տուաւ տպարանն ու տառերը՝ նոր գրքեր տպելու համար։ Սակայն Յակոբ Նալեան Պատրիարք թոյլ չտուաւ տպագրել՝ բայց միայն իր իսկ ուզածները, որով Սարգիս ստիպուեցաւ այս խորհրդէն ետ կենալ։ 1766ին Սիմէոն կաթողիկոս, երբեմն Սարգսի բարեկամն ու բարերարը (Երգ Թ), յիշեալ սիրալիր նամակու խնդրեց Սարգսէն, որ տպարանի տառերն Էջմիածնի Աթոռոյն նուիրէ կամ ծախէ, միեւնոյն ժամանակ Կ. Պոլսոյ իր գործակալ Մահտեսի Մովսիսին ալ գրեց, որ այն տառերը գնէ Սարգսէն, որուն Կ. Պոլսոյ տպագրիչ մը 1500 դահեկան առաջարկեր է. մինչ Սարգիս 1800

Վ. Պիլէզիկճեան, կը գրէ ինձ (16 Հոկտ. 1906). "Մաղկոցիկը աչքէ անցուցի. կաթողիկէ վարդապետութեան հակառակ բան աչքիս չհանդիպեցաւ. Քրիստոսի բնութեանց վրայ խօսք չկայ. Վերջին օծման մէջ բացայայտ կը դնէ որ այս խորհուրդը իւղով օծելով կը պաշտուի. ամբողջը կաթուղիկեայ քրիստոնէականի տպաւորութիւնը կ'ընէ: Հաւատամքի մեկնութիւնն ալ՝ լատինաց հաւատամքի մեկնութիւնն է կարծես՝ ինչպէս որ ամէն քրիստոնէականի մէջ կը գտնուի: "Հայաստանեայց եկեղեցի" բացատրութիւնն ալ ամենեւին աչքիս չհանդիպեցաւ, այլ առիթը հանդիպելուն՝ "Մայրս մեր կաթուղիկէ եւ առաքելական եկեղեցի" կ'ըսէ:

Սարգսի 1747էն մինչեւ 1752 Վենետիկի մէջ անցուցած կեանքէն եւ ուրիշ գործերէն գրեթէ բան մը ծանօթ չէ: Իր թղթերուն մէջ կը գտնուի միայն 16 Սեպտ. 1748 թուակիր նամակ մը ի Ս. Ժողովոյ (Դիւան Լիվ.), որով Ս. Քահանայապետն Բենեդ. ԺԴ. հրաման կու տայ իրեն ըստ խնդրանացն՝ որ Սարգիս Արքեպ. կարենայ քահանայ ձեռնադրել 25 տարեկան կղերիկոսն, Պաղաթիացի Սարգիս Աստուածատուրեանը, Հայոց մէջ միսիոնարի երթալու համար, եւ թոյլ կու տայ որ ձեռնադրութենէն ետեւ երկու տարի Սարգիս Արքեպ.ի ծառայութեան մէջ մնայ: Նաեւ Հ. Մաթ. Եւդոկիացի կ'աւանդէ (Դիւ. Մխիթ. Վենետ.) Մխիթար Աբբահօր երջանիկ վախճան եւ յաջորդաւորութեան ստորագրութեան մէջ. "1749 Արք.

18. Եւ կային յազգէ մերմէ ի սմին ժամա-նակի երկու եպիսկոպոսք ի Վէհէշ (= Վենե-տիկ), որոց մինն էր տէր Մինաս արքեպիսկո-պոսն Զմիւռնիոյ, եւ միւսն տէր Սարգիս արհի-եպիսկոպոսն Կեսարիոյ Կապադովկացւոց։ Եկին սոքա ի վանս մեր կալ ի հանդէս թաղման նորա եւ ցաւակից եւ կարեկից մեզ եղեալ ընկերա-ցան ընդ մեզ յուղարկաւորութիւն նորա։

Սարգիս Սարրաֆ. Վենետիկէն մեկնեցաւ 1753ին եւ ուղղակի Հռոմ գնաց, ուր ամենէն սիրով ընդունուեցաւ, եւ ամէնքը կը թախան-ձէին որ հոն մնայ։ Սակայն Սարգիս որոշած էր Պոլիս երթալ, ուր կ՚ապրէին տակաւին ծերունի մայրն ու քոյրերը, եւ որովհետեւ չէր կարող հեռուէն տպագրութեամբ ծառայութիւն մա-տուցանել իր ազգին լուսաւորութեան, կ՚ուզէր մօտէն դարձեալ քարոզութեամբ նոյն նպատա-կին հասնիլ։

Դեկտեմբերի 5ին Հռոմ հասաւ Սարգիս (Թղ. Յովս. Եպ.ի ի 29 Դեկտ. 1753. Դիւ. Ընտ.) եւ Հայոց իջեւանն օթեւանեցաւ։ Ինչ-պէս 1773ին տը քարտուղարն Ս. Ժողովոյ գրած նամակին մէջ կը յիշէ ինքը՝ Սարգիս վեց ամիս մնացած է այս երկրորդ անգամ ի Հռոմ։ 1754 Մարտ 16 թուականաւ Ս. Ժո-ղովը վկայական մը տուաւ ձեռքը (Դիւան Լիվ.), ուղղեալ Պոլսոյ լատին Եպիսկոպոսին, որուն մէջ զՍարգիս կը յանձնարարէ անոր մասնաւոր խնամքին եւ հոգածութեան, գովելով անոր առաքինի եւ համակրելի վարմունքը, որով ամէն

մարդու յորդանքը դրուած է։ Պոլսէն 1754 Ապր. 15 թուականաւ Ս. Քահանայապետը Սարգիս Արքեպիսկոպոսին՝ որ իր Հրամանաւ Արեւելք պիտի մերադառնայ, իշխանութիւններ կը շնորհէ (Գիւտ Միլ.), այսպէս ազգականութեան եւ խնամութեան մինչեւ 3ր աստիճանի (բաղդատաբար) Ս. Պաւղի արգելքներէն անցնելու, մահուան ժամանակ լիակատար ներողութիւն շնորհելու, եւ ուրիշ ներողութիւններ, եւ այլն։

Այս անձններն հայ վարդապետներէն ոմանք՝ եպիսկոպոս ձեռնադրուելով Հռոմ կ՚երթային, հոն պատիւ եւ գիտութիւն գտնելու համար, սակայն իրենց խորդախութիւնը Հռոմայ խիստ քննութիւններով երեւան կ՚ելլէր։ Այսպէս Անտոնեան Միաբան Հ. Պօղոս եւ Հ. Գրիգոր վարդապետք կը գրեն 20 Յուլիս 1746 Կ. Պոլսէն ի Միրանան (Գիւ. Անտ.). «Կարապետ վարդապետ Հասանկալէ. երկուքն ալեւք ծեր այս քաղաքս գալոյն եւայ չունէր վկայական ոչ քահանայութեան եւ ոչ եպիսկոպոսութեան, եկեալ է Հռոմայու որ առնիցէր վկայական լաթին եպիսկոպոսէն եւ այլ կարգաւորացն զի դառնայցէր երկկիցանգամ ի մեծն Հռոմ. յորժամ եսես թէ ոչ եղեւ որպէս կամի, այժմ այս անդր աստ թէ գնամ Հոգեւոր Տիրոջ քովն որ ինքն ինձ ճար արասցէ. զգուշացուցէք Հոգեւոր Տէրն զի մի խաբեսցի պատրուակն բանիւքն երկրորդ Կարապետ եպիսկոպոսին, որպէս խաբեցաւ Յակոբ ամենապատուական առաջին Կարապետ Վ.էն. վասն

բանդի իւր ունելով եւ 47 ամեայ զինքն առնելով, սուլթանին իւր յայտնեցաւ. Հանդէպ իւրոց քաղաքացւոց որք գտան ի Հռոմ ընդ Սարգիս եպիսկոպոսին, որք ի Վենետիկոյ մի ամսէ յառաջ քան զնա առ մեզ եկեալ էին։ Քանզի Գերապայծառ Սարգիս եպիսկոպոսին մանրամասնաբար քննեալ զնա սուտ եհան զնա, եւ մեք ոչ հաւատացաք նոյն Եղիազարու եպիսկոպոս գոլ. քանզի յառաջ քան զհաստանիլ նորա եկն մեզ գիր սակս խափերայութեան նորա. եւ այս վասն այնորիկ գրեցաւ զի եւ դուք զնա այդմիկ կողմանն հաշակեցէք մինչ լսէք եթէ գայ այդմիկ կողմանն. եւ եթէ այսպիսի անուամբ եւ քաղաքաւ ի ժամանակ պանդոցի Սանփան վարդապետի ոչ որ նստեալ ի վանքն եւ ոչ առեալ իցէ կարգ քահանայութեան Աջամ եպիսկոպոսէ ի նոյն վանքի Էնկիւրոյ մէջ փութով գրեցէք պարզապէս. իսկ եթէ իցէ սուրբ քահանայ ձեռնադրեալ լսէք, միայն վասն ստութեան եպիսկոպոսութեանն խոսեցէք, եւ թէ ի Հռոմայ ի մէնջ հայերէն վկայական գիր ի ձեռս նորա ոչ տեսանէք վասն ուղղադաւան լինելոյ նորա սուտ, մի հաւատայցէք։,

Սարգիս անմիջապէս Հռոմէն մեկնեցաւ, եւ 1754ին մեծ պահոց մէջ Լիվոռնոյ հասաւ, ուր ազգայիններէն եւ օտարներէն մեծ պատիւ գտաւ, Աւագ շաբթու արարողութիւններն կատարեց Լիվոռնոյի հայ եկեղեցւոյն մէջ եւ Զատկէն ետեւ նաւարկեց ուղղակի Զմիւռնիա։ Սարգսի համբաւը շատ մեծ էր արդէն եւ իրեն

համակրողներու թիւն հազարաւոր, հետեւաբար իր գոյութիւնը չէր կրնար թագուն մնալ. ամէնքը սիրով ընդունեցան զինքը, եւ տեղւոյն առաջնորդն ու բարեկամը՝ Սահակ Ահագին Արքեպ. հիւրընկալեց զինք: Սարգիս կաթողիկեայ հաւատքը տարածելու միմիայն որոշած էր ինք զինք, իր պերճաբան քարոզութեամբը. եւ այս հոգւով մտաւ գործել հայ հասարակութեան մէջ:

## 7.

*Վարդան Արքեպ. Յունանեան. Մելքոն Եպ. Դա-պասեան. Աբրահամ Եպ. Արծիւեան. Գրիգոր Արքեպ. Քիւփէլեան. Սարգիս առաքելական միսիոնար ի Զմիւռնիա. Պրուսա. Սահակ Ահագնի դաւանափոխութիւնը. Սարգիս ի Կ.Պոլիս: Կենսագրութիւն Սամուէլ Եպ. Եոզղկացւոյ. Սարգիս կաթողիկեայ քարոզիչ ի Կ.Պոլիս. իբրեւ Առաջնորդ ի Ռոտոսթոյ 1755ին. դառնալով ի Կ.Պոլիս՝ կ՚աքսորուի ի Կիպրոս:*

Կաթողիկէ հաւատքը Հայոց մէջ տարածելու համար Հռոմայ Ս. Ժողովն ի սկզբան հայագէտ լատին վանականներ, յետոյ Ուրբանեան Դպրոցին հայ աշակերտները եւ 1700էն ետեւ՝ վերջնոց հետ նաեւ Մխիթարեան եւ Լիբանանու Անտոնեան Միաբաններ իբրեւ միսիոնար (առաքեալ) կը ղրկէր Կ.Պոլիս եւ ասիական հայաբնակ գաւառները մինչեւ Կովկաս, Պարսկաստան եւ Հնդկաստան: Անոնց եռանդուն եւ առաքելական գործունէութիւնը 1640էն ի վեր յառաջ բերած էր արդէն հայ կաթողիկեայ հասարակութիւններ, գլխաւոր քաղաքներու մէջ:

Ս. Ժողովը նաեւ առեն առեն Հայ կաթոլիկեայ եպիսկոպոսներ կը ղրկէր, որոնք նոյն տեղերը կը շրջէին, կը քննէին, ի ծածուկ եւ Հակառակ Հալածանաց՝ նոր անդամներ կը վաստըկէին, Հիները կը Հաստատէին եւ ամէնուն Հոգեւոր պէտքերը կը Հոգային։ Այսպէս ծանօթներէն մէկ քանին յիշենք։ Վարդան Վ. Յունանեան, աշակերտ Դպրատան, 1675ին Արքեպիսկոպոս ձեռնադրուեցաւ՝ իբրեւ օգնական Լէմպէրկի Նիկ. Թորոսովիչ Արքեպիսկոպոսին, եւ Ս. Ժողովոյ Հրամանաւ անմիջապէս Ճամբայ ելաւ, ամբողջ Հայաստանի գաւառները շրջեցաւ տասը տարի, եւ 1785ին վերադարձաւ Լէմպէրկ։ Մելքոն Վ. Դաստասեան, աշակերտ Դպրատան, Մերտինի առաջին Հայ կաթողիկեայ Արքեպիսկոպոսը, Ս. Ժողովոյ Հրամանաւ 1685—7 գրեթէ ամբողջ Հայաստան շրջեցաւ քարոզութեամբ։ Աբրահամ Վ. Արծիւեան կամ Ծուլլիզեան որ 1710ին Բերիոյ Եպիսկոպոս ձեռնադրուեցաւ, քիչ ետքը քարոզութեամբ շրջեցաւ Գաղատիա, Կեսարիա, Տրապիզոն եւ ի Կ. Պոլիս, ուր բանտարկուեցաւ 1714ին։ Գրիգոր Վ. Քիւփէլեան, որ Լիբանանու Միքայէլ Պետրոս Գ. Կաթուղիկոսէն (†1780) Ադանայի Արքեպ. ձեռնադրուած էր, Ս. Ժողովոյ Հրամանաւ մինչեւ 1788 ամբողջ Մեծ Հայք շրջեցաւ, քահանաներ ձեռնադրեց, եւ այլն։

Այսպիսի միսիոնար մըն էր նաեւ Սարգիս Արքեպիսկոպոս, որ իւր արժանաւոր մեծ Համբաւովը կոչուած էր Կ. Պոլսոյ Հայոց մէջ կա-

թուղթկէ հաւատքը տարածելու։ Յարակցս չկայ որ իւր այս գործունէութեան արդիւնքները իր զգուշաւոր կենսագրին մէջէ աւանդածներէն շատ աւելի եղած պիտի ըլլան, եւ պիտի գտնուին այս մասին տեղեկութիւններ Ս. Ժողովոյ դիւանին, ինչպէս նաեւ Մխիթարեան Միաբանութեան Վենետկոյ վանքը՝ իր Միաբաններէն հաղորդուած, որոնք առկայն առայժմ անմատչելի են։ Ես ունիմ միայն Սարգսին 1773ին Հռոմ Ս. Ժողովոյ Քարտուղարին գրած նամակին օրինակը (Դիւ. Լիվ.), որուն մէջ ինքն Սարգիս կ'ըսէ. «... Հրաման առեալ ի Քահանայապետէն եւ ի Սրբոյ ժողովոյն գնացաք ի Կ. Պոլիս։ Եւ թէ անդանօր զինչ, եւ զորպիսի հալածանս կրեցաք, եւ զորքան օժանդակութիւնս արարաք ուղղափառացն Հայոց, եւ որպիսի քարոզութեամբ վարեցաք յայտնապէս ի հոյակապ եկեղեցիս Հայոց, եւ զայլ այսպիսի իրակութիւնս տեսանելոց է Լուսածով Սրբազան ժողովն քեւ հանդերձ, ի ձեռն ճշմարիտ վկայական գրեանց գերադանց դեսպանացն Ֆրանսայու եւ Նապօլսոյ, որք ականջալուրք եւ ականատեսք գոլով ամենայն որպիսութեանց առից եւ կրից մերոց՝ վկայեալ հաւաստապէս գրեն...»։ Եւ իրօք իւր քարոզութեան արդիւնքն են՝ վատակուած կաթուղիկեայ Եկեղեցւոյ, բաց ի նշանաւոր եւ հասարակ աշխարհականներէն, նաեւ Սամուէլ Եպիսկոպոսն Պրուսայու, Գրիգոր Պասմաճեան Պատրիարքն Կ. Պոլսոյ, եւ Յարութիւն Բասենցի, Արքեպիսկոպոսն Էջմիածնի,

ինչպէս վարը պիտի տեսնենք, վկայական թղթերով։

Սարգիս հազիւ ոտքը Զմիւռնիա կոխեց, տեղւոյն Հայերէն մեծաւ շքով եւ համակրութեամբ ընդունուեցաւ։ Սկսաւ անմիջապէս իւր համբաւեալ քարոզութիւնները քաղքին Հայ եկեղեցւոյն մէջ։ Այն ժամանակները եկեղեցւոյ ամէն քարոզներու մէջ անպատճառ Քաղկեդոնի Ս. Ժողովոյն, Ս. Լեւոն Քահանայապետին, եւ ուղղափառներուն („ծայթէք, աթխարմայք, հերձուածողք, հեստեալք„ եւն) դէմ նզովքներ կը տեղային։ Սարգիս ասոնցմէ եւ ոչ մին բերանն առաւ, եւ մեծաւ խոհեմութեամբ կաթուղիկեայ հաւատքը քարոզեց։ Ժողովուրդն անմիջապէս երկուքի բաժնուեցաւ, մէկ մասն սկսաւ զինքը բամբասել եւ ատել, իսկ ուրիշներն իրեն վարդապետութեան յարեցան. Սահակ Ա. Հագին Առաջնորդն, իւր բարեկամը, տեսաւ որ Սարգսի մեծ համբաւն ու հմտութիւնը ազգն իւր կողմը կը ձգէ, սկսաւ նախանձիլ իրեն եւ ատել իսկ զինքն ու վարդապետութիւնը։ Սարգիս նախատեսելով յառաջ գալիք չարիքները՝ նոյն տարին աշնան Պրուսա գնաց, ուր նոյնպէս ազգը մեծ սիրով եւ պատուով ընդունեցաւ զինքը։ Այն ատեն Պրուսայի Առաջնորդ էր Գէորգ Արքեպ. Դարանցի (Հարանդեցի, 1752—1756. Վանքեան Արխառ. Նոյ. „Բիւզանդիոն„ 1906 թ. 3127) որ յառաջ Կ. Պոլսոյ Պատրիարք եղած էր (15 Յունիս 1751—1752 Մայիս) եւ քաղցրաբարոյ, հիւրասէր եւ քաղաքավար մէկն էր, եւ զՍարգիս շատ

սիրով եւ պատուով ընդունեցաւ։ Սահակ Ահագին Զմիւռնիայէն երբ լսեց Սարգսին Պրուսայի մէջ գտած ընդունելութիւնը, առաւել եւս բորբոքեցաւ Սարգսի դէմ, եւ Յակոբ Պատրիարքին գրեց, որ Սարգիս քիչ ատենէն Պատրիարքութիւնը ձեռքէն պիտի առնու, ուստի դեռ Պոլիս չեկած, անոր բարեկամներէն գաղտնի՝ լրութեամբ զինք աքսորել տայ. վասն զի, կը գրէր Սահակ, Փռանկներու դեսպաններուն պատուէր գացած է իրենց մեծերէն, որ Սարգիսը՝ միայն Փռանկներու, Պատրիարք ընեն։ Այս ամէնը կ՚ըսէր, իբր թէ ինքն Սարգսին բերնէն առած ըլլայ գինովութեան ատեն, եւ այս նպատակի համար է որ Նախկին Պատրիարք Գէորգայ հետ խորհուրդ կ՚ընէ եւ իրարու սէր կը ցուցընեն. Սահակ Ահագնի այս ամէն յաչաղկոտ զրպարտութիւնները սուտ էին, վասն զի Սարգիս գինարբու չէր բնաւ եւ որեւէ դեսպանի ուղղուած թուղթ չունէր, եւ ոչ ալ փառաց հետամուտ էր, եւ ի սկզբանէ անտի փառքէ կը փախչէր։

Սահակ Ահագին անխոհեմութեամբ այս գրած նամակը սենեկին մէջ բաց թողած էր, եւ Սարգսի մէկ բարեկամը նոյնը կարդալով՝ անմիջապէս հաղորդեց անոր Պրուսա։ Սարգիս շատ խռովեցաւ, խնդրեց խնդիրը Գէորգայ, որ եւ զինք մխիթարեց եւ քաջալերեց ըսելով՝ թէ ինք Պոլիս շատ բարեկամներ ունի, եւ անմիջապէս կը գրէ անոնց, որ իմանան թէ Սահակայ նամակն ինչ տպաւորութիւն ըրած է Յակոբայ վրայ։ Բայց Սարգիս չուզելով որ խնդիրը շուտով ծա-

նօթանայ, եւ կեցուց զԳէորգ խորհրդէն, եւ ուզեց ինք անմիջապէս Պոլիս երթալ եւ հոն Ահագնոյ ստութիւնները գործով յանդիմանել։ Փութաց ի Կ.Պոլիս եւ Յակոբայ հետ ողջագուրեցաւ։ Յակոբ, որ արդէն Սահակայ նամակին առած էր եւ Սարգսի դէմ սաստիկ գրգռուած՝ ուզած էր անմիջապէս արքունի Դուռը գրել եւ Սարգսի աքսորման հրամանագիրն հանել։ Սակայն իր փոխանորդն Աղու Սամուէլ Վ. Երզնկացի, եւ կեցուց զինք՝ ըսելով թէ նախ պէտք է փորձել Սարգսի լեզուն ու վարմունքը։ Յակոբ տեսնելով Սարգսի սէրն, անկեղծութիւնն ու անմեղութիւնը, սիրով վարուեցաւ հետն, սակայն սրտին մէջ միշտ կասկած ունէր, որ Սարգիս կրնայ պատրիարքութիւնը խլել իրմէ։

Այսպէս ընդհատելով Սարգսի գործունէութիւնը, կ'ուզեմ յիշել եւ փոքր ալ յիշուելի Սամուէլ վարդապետի վրայ տեղեկութիւն տալ, եւ այն՝ նոր տեղեկութիւններ։

Սամուէլ Վ. Երզնկացի՝ Յովհ. Կոլոտ Պատրիարքին վերջին աշակերտներէն էր։ (Սարգիս Դպիր Յովհաննիսեան, Ձեռագիր։ «Կոլոտ» էջ 71։) Ծնած էր 1706ին. Եպիսկոպոս ձեռնագրուելու տարին ծանօթ չէ. «1749ին Առաջնորդ կ'ընտրուի Պրուսայի, սակայն տակաւին ինքը չեկած, պատրիարքութենէ հրաժարեալ Նալեան Յակոբ Եպս. կու գայ Պրուսա.» (Վանքեան Արիստ. Եպ. «Բիւզանդիոն» 1906 թ. 3127։) Նալեանի վերստին պատրիարքութեան ժամանակ (16 Մայ. 1752—1764 Մայ. 14.)

1754ին Նալեանի փոխանորդ էր (Նուրաթինեան, Երգ Է.)։ Սամուէլ Վ. 1752—6 Երուսաղէմի պատրիարքին փոխանորդութիւն ըրած է ի Կ.Պոլիս (Բաբգէն Վ. "Լոյս" 1905 էջ 967, ուղղելով Ա. Ալպօյաճեանը, որ նոյն փոխանորդաց շարքին մէջ անտարակոյս կը նշանակէ զՍամուէլ Վ., "Բիւզանդիոն" 1905 թ. 2734)։ Ըստ Հր. Աստուրի (Ընդ. Օր. 1901 էջ 144, ակէ առեալ Բաբգէն Վ. "Արեւելեան Մամուլ" 1904 էջ 291 ծան.) 1756ին Պրուսայի Առաջնորդ եղած էր "մինչեւ 1780, որմէ ետքը եկաւ հաստատուեցաւ Խասգիւղ, ուր մեռաւ 1786ին, եւ ուր կը գտնուի դեռ իր գերեզմանը"։ "Սամուէլ Երզնկացի... անգամ մը Երուսաղէմի, անգամ մը Պոլսի, անգամ մըն ալ Էջմիածնի կաթողիկոս ընտրուելով՝ երեք անգամն ալ հրաժարեցաւ, ու մնաց միշտ առաջնորդ Պրուսայի՝ իր վերջին ալեւոր տարիները միայն գալով Կ.Պոլիս եւ ըլլալով քաղաքիս Խասգիւղի, ուր եւ վախճանեցաւ ութսունամեայ, եւ թաղեցաւ 1786ին (Յ. Գ. Մրմրեան, "Մասիս" 1906, Նոր Շրջ. թ. 1 էջ 10)։ Իսկ ըստ Վանքեան Արիստակէս Եպիսկոպոսի (անդ) "Սամուէլ Եպիսկոպոս Երզնկացի (1760—1780 առաջնորդ Պրուսայի) — 1748ին արդէն այս պաշտօնին համար կոչուած էր։ Յիշատակութիւն մը այնպէս ցոյց կու տայ թէ Կ.Պոլսէն 1760 կամ 61 թուականներուն Պրուսա եկած է։ Երկար եւ նշանակելի պաշտօնավարութիւն ունեցած է։ Առաջնորդարանը կարգաւորած, ծննդեան

տամար հաստատուած է, Կ. Պոլսոյ անանկաց մատակարարութեան պէս մարմին մ'ալ Պրուսա հաստատուած է 1761ին, իր կողմանէ ալ նշանակելի նուիրատուութիւններ ընելով։ Սամուէլ Եպիսկոպոս Էջմիածնայ կաթուղիկոս, Երուսաղեմայ եւ Կ. Պոլսոյ պատրիարք ընտրուած է, սակայն ի սպառ մերժած է։ Պրուսան նախամեծար համարելով, 1780ին պաշտօնը կը թողու եւ Կ. Պոլիս խաղաղիկ կը հաստատուի ուր կը վախճանի եւ կը թաղուի 1786ին իր պարզ տապանաքարը խաղաղիկ գերեզմանատան մէջ կ'երեւի ցայսօր։„ Զգտայ Էջմիածնի կաթողիկոս ընտրուելուն վաւերական յիշատակութիւնը բաց ի սա պարագայէն՝ որ Զմիւռնիոյ Առաջնորդ Աբրահամ Արքեպ. Աստապատցի երկու ընտրելի կ'առաջարկէր՝ Սամուէլ Եպս. Պրուսայու եւ Սիմէոն Եպ. (Աշանեանց, անդ էջ ՀԹ.)։ Կը տարակուսիմ Երուսաղեմայ պատրիարք ընտրուելուն վրայ. վասն զի Կոլոտ եւ Գրիգոր պատրիարքներու միաբանութեամբ եւ Կարապետ Կաթողիկոսի հաստատութեամբ 1726էն ետեւ Երուսաղէմի պատրիարքութեան ընտրելին Երուսաղեմի Միաբանութեան անդամներէն պիտի առնուէր (Կոլոտ, էջ 28)։ Ինձ ծանօթ է միայն Կ. Պոլսոյ պատրիարք ընտրուելուն վկայութիւնը. վասն զի Յակոբ Նալեան պատրիարքութենէ հրաժարելու ատեն՝ (1764) իրեն յաջորդ "ընտրեաց զՍամուէլ Վ. Երզնկացի՝ որ էր յայնժամ ի Պրուսա, եւ ի հրաւիրել նոցա գնա յայն պատիւ, նա հրաժարելով հրաժարեցաւ, եւ նոքա

հարկեցան գալ ու բնակել. (Չամչեան Գ. էջ 872). զոր եւ կը հաստատէ Գրիգոր Պատրիարք Պասմաճեան (15 Մայ. 1764—1773 Նոյ. ի վերջը) «Յիշատակարան»ին մէջ (Բաբգէն Վ. «Բանասէր» 1905 էջ 91—94) յիշելով՝ թէ այն բնութեան առթիւ Սամուէլ Եպիսկոպոս գրած է. «Նա զիս սեփհական թէմիս եւ վիճակիս զմէկ ծեր պառաւն ձեր բոլոր պատրիարքութեան չեմ փոխանակել, զի ըստ որում ընդ այն վիճակի եմ պսակեալ յառաջագոյն»։

Այսչափ է իր մասին ցայսօր հրատարակուածները. սակայն զարմանալի է, որ եւ ոչ մէկը կը յիշէ իր կեանքին վերջին մեծ գրուածը, որ այն ժամանակ ամբողջ Կ. Պոլսի Հայերը սարսեց սաստանեցուց։

Սարգիս Արքեպ. Սարաֆեանի թղթերուն մէջ (Դիւ. Լիվ.) կան Սամուէլ Եպիսկոպոսի ինքնագիր մէկ նամակը եւ այլոց նամակները, որոնց առաջնոյն համեմատ (գրուած 28 Նոյ. 1772 ի Կ. Պոլիս, Արութիւն Պետանեան Կ. Պոլսեցիէն առ Սարգ. Արք. ի Մարսիլիա կամ ի Հռոմ։) «Սամուէլ Վ.ն ի Նոյ. 7ին եկն ի Պրուսայու, եւ ըստ քոյդ է եղանակ գալստեան նորին ի ձեռն նոյն արանց՝ որովք դու, եւ նպատակն՝ յոր դու չուեցեր. ժամանակն մերձ ընդ մերձ, երբ առաջինն եղանէ նաւ. բայց յոր նաւահանգիստ եղանելն տակաւին անյայտ, զի յաջողման պատրաստ նաւու սպասէ սա եւ գնասցէ նաւն, որ ողջունեաց մեծաւ սիրով, եւ ընդ աճապարելդ հիացաւ, որոյն դժուարացաւ եղանակ ելից.

ուստի ի Պատրիարքարանն եւ ի Դատապարտարանն Թագաւորի առ չտալոյ առիթ, եւ քարոզէ թէ անդրէն ի Պրուսայ գնալոց եմ, զի մահուս յօժաննէս վարդապետ հարեղայն իւր ընդ իւր է, ոչ կարէ գտանել զկերպ անջատման, Տէր յաջողեսցէ զգնացս իւր, զկնի որոյ կարի դժուարանայ բաժանեցույնն... զոցա մի բան միոջէ ունիմ խմանալ մերձ ժամանակն ի Ս.[-մ--էլ] Վ.[-ր-ք--դ-ս] էն կենդանի ձայնիւ....» Այն նամակիս հասցէին վրայ գրուած է նաեւ՝ «Գալլիականն նաւու գուցէ ձեռամբ Սամուէլ վարդապետի»:

Ստեփ. Վ. Աբրահամյ Մխիթարեանց 9 Յունուար 1773 Թուականաւ Վենետիկէն կը գրէ առ Սարգիս Արքեպ. ի Լիվոռնոյ «...վասն Սամուէլ Վ.ին գրեն, թէ եկեալ է ի Պրուսայու ի Ստամպօլ եւ հանդիստակէս հրաժարեալ է թէ գնամ ի խալըրդ ի մի ի վանիցն, եւ անդ անցուցանեմ զծերութիւն իմ. եւ այս առէ գրողն այն, թէ այն ատացեալ խալըրդն անկանի ի կողմանս Վենետկու եւն:»

Եւ իրօք Սամուէլ Վ. 1772 Դեկտ. 4ին գաղտնի նաւ մտնելով խալիճը Չիվիթավէքքիա քաղաքին ճամբով Հռոմ գնաց, ինչպէս «Պետրոս ափ Զաքարիա եւ Պետրոս ափ Մուրատ»: 8 Դեկտ. 1772ին Պոլսէն կը գրեն Սարգիս Արքեպիսկոպոսին ի Լիվոռնոյ, թէ «Սամուէլ Վ.ն առաջնորդն Պրուսայու ի Դեկտ. 4ին Փրանկզի նաւով չուեալ ասուի ի Մարսիլիայ, որ անտի ի Հռոմ երթալոց է»: Այս տեղեկութեան վաւերական

պատմութիւնն իւր Սամուէլ Վ. գրած է Հռոմէն 5 Յունիս 1773 թուականի նամակով առ Սարգիս Արքեպ.։ Այս նամակս ամբողջապէս կը դնեմ այստեղ, իր ուղղագրութեան իսկական նմանահանութեամբը։

է.

*Խանձմազգոյն մեծի եղբօրդ իմոյ ի Քրիստոս Տեառնդ Սարգսի Աստուածաբան Վարդապետին յամենայն սրտէ կարօտի. ողջոյն եւ ուխտ համբուրմանց ողջ կենդանւոյդ ի Տէր։*

Ես զկնի եղբայրական սիրոյ ողջունիս, եւ հարցանելոյ ողջանալ կենացդ, եւ ուրախութենէ ի ներկայումս թէ հիպէս կեաս, եւ փառօք զմեծացեալ կեանս քո, ա՛հ զինչ տամ Աստուծոյ յանձին գրել եւ գմեղ, ի ներ թշուառութեան աշխարհիս որ լի է խարէութեամբ եւ ստութեամբ եւ այլն։ Արդ սիրելի իմ եթէ զուրախութեան եւս մեր հարցանել կամիս լուր։ ՌՄԻԱ-ին (= 1772), Նոյեմբերի 3 եկաք ի Պրուսայէս եւ հասաք ի մեծն փոլիս. ուղղապէս գնացի ի պատրիարքարանն բոլոր ընչիւք իմովք, եւ մինչեւ ի որ օրըն կարն մեր բուեր գրեանքս եազմա առկաւ առ առկաւ վերուցի ոչ ոք խմնալով. եւ պատմա գրեանքս Բ ամսուկի մէջ թողելով, եւ այլ էշեայք ի սուրբ Երուսաղեմայ վէքիլի օթարանն քարէ ատան, եւ հրամանաւ պատրիարքին եւ Գաապար աղբարին գնացի ի տեսութիւն բոլոր բարեկամաց, ամենեւին ոչ նշան տալով։ Աստուծով Դեկտեմբերի 4ին ի խուռուչէշմէէն, այսինքն ի տանէ Պետրոս աղբարին ելի եւ ուղիղ եկա ի խզխուլէն, եւ անդի մտա ի նաւն, եւ 24 աւհաթն հասաք ի պօղազ հիսարն եւ անդի առանց վնասու եկաք, եւ մինչեւ 18 օրն հասաք ի Մալթա կղզէն, եւ անդի եկաք դէպ ի Մառշիլիա, բայց հողմն կարի ընդդէմ գոլով Բ անգամ յետս դարձաք ի

մայլթա, եւ յախյած մնացեալ զառօնթան անդ-պահեցաք ԼԸ օր, եւ ապա ելաք ի քաղաքն, եւ վասն անյաջողութեան հողմոյն Բ ամիս ուկէս մնացի ի մայլթայ. մտա փռանկի նաւ. մի գնալ ի փօլի, մէկ օր եւ մին գիշեր գնաց հողմն ընդդէմ դարձոյց նաւն. կրկին ելաք ի մայլթա, եւ անտի եւս ելաք եւ մտաք փոքրիկ պէկկիկ նաւն, եւ սա նաւեաց Գ. օր եւ Գ. գիշեր հողմն կարի սաստիկ, սա եւս դարձաւ յետս. եւ կրկին ելաք ի մայլթա. զինի քանի աւուրց փոքրիկ նաւուան ելաք ի ճանապարհ, մինչեւ ի ԺԹ օրն հասաք ի չիւիտէվէքէ փոքրի քաղաքն, եւ անտի ելեալ Ի օրն հասաք ի հռօմ որ յայժմ եմ ի Մարեամ Եգիպտացւոյ եկեղեցին, եւ որպէս արդէն լուաք յայժմ այնպէս ոչ տեսաք. Աստուած տացէ պահէ զմեզ ի դայթակղութենէ. մէկ քանի փող ունէաք մնաց ի մեծն փոլիս եւ մինչեւ ցայժմ ամենեւին գիր ոչ ընկալաք, զեռ եւս որբացեալ պապին կէարիւշմիշ չեղաք. 80 բակութ պարտք արարի, փողն մեր մնաց անդ եւ մեք աստ մնացաք խղճալի. Աստուած ինքն հոգասցէ յորէ յորմէ ելաք ի մեծէն պոլսոյ մինչեւ ցայժմ ամենեւին մխիթարութիւն իմն ոչ տեսաք Աստուած զվախճանն մեր ի բարին եղերեսցէ առանց տրտնջման եւ դայթակղութեան. եղանակն քաղաքիս եւս է աւեր, բնութիւնն մեր տկար, եւ զինչ առնելս ոչ գիտեմ, ամենից կողմանց շուարեալ կեամ. Աստուած ամենակալ ի թիկունս հասեալ օգնեսցէ մեզ, եւ առաջի իմն պատրաստեալ առա՝ խաղաղութեամբ եղբարեցից զկեանն մեր, որ ի յարեւելս գաւառայն իմն անկարելի է, յաւ է ինձ ամփոփան մեռանիլն աստ ի կողմանս՝ քան դառնալ յետս. որ է մահ մահու, եւ խայթ զժողոց եւ այլն, եթէ կամիս գրոյս հաւանիլն գերապայծառութեանդ փութայցիս մի ծանոյ անդրախաթի, եւ թէ ոչ այլ այն կամք քո եւ բաւէ աղջոյնն քո ընդ գրիւն Հայր Գրիգորին ընկալոյ մեծաւ սիրով:

1773 [illegible]    [illegible]

լուսանցքը՝

Հայր յօհաննէսին եւ այլ ընդ քեզ եղեալ ծառայիցն ողջոյն ընծայեմ. լեցին ողջ ի շնորհս Տեառն։

Ընդ իս եղեալ Հեռնասուն խաչակ ատրկաւագն սուրբ Աջդ համբուրէ մեծաւ սիրով.

Հասցէն՝

Ալ.

Հասցէ գիրս ի ձեռս Տեառն Սարգիս Արքեպիսկոպոսին ի քաղիս.

Al Ill^mo e R^mo Sig: Pn. Colm.

Il Monsig. Arciv: Sargio Armeno.

**Livorno.**

Սամուէլի դոլսէն մեկնելէն ետեւ՝ (Թուղթ Սահփ. Արքայի առ Սարգիս Արքեպ. ի Լիվոռնոյ 13 փետր. 1773) "վասն հնարիւք խուսելոյ Սամուէլ Վ.-ին ի Սասամկօլու, շփոթեալ են քաղաքք, եւս ի մեծամեծաց ազգին, զի չունէին կարծիս զնմանէ...:„ Դարձեալ՝ "մահանսի բռնէրան քարաղ օղլու„ 29 Ապր. 1773ին Վենետիկէն կը գրէ առ Սարգիս Արքեպ. ի Լիվոռնոյ, Սամուէլ Վ.-ի գաղտուկ փախչելու մասին, թէ "այս բանիս վրայ տասամկօլ հայերուն մէջ շատ որոտմունք է եղեր, մինչեւ կ'ուզեն եղեր սենաթօս անել:„ Ընտանեան Մխարանու-

թեան Ս. Գր. Լուսաւորիչ վանուց Մեծաւորն՝ Հ. Գրիգոր Նէփոթ կը գրէ Հռոմէն 15 Մայ. 1773ին առ Սարգիս Արքեպ. ի Լիվ., թէ «...մինչև 12 էջս Սամուէլ արհիեպիսկոպոսն Պօլսոյ Հանդերձ սարկաւագաւն իւրով ողջ և առողջ, ի բազմաց Հետէ լուեալ էի զլուր նորին գրէթէ 30 ամէ ի վեր...»: Անշուշտ Հ. Գրիգոր՝ Սամուէլի Հաւատքին մասին կ՚ակնարկէ «լուր» բառով, որով կ՚ունենանք 1743 տարին, երբ Սարգիս Արքեպ. պաշտօնապէս կաթողիկեայ Հաւատքի դաւանութիւնը տուաւ, ինչպէս տեսանք: Նոյնպէս Վենետիկի Միաբան Հ. Գէորգ Վ. կը գրէ Հռոմէն 29 Մայ. 1773 առ Սարգիս Արքեպ. ի Լիվ., թէ «...ի վաղուց հետէ Սամուէլ Վ.ն ի Հռոմ և կայ ողջութեամբ և զգերապայծառութիւնդ սիրով ողջունէ...»: Նաև Գրիգոր Պասմաճեան պատրիարքը «Յիշատակարանին» մէջ (անդ էջ 238) կը յիշէ, թէ Բալուցի Սամուէլ երէցն և Ակնցի Աբրահամ զինք կ՚ամբաստանէին «...զի իբր զՍարգիս և զՍամուէլ եպիսկոպոսն ես իցեմ զնոսա առաքող ի յարևմուտս՝ տալով նոցա երկուսին ԸՃ (= 800) քսակ փողս Հարկադիրս լինելով ի վերայ նոցա թէ գնացէք և ի յանդիմանոր դպրատունս բացէք և սահմանեցէք, որ ես տայի յորդորեալ մարդիկ առաքիցեմ անտի առ ձեզ վասն ուսներոյ զլատինականս»:

Սամուէլ Եպ. նոյն 1773 տարին վենետիկ այցելած է. վասն զի ունինք Ախալցխայի

Երբեայ. Պօղոս Լեւոնեանին 30 Յուլիս 1774ին ի Վենետիկ գրած ձեռնադրութեան վկայականի օրինակն (Գիւ. Ընտ.) յորում կ'ըսուի "...դպի-րացու Սվանեան Գաղատացի Գեւորգի պաշը որդի օղլու, որ ամուս. յառաջ, այսինքն ի 1773 Հոկտեմբերի 18, ...ընկալեալ էր չորս փոքր աստիճանս ի գերապայծառ Սամուէլ եպիսկոպոսէ Պուրսայու, յաւուրս գտանելոյ իւրոյ ի Վենետիկ...։

Սամուէլ Եպ.ին Հռոմայ մէջ անցուցած ամիսներէն քիչ բան ծանօթ է։ Յուրացցոյի Եպիսկոպոսն 26 Յունիս 1773ին կը գրէ առ Սարգիս Երբեայ.ի Լիվոռնոյ, որ Ս. Ժողովոյ քարտուղարը Մոն. Պօրձիա "կը յուսայ կարգի դնել Պրուսայի Եպիսկոպոսին գործը"։ Եւ իրօք Ուղուրլեան Մ. Վ. (տես էջ 225) կ'աւանդէ, թէ Սիմոն Վ. Ոսմանեան, եպիսկոպոսն Գաղատիոյ, որ կաթողիկեայ ըլլալէն եւ ի Հռոմ Հաստատուելէն ետեւ, 1767ին ձեռնադրիչ կարգուած էր ի Ս. Ժողովոյ, փոխանակեցաւ 1774ին, եւ յաջորդ "կարգեցաւ Սամուէլ Եպիսկոպոս Բիւթանիոյ կամ Պրուսայ, որ մնացեալ քանի մը տարիներ՝ թողեալ դարձաւ իւր Աթոռն, ուստի իւր անդն ընտրեցաւ յամի 1781 Պօղոս Վ. Լեւոնեան Երբեայ. Ախալցխայու"։ Դարձեալ՝ Սամուէլ Եպիսկոպոս 1775ին Հռոմայ մէջ գնած է՝ 1744ին Հռոմ գրուած կաթուղիկէական գիրք մը, "Համառօտ ընծեռութիւն...." (Մատ. Ընտ. թիւ Մխթ.), որուն վերջը Սամուէլ Եպիսկոպոս անձամբ գրած է

(Ալիվանեցի գիւտին նամակին հետ նոյն գիր,) հետեւեալը. «Ես Սամուէլ Վարդապետս, եկի ի Հռոմ ի թուին փրկչին 1773 ի Մայիսի 3, եւ գնի 1775 ամի զգիրքս ծախու ի վերակացու Մարիամ Եգիպտացւոյ եկեղեցւոյ Տիմոթէոս քահանայէն Վ.էն Գաղատացւոյ, տասն ահեկեան յայս եղեցի, որ ձեռամբ իմով գրեցի, բաւ է։

Թէ Սամուէլ Եպիսկոպոս Երզնկացի 1773—5 Հռոմ կեցած է, աՀաւասիկ կատարեալ ապացոյց է. Յովհ. տէ Սերրոս 12 Օգ. 1775ին Վենետիկէն առ Հ. Գէորգ Վ.ի Հռոմ գրած նամակին մէջ (Դիւ. Ընդ.) ողջոյն կը ղրկէ Սամուէլ Եպ.ին։ 1774—1780ի Հռոմ Ս. Ժողովոյ կողմանէ Հայազգի կղերականաց ձեռնադրիչ գրուած ըլլալը կ'աւանդէ Աւգուրլեան (վերն), եւ հաւանական է. վասն զի իրօք 1781ին ձեռնադրիչ կը կարգուի Պօղոս Արքեպ., եւ ըստ երեւութին կը միաբանի վերն յիշուած ազգային հեղինակներու աւանդութեան վերջին մասին, այն է 1780—1786 Կ.Պոլիս խաղցուց բնակած եւ վախճանած ըլլալուն։ Սակայն այս կէտն ինծի կասկածելի կ'երեւայ։ Վասն զի 1. Ինքն Սամուէլ Եպս. վերոյիշեալ նամակին մէջ կ'ըսէ՝ թէ ի հայրենիս չի դառնար այլ եւս, որ մահ մահու եւ խայթ դժոխոց է, եւ աւելի կ'ընտրէ ամօմահ մեռնիլ ի Հռոմ։ 2. Աւգուրլեան (անդ, էջ 224) կը գրէ, թէ Հռոմայ Հայոց տան Ս. Մարիամ Եգիպտացի եկեղեցւոյն մէջ թաղուած կայ ոմն «Սամուէլ Վ. Լաճեան, Եպիսկոպոս Պրուսայ,

† յունիս 1773»: Ո՞վ է այս Պրուսայի եպիսկոպոսն Սամուէլ, զոր Վանդեան Եպ. չի յիշեր իր Պրուսայի առաջնորդաց ցուցականագրքին մէջ («Բիւզանդիոն», անդ). Ինչ էր մեր Սամուէլ Եպ. Երզնկացւոյ մականունը. արդեօք Լանճեան Եպ.ի մահուան թուականի «1773» ընթերցումը կամ տպագրութիւնը սխալ չէ՞, քանի որ մեր Սամուէլը 1775ին դեռ ողջ էր ստուգապէս: Հարցումներ, որոնց չեմ կարող պատասխանել:

Միմիակ ակնարկութիւն մը գտայ ըստ լատ. 6 Հոկտ. 1778ին Կ. Պոլսէն գրուած նամակի մը մէջ (Գիւ. Ընա), որմէ կ՚իմացուի, թէ Սամուէլ այս միջոցին Պոլիս դարձած էր արդէն: Նամակագիրը կ՚ըսէ. «... Գրելով եւ յորդորելով ի յետս դարձմանէ Սամուէլին, ի վերէ շուման գ. Գրիգոր Պատրիարքի, ի վերէ համարձակութեան ձերում ընդդէմ դէսպոտական վարդապետութեան որ ի պոլիս ... զագարիս պատրիարգ ձեռն արկանէ ի հալածել զեկեղեցին հանդերձ իւրովք գործակցօք ...»:

Ունինք ուրիշ կողմանէ վկայութիւն մ՚ալ 1780ին Կ. Պոլիս գտնուելուն. վասն զի Բարգէն Վ. կը գրէ թէ Պալաթու Ս. Հրեշտակապետ եկեղեցւոյ մէջ կը պահուի Սամուէլ Եպ.ի 1780ին գրած հետեւեալ աշխատասիրութիւնը. «Կը[illegible] [illegible], եւ [illegible] [illegible] տետր, ժողովեալ եւ յարմարեալ ի Սամուէլ ընչին անիմաստ Երզնկայէ եւ վերատեսուչէ Պրուսայու» («Լոյս», 1905, էջ 967,

ուր յառաջ կը բերուի Սամուէլ Եպ.է Հաս-տատուած Պրուսայի Եկեղեցւոյն Մկրտութեան տոմարը։)

Կը մնայ ինձ անձամբ ստուգել, թէ իրաք մեր Սամուէլն 1786ին Խասգիւղի գերեզմանոցը թաղուած է, ինչպէս կ'աւանդուի։ Այս նպատակաւ 1907 Մայիս 3ին գացի Խասգիւղ, Հայոց գերեզմանոցը, եւ երկար յուզելէն ետեւ՝ գտայ վերջապէս, լերան բարձունքին վրայ "Խա-ղուպեանց" անուանեալ գերեզմանաթաղին մէջ, փտած ու փլփլկած վանդակով պատեալ, մեր փնտռած Սամուէլ Վ.ի գերեզմանաքարը, մեծ քար մը, վրան եպիսկոպոսական թագ մը, որուն տակը վարդապետական եւ եպիսկոպոսական գաւազաններ իրարու վրայ պառկած։ Ասոնց տակ կը կարդանք հետեւեալ տապանագիրը՝ (գրերէն ոմանք մնացիր.)

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՀԱՆ
ԳԸՍՏԵԱՆ ՍԱՄՈՒԷԼ
ՎՐԴՊՏԻ ԵՒ ԱՐՔ ԵՊԻԿՍՈՒ
ԱՈՒԱՋՆՈՐԴԻ ՎԻՃԱԿԻՆ
ՊՐՈՒՍԱՅԻ ՈՐ ԳՈԼՈՎ.
ՈՒԹՍՈՒՆ ԱՄԱՑ ՀԱՆԳԵԱՒ
Ի ՔՍ Ի ԹՈՒԱԿԱՆԻՆ
ՀԱՅՈՑ ՌՄԼԵ

1786.

Եթէ ճշմարտիւ այս անդ թաղուած է Սամուէլ Վ. Երզնկացի, կը մնայ ստուգել հոմ թաղուած միւս Սամուէլ Վ. Լաճեանի խնդ-

թիւնը, ինչպէս նաեւ Սամուէլ Երզնկացւոյ Հռոմէն վերադառնալուն պարագաները, զոր կը յանձնարարենք Հռոմաբնակ ընթերցողներէն մէկուն:

Դառնանք այժմ Սարգիս Արքեպիսկոպոսին:

Սարգիս Յակոբ Պատրիարքին թոյլտուու-թեամբ Կ. Պոլիս հաստատուելէն ետեւ, սկսաւ դարձեալ իր քարոզութիւնները, եւ շատերէն համակրութիւն գտաւ: Միւս կողմանէ հակառակութիւն կը տեսնէր անընդհատ, որոնք Քաղ-կեդոնի ժողովոյն Ս. Հայրերն ու կանոնները եւ զՍ. Լեւոնը կը նզովէին, եւ որոնց համար այն էր գիտունը, սուրբ վարդապետը եւ արթուն հո-վիւը, որ Հռոմէական եկեղեցին կ'անիծէր: Ըսենք անցնելով որ Սարգիս Հռոմէն դարձաւ եւ Հայոց յարեցաւ, կ'ուզէին որ անիկայ նզովէ Հռոմայ օրհնեալ գահը եւ հռոմէական Հայերը: Բայց Սարգիս գիտէր խոհեմաբար եւ ըստ խղճի վարուիլ: Հակառակորդք տեսնելով որ Սարգիս Հռոմայ գահին դէմ բան մը չ'ըսեր. "Անիկայ տակաւին Փռանկ է", ըսին. իսկ ուրիշներ(?) կ'ըսէին թէ "այլ եւս Փռանկ չէ": Յա-կոբ Պատրիարք միշտ կասկածանքի մէջ՝ կ'ու-զէր որ Սարգիս Փռանկ համարուի, որուն հա-նելու համար հետեւեալ հնարքը մտածեց: Ուզեց որ Սարգիս Ծննդեան, Պենտեկոստէին, Մեռելոց օրն եւ Ս. Պետրոսի տօներուն քարոզ տայ, որոնց մէջ անպատճառ Ս. Հոգւոյ բղխման վէճը, երկու կամ մի բնութեան խնդիրը, մեծե-

լոց միճակը, դեսպանի գլխաւորութիւնը պէտք էր որ շօշափուէր։ Սարգիս, որ հնատես եւ շրջահայեաց էր, այս գաւէն չբռնուեցաւ. հապա իր բնաբանն ու միայնութիւնները Հայ Հայրապետներէն եւ հեղինակներէն առնելով ուղղափառ վարդապետութիւնը կը քարոզէր յուրախութիւն ուղղափառաց։ Բայց թէպէտ հակառակորդներ ալ գտնուէին՝ առ հասարակ ամէնքը կը զարմանային եւ կը յարգէին զինք եւ անոր քարոզին գունդագունդ կը վազէին։

Այս ամէնէն՝ Յակոբայ սրտին մէջ աճեցաւ այն կասկածը, զոր Սահակ Ահագին սերմանած էր։ Այս Սահակ լսելով Սարգսի համբաւոյն մեծնալը, 1755ին Պոլիս եկաւ, ինչպէս որ ի Զմիւռնիա ապաստանած էր Սարգսի, որ եթէ Պոլիս երթայ եւ այնտեղ քարոզէ, պիտի գայ եւ զինք պիտի հալածէ։ Սահակ Յակոբայ քով իջեւանեցաւ, եւ սկսաւ Սարգսի դէմ գործել՝ բայց ապարդիւն եղանակաւ. վասն զի Յակոբ չէր ուզեր հրապարակաւ խռովութիւն յարուցանել։ Սահակ այն ատեն սկսաւ Սարգսի քծնիլ։

Սարգիս այսպէս քանի մը տարի շարունակեց իր քարոզութիւնները, շատերէն համակրութիւն եւ յարգանք գտաւ, եւ իր կողմնակիցներն օր քան զօր այնչափ աճեցան, որ հակառակ կողման վրայ զօրացան։ Յակոբ ատոր առջեւն անդլու համար՝ խորհեցաւ վերջապէս աքսորել զՍարգիս, թէպէտ կը վախնար իշխաններէն։ Ուստի Սարգիսը ատէպ կ'անուանէր թեմի

մ'առաջնորդ. Սարգիս կը հրամայէր, որով Յա-կոբ իւր զայրոյթն դուրս թափեց, եւ բառ. մէկուն մէկալին որ Սարգիս աղմկայոյզ մէկն է, ի հաւատս «ծայթ» (հռոմէական) է, «պառա-կեր» է, Պատրիարքական աթոռոյ հետամուտ։

Սարգիս տեսնելով այս փորձութիւն՝ յանձն առաւ վերջապէս Ռոդոսթոյի առաջնորդու-թիւնը։ Յակոբ շատ ուրախացաւ ասոր, եւ բառ. թէ իրմէ չի պահանջեր իրեն ընտրած այս աթո-ռոյ տարեկան սակը, որ էր 250 մարչիլ ոսկէ-կայ։ Այս պայմանաւ Սարգիս գնաց Ռոդոսթոյ եւ մեծ ուրախութեամբ ընդունուեցաւ հոնէն։ Սակայն Յակոբ խոստման հակառակ տարեկան սակը պահանջեց, որուն զայրանալով Սարգիս խիստ ծանր եւ նախատական նամակ մը գրեց Յակոբայ, եւ նամակը նաւաստւոյ մը տուաւ որ Պոլիս տանի։ Սակայն յետոյ զղջալով՝ ուզեց ետ առնուլ նամակը, մինչ նաւն արդէն ճամբայ ելած էր։

Յակոբ նամակն առնելով ուրախացաւ՝ պատրաստ առիթը գտած ըլլալուն։ Իշխանները ժողովքի կանչեց, անոնց կարդաց նամակը, ող-բաց ու լացաւ, եւ պահանջեց որ իշխանք դա-տեն ազգին եւ պետութեան պատուին այսպէս անարգանք ընողը։ Սակայն իշխանաց մէկ մասը զՍարգիս արդարացուց. այս իշխաններն էին՝ Աբրահամ Քուլէլեան, Սիմէոն Աստուրեան, Մարտիրոս Զօպանեան, Գասպար եւ Պաղտասար Մուրատեան, եւ այլ իշխանք։ Յակոբ տեսնելով ասիկայ, իւր ոխերը սաստկացուց, որով ժող-

մին մեծամասնութիւնն սրբոց՝ որ Սարգիս շա-տով՝ պարտուի, մանաւանդ անոնք՝ որ հակառակ էին Քաղկեդոնականաց, եւ կը պոռային թէ թող հեռանայ Սարգիս, գլուխն երկաբնակաց: Մա-թէոս՝ վերակացու Սուսափոց, կ'աղաղակէր որ Սարգիս մեղապարտ է եւ արժանի մահու: Խո-րագէտն Յակոբ դասը շահեցաւ. Ինքըն ծա-նարոտակ (Ն—ղէէ) մը գրեց եւ յանձնեց Պաղար եւ Պետրոս երկու ընկերներու, որոնք եպար-քոսին վաճառականն էին, որպէս զի անձամբ եպարքոսին ձեռքը յանձնեն, երբ զինք առան-ձին գտնեն: Այս ծանարօտակին մէջ Յակոբ ընդդէմ Սարգսի շատ զրպարտութիւններ գրած էր, եւ ի դիմաց ազգին կը խնդրէր, որ Սարգիս պատուի եւ Կիպրոս Մաւրոյ ամրոցը քանդար-կուի, որուն սըր մաշարեր էր: Պաղար եւ Պե-տրոս Պատրիարքին թուղթը գիշեր մը յանձնե-ցին եպարքոսին, որ կարդալով իմացաւ Յակո-բայ խէթն ընդդէմ Սարգսի, եւ ըսաւ երկու-քին՝ «Կ'երեւայ թէ ձեր Պատրիարքը կը նա-խանձի Սարգսին, որ այնչափ սիրուած է ազգէն. կարելի չէ բացակայ մէկն առանց լսելու դատա-պարտել. ուստի եթէ ի դատաստանի յանցաւոր ելլէ, ոչ թէ աքսորանաց, այլ կախաղանի ար-ժանի է»: Միջնորդներն եպարքոսին քաղանցքը հաճութեամբ՝ պաղատեցան որ հաճի ստորա-գրել, եւ Պետրոս ըսաւ եպարքոսին, որ այս գործով մեծ վարձքեր պիտի ընդունիս: Այսր վրայ եպարքոսն Բաղիկ փաշա՝ ըսելով թէ «Սարգսի արիւնը ձեր գլուխն ըլլայ», ստորա-

գրեց դատակնիքը եւ զզուանօք ըսաւ. «Թող աքսորուի Սարգիս ուր անդ որ Յակոբ կ՚ուզէ»։

Յաջորդ տարու ձիաւոր չ-----շ մը այս Հրովարտակը Ռուստաւելոյ տարաւ, ուր հանելով լսեց թէ Սարգիս մեկնած է անկէ. ինչպէս անցեկացուց արքունի Դրան, եւ ծանուց թէ նոր Հրամանի կը սպասէ։ Վասն զի Սարգիս իր նախատական թուղթը զրկելէն ետեւ՝ փութաց ի Կ. Պոլիս, նոյնին ազդեցութիւնը մեղմելու նպատակաւ, եւ նաւով հասաւ ի Կ. Պոլիս այն իրիկուն՝ երբ իր վճիռն պալատէն ճամբայ ելած էր։ Սարգիս անտեղեակ անցածին՝ իջեւանեցաւ Էջմիածնի նուիրակ Սիմէոն Վարդապետին քով, որ յետոյ Էջմիածնի կաթողիկոս եղաւ (1763—1780)։ Սիմէոն այն միջոցին Սամաթիոյ Ս. Գէորգ եկեղեցւոյն մէջ Էջմիածնի համար նուէր կը հաւաքէր, եւ անգիտակ էր բոլորովին Սարգսի գործին։ Ուրախութեամբ հիւրընկալեց զՍարգիս նոյն գիշերը, մինչդեռ լրտես մը փութաց Յակոբին իմացուց։ Յակոբ նոյն գիշերը կաշառելով չ-----շ դ--ջն՝ Հրովարտակին օրինակն առաւ, եւ յաջորդ օրը կանուխ Դ-ռնէն ուրիշ չ-----չ մը Հրամայուեցաւ, որ Սարգիսն՝ ուր որ գտնէ ձերբակալէ, եւ տանի հոն, ուր առաջին չ-----շը կը գտնուի։ Այս նոր չ-----շն Հրովարտակն առած մինչդեռ նաւակով Սամաթիա կ՚երթար, Սարգիս նաւակով Պոլիս կու գար, երբ Պէյ-Հ---ր ք-ք------ի մօտ իրարու մօտեցան, լրտեսը չաւուշին իմացուց, թէ «այս է Սարգիսը, բռնեցէք»։ Չ-----ն ինչպէս զՍարգիս իր նաւն առաւ,

ըսելով թէ «Մեծ ոսկի մ'ունիս, շատ անձայն իմ նաւս անցիր»: Ընկէ Սամաթիա իր տունը տարաւ, ուր ձի պատրաստելու զբաղեցաւ՝ Հրամանին համեմատ զՍարգիս առջի շաւուշին տանելու: Ճամբան ճանչուորներէ Սարգիսը տեսնելով կը զարհուրին, եւ անմիջապէս ամէն կողմ լուրը կը տարածուի, զոր Նուպիտակ Սիմէոն Վ. ալ լսելով՝ շատ ցաւեցաւ, չհամարձակեցաւ անձամբ Սարգսին երթալ, իր քահանային ձեռքը հարիւր լիրա ղրկեց՝ գիտնալով որ դրամ չունի: Նաեւ Մուրատեան Գասպար անունով մէկը ղրկեց Սարգսին՝ գաղտ ըսել տալու որ չ———ը գոհ ընէ եւ մինչեւ յաջորդ օրը չմեկնի: Վասն զի բոլոր բարեկամները յուզուած՝ միասին սկսան աշխատիլ զինք ազատել եւ կապանքէ ազատելու: Ըն ատեն Սարգիս ծանուկ չ———ին երակը փորձեց, եւ տեսաւ որ չ———ը Պատրիարքին ոսկիներովը յագած է: Աւաղ կարելի չեղաւ զինք կաշառել, մանաւանդ որ նոր հրաման եկած էր իսկոյն ճամբայ ելլելու: Յակոբ անոր համար կը փութացընէր, որ Սարգիս շուտով թէ եպարքոսին առջեւ ելլէ եւ իրեն ոսկի կանգնի: Վերջապէս զՍարգիս ձի նստուցին, ոտքը շղթայ կապեցին, եւ կապը ձիուն փորին տակէն անցուցին: Եւ այսպէս Սարգիս իրբեւ ոճրագործ Ռոտոսթոյ բերուեցաւ եւ յանձնուեցաւ միւս չ———ին, յորում եւ ի լալիսն իւր հարին:

# 8.

*Սարգիս Ռոտոսթոյի մէջ կը բանտարկուի. Զմիւռնիա կը տարուի, անկէ Քիոս, ուր կը թողուի տարի մը: Ազատութեան հրովարտակը կ'ելլէ. Սարգիս Եւդոկիոյ Առաջնորդ կ'անուանուի: Սարգիս Պոլիս կ'երթայ կը հաստատուի: Սարգիս Վ. Թէքիրտաղցի, Սահակեանց, Աճիցեանի կաթողիկեայք եւ իրենց կենսագրութիւնը: Սարգիս Եպ. Խաչլամեան, Մանիփանոս Արքեպ. Գոմիտի, կաթողիկեայք:*

Զ-----ն զՍարգիս բանտարկելով, առանձին նաւ մը պատրաստել տուաւ: Սարգիս թէպէտ շատ վշտացած էր այս անիրաւ նեղութեանց համար, սակայն ներելով իր թշնամիներուն, ինք զինք ուրախ կը բռնէր: Զ-----ը փութաց զՍարգիս նաւ դնել: Սարգսի սիրով ընկերացաւ նաեւ իր ձեռնասուն աշակերտը Պետրոս քահանայն: Հասան ի Պօղազ Հիսար. ուր Ը-----ին զՍարգիս բանտ դնելով՝ սպասեց որ նաւ մը գայ զիրենք Կիպրոս տանելու: Հոն Հայերն իրենց երեցուն հետ այց ելան իրեն եւ մխիթարեցին զինքը: Զ-----ը տեսնելով որ Կիպրոս երթալու նաւ չի գտնուիր, Զմիւռնիա գացող նաւ մը գտաւ եւ հոն փոխադրեց զՍարգիս, յուսալով որ անկէ կրնայ դիւրաւ Կիպրոս անցնիլ: Զմիւռնիա նորէն բանտարկուեցաւ Սարգիս, ուր իրեն այցելեցին տեղւոյն ազգայինք եւ զինք մխիթարեցին: Այն ատեն տեղւոյն Առաջնորդն էր Աբրահամ Վ. Աստապատցի, որ թէպէտ Քաղկեդոնականաց հակառակ էր, բայց Սարգսին բարեկամն էր եւ կը ցաւակցէր իրեն: Հոն էր նաեւ ուղղափառ Հ. Մկրտիչ Վ., աշակերտ Մխիթարայ Աբբահօր, ճարպիկ եւ ժիր անձ մը, որ հնարք կը

մտածէր զՍարգիս ազատելու։ Անոնք յաջողե-ցան Չ-----ը կաշառելով՝ գէթ բանտ մտնել եւ Սարգսի հետ տեսնուիլ։ Այսպէս ամիս մը մնա-ցին հոն՝ տեսնելով որ Կիպրոս գացող նաւ-չկայ, նաւեցին Քիոս (Ս—ֆէշ ————ը), ուր դար-ձեալ բանտարկուեցան, եւ նոյն տեղ Հայ չգըտ-նուելուն՝ բոլորովին լքեալ վիճակի մէջ մնացին։ Շատ օրեր ետքը Կիպրոս գացող նաւ մը գտան՝ սակարկեցին, դրամը տուին՝ յաջորդ առտու նաւելու համար։ Սակայն նաւը գիշերը մեկնած գացած էր, եւ իրենք դարձեալ մնացին։

Այս միջոցին Կ. Պոլիս Սարգսի բարեկամ Ամիրաները կ'աշխատէին զինքն ազատելու։ Անոնք Յակոբ Պատրիարքին գացին զինք հանելու՝ որ արձակել տայ զՍարգիս. սակայն հետ գացած էին նաեւ Սարգսի ծերունի մայրն եւ երկու անմու-նացեալ քոյրերը, որոնք Յակոբի ոտքն իյնալով՝ լացին եւ Սարգսի ազատութիւնը խնդրեցին։ Այն օրերն Սարգսի Չ-----չէն նամակ եկած էր Բար-ձրագոյն Դուռը, որուն մէջ Չ-----չ կը պատմէր անցածը եւ կ'իմացընէր որ Կիպրոս երթալու նաւ-չգտնելուն՝ նոր հրամանի կը սպասէ։ Սարգիս ալ իրեններուն նամակ գրեց, պատմելով նեղու-թիւնները, կապանքն ու ծախքերը. նոյնպէս Յա-կոբին ալ գրեց իր սրտին ցաւերն ու զրկանք-ները, եւ յիշեցուց անոր ահեղ դատաստանին օրը։ Այն ատեն Յակոբ կակղեցաւ, եպարքոսին ծանուցանակ մը գրեց եւ խնդրեց որ Սարգիս Քիոս կղզւոյն վրայ ազատ ձգուի ու հոն կեանքն անցընէ։ Նոյն Ղազար եւ Պետրոս տարին յան-

ձնեցին եպարքոսին, որ եւ հրաման ըրաւ, թէ Սարգիս-Քիոս կղզւոյն վրայ աքսոր թողուի. բայց անկէ դուրս չելլէ։ Յակոբ այն հրովարտակը Սարգսին ղրկեց, հետն հարիւր ալ ոսկի, եւ սփոփական նամակ մ'ալ գրեց որ քիչ ատենէն բոլորովին կ'ազատի. նոյնպէս Սարգսին բարեկամներն իրենն նամակներ գրեցին եւ զինք մխիթարեցին։

Նոյն միջոցին նոր հրովարտակը չ———յին հասած ըլլալով, աքսոր թողուց զՍարգիս, եւ ինք Պոլիս դարձաւ հետը բերելով Սարգսի նամակները, զորոնք բացնեց։ Սարգիս սկսաւ այնտեղ Յոյներու հետ կենակցիլ, բարեկամանալ եւ հանգիստ գտաւ։ Սակայն Յակոբ հակառակ խոստմանը՝ չէր աշխատեր բոլորովին ազատելու • հրովարտակն հանել տալու, Սարգսի գրած նամակներն ալ անպատասխանի կը մնային։ Վասն զի Սարգսի նամակները, զոր յոյն նաւաստիներու ձեռօք Պոլիս կը ղրկէր, Յակոբայ լրտեսները կ'առնուին. առնք կ'երթային եւ նաւաստիներուն լալով կ'ըսէին, թէ արդեօք Քիոսէն իրենց աքսորեալ վարդապետ ազգականէն հայագիր նամակ ունին. նաւաստիներն ալ միամտութեամբ կը յանձնէին, լրտեսներն ալ առանց բանալու Յակոբայ կը տանէին, ան ալ կը ջնջէր։ Սարգիս խնամալով եղածն՝ իշխանաց ուղղած նամակները յանձնեց նաւաստիի մը՝ այն նաւաստին եղբօրը հասցէն վրան գրելով, որ եւ նամակները իրենց հասցէին հասուց։ Իշխանք առոր վրայ եւս առաւել խռովելով՝ Յակոբայ գացին եւ սաստե-

ցին զինք շուտով ազատելու զՍարգիս։ Եւ նոյն իսկ Ղազարն ու Պետրոս զղջալով նեղացան Յակոբայ, եւ միւս իշխանաց հետ միանալով՝ ժողով կազմեցին, եւ Յակոբայ ըսին վերջին անգամ, որ այլ եւս առանց պատճառանաց իսկոյն Սարգսի ազատութեան թուղթը գրէ։ Յակոբ ստիպուեցաւ գրել, եւ Ղազար ու Պետրոս նոյնը եպարքոսին ներկայացուցին, եւ իսկոյն հրաման ելաւ բոլորովին ազատ արձակելու Սարգիսը. բաց աւել՝ Յակոբ նաեւ զՍարգիս Եւդոկիոյ Առաջնորդ անուանեց եւ հաստատութեան հրովարտակն եպարքոսէն հանել տուաւ, որպէս զի Պոլիս չգայ։ Յակոբ այս հրովարտակները Սարգսին ղրկեց եւ հրամայեց որ ուղղակի Եւդոկիա երթայ յառաջնորդութիւն։ Սարգիս այս նամակներն, ինչպէս նաեւ իշխանաց գրութիւններն առնլով ուրախացաւ, գոհացաւ զԱստուծոյ, ներկայացաւ անդուռն իրաւարարին եւ ազատութեան հրովարտակը ներկայացուց։ Բոլոր ծանօթներն եկան զինք շնորհաւորելու։

Որովհետեւ ազատման հրովարտակին մէջ Եւդոկիոյ յիշատակութիւն չկար, Սարգիս չգնաց Եւդոկիա, այլ ուղղակի ի Կ. Պոլիս, եւ իջաւ մօրը տունը, յուրախութիւն ընտանեաց եւ ի խնդութիւն բարեկամաց։ Տարի մ՚ամբողջ աքսորանաց մէջ կրած տառապանքներն առողջութիւնը խանգարած էին, եւ անոր համար բաւական ատեն տնէն դուրս չելաւ։ Ամէնքն իրեն այցելութեան կու գային։ Պատրիարքն ալ իր փոխանորդը ղրկեց։

Սարգիս Արքեպ.ի Թէքիրտաղի Առաջնոր-դութենէն առնալ՝ ոմանք զինք Թէքիրտաղցի կ՚ա-նուանեն։ Սակայն, ինչպէս ասուած եմ, կայ ուրիշ կաթողիկեայ Սարգիս Վ. Թէքիրտաղցի մը, որուն հետ մեր Սարգիսը կը շփոթուի։ Ա-հա՛ ինչպէս։ Փափազեանց Խզն. Արքեպ. իր Եկեղեցական պատմութեան մէջ (Վիեննա. 1848) կը գրէ հետեւեալը (էջ 936—7). Կաթողիկոսն "Ղուկաս ի գաւառէն Կարնոյ եղեւ յաջորդ Սի-մէոնի յամի տեառն 1780 եւ կալաւ զաթոռն զամս քսան։ Իբր սա յաշակերտութենէ Յարու-թիւն արքեպիսկոպոսի Բասենցւոյ, եւ զի հմուտ էր ուղղափառ ճշմարտութեան՝ ուսեալ ի վար-դապետէ իւրմէ, աշակերտակից նորին Սարգիս Վարդապետ Թէքիրտաղցի գնաց առ նա ի գտա-նել հնարս միաբանութեան ազգին Հայոց ընդ եկեղեցւոյն Հռովմայ. բայց ի հակառակութենէ միաբանից ուխտին Էջմիածնի չկարաց ի լրումն ածել զիղձս սրտին, այլ մատնեցաւ ի ձեռս նոցա, եւ խոշտանգեալ պէսպէս չարչարանօք եւ պատուհանօք զամս իբր հինգ, ապա ձեռնտուու-թեամբ Հերակլի արքային Վրաց գաղտագնաց փախստեամբ զերծաւ ի Տփխիս եւ անտի յԵւ-րոպա։ Առ նովին ժամանակաւ զնոյն անցս չար-չարանաց եւ մահուան կրեաց եւ Տէր Սահակ երէց ախալցխացի, որպէս գրէ նա ինքն Սարգիս վարդապետ Թէքիրտաղցի"։ Այս կտորը լաւ չհասկընալով Մ. Վ. Մուրատեան (Պատմ. Հայաստ. Եկեղ. Երուս. 1872 էջ 592), նոյնը կը կրկնէ, իսկ թէ Ղուկաս կաթողիկոսն ըլլայ

խաչատանց ուողն եւ Նորայա մախոչողը։ Գաբրիէլ յաճախեայ Պատկանեան թէոդէա իրաւամբ կ'ուզէ Սոփրանեանի ախոյը Ղուկաս Կաթողիկոսի մասին. սակայն ինքն ալ այս Սարգիս Վ. Թէքէիրտաղցին կը շփոթէ մեր Շնորհալի Սարգիս Սրբեց. Սարաֆեանի հետ (« Արարատ. 1875, էջ 174)։ Սակայն որովհետեւ 1773ին վախճանեալ մեր Սարգիս Սարաֆեանը 1780ին կաթողիկոսացող Ղուկասին հետ գործ չէր կրնար ունենալ, պէտք ենք մնալ մերժելով Սարգիս Վ. Թէքէիրտաղցին, Ղուկասու (1780—1799) ժամանակակիցը, որուն գրուածքը կորգացեր է փարագեան։

Հոս ալ մեզի օգնութեան կը հասնի Ընտանեան Միաբանութեան Դիւանը, ուր կը պահուին Սարգիս Վ. Թէքէիրտաղցւոյ նամակները, ինքնակենսագրութիւնը, նամակներու օրինակներ եւ անոր մասին անդրկութիւններ, որոնք կը համաձայնին փարատեանի աւանդածներուն։ Ըստ համեմատ Սարգիս, որդի Պաղտասարեան Սանփանի, ծնած է ի Թէքէիրտաղ 22 Յունիս 1751ին եւ 23ին մկրտեալ եւ գրոշմեալ Ս. Յովհ. Ըստտարանիչ Եկեղեցին Հայոց (վկայական մկրտութեան Տէր Կարապետ Կլայեկեան Թէքէիրտաղցի քահանայի, որ երբեմն Ըստգերեց նոյն եկեղեցւոյն, գրեալ 23 Ապր. 1779 եւ կնքեալ)։ 1771 Նոյ. 5ին սարկաւագ ձեռնադրուած է Հրամանաւ Թէքէիրտաղի Առաջնորդ Յակոբ Վ.ին (վկայական նոյնին, գրեալ 9 Յունիս 1772 եւ կնքեալ, որուն ընթերցուածը՝ «Քի ծո

Յակոբ Վրդպտ. Առաջնորդ Թէքիրտաղայ (ՌՄԷ. = 1758), որ կ'ըսէ թէ ծնողքը քահանայ ձեռնադրուելու հակառակելուն՝ հրաման կու տայ իրեն Թէքիրտաղէն մեկնելու՝ ուր որ կ'ուզէ։ Գր. Պատրիարք Պասմաճեան տուած է վկայականը, որ կը պահուի Ընտանեան Հայոց Դիւանը. բնագրին վերեւը Գր. Պատրիարքի կնիքը կայ, որուն քիչ ետքը նմանահանութիւնը պիտի դնեմ։ Իսկ բնագիրն հետեւեալն է.

Ի Տէր Գրիգոր վարդապետէ եւ Պատրիարքէ Կ. Պոլսոյ, յայտ լիցի ընթերցողաց գրոյս, որ վկայութեամբ Թէքիրտաղու առաջնորդ Յակոբ վարդապետին՝ նոյն աշակերտի իւրոյ Թէքիրտաղցի պաղտասարենց տիրացու Սարգսին, հրաման տուաք Յովհաննիսեայ արքեպ. ին՝ տալ զսուրբ աստիճանն Աւագսարկաւագութեան, որ եւ ի սուրբ Գէորգայ եկեղեցին Սամաթիոյ՝ յաւուր հրեշտակապետացն ընծայեցոյց զվերոգրեալ տիրացու Սարգիսն յաստիճան Աւագսարկաւագութեան՝ ուխտի կուսակրօնութեան. յամի փրկութեան մերոյ 1771 եւ բստ հայոց ռմի. ին ի հինգն նոյեմբերի զոր Տէր Աստուած անխախտ... պահեսցէ....։ Եւ զայս վկայական գիրս ետու՝ ի ձեռս նոյն տիրացու Սարգսին....։ Գրեցաւ ի Կ. Պոլիս, ի Պատրիարքարանս Հայոց. ի թուին Հայոց ռմի, ի նոյեմբերի ե. ին։

Սարգիս կու գայ Պոլիս 1772ին եւ Պալաթու եկեղեցին Յարութիւն Արքեպ. Քասենցւոյն կ'աշակերտի, անոր սարկաւագը կ'ըլլայ, եւ իրմէ կը սորվի կաթողիկէութիւնը, որուն արդէն Թէքիրտաղ հետամուտ էր։ Քասենցւոյ գիտակցութեամբը տարի մը Պալաթէն «Պէկօղլու, կ'երթեւեկէ Սարգիս հայ կաթողիկեայց փոխ-

վիքար Ընտոն Վ. Մըսըրլեանի քով, որպէս զի վերջինս զինք Հռոմ ղրկէ (Նամակ 20 փետր. 1779 ի Պէկօղլուէ առ Պօղոս Եպ. Լեւոնեան Զէռնապըրիչ ի Հռոմ)։ 1773ին Հռոմ կ՚երթայ Սարգիս եւ 24 Մայ. 1774ին Հաւատաքննութեան ժողովոյն առջեւ հաւատոյ դաւանութիւն տալով՝ Փրօփականտայի Դպրատունը կը մտնէ։ Չորս տարի ետքը՝ Հռոմայ Հայոց Ս. Մարիամ Եգիպտացի եկեղեցւոյ խոստովանահայր Ընտոն Վ. Արութիւնեանէն 5 Մայիս 1777 թուականնաւ ուղղափառութեանը վկայագիրն առած՝ հիւանդութեան պատճառաւ՝ բժիշկին եւ առաջնորդացն հրամանով կ՚երթայ Լիվոռնօ-Չիւռնիա-Թէքիրտաղ։ Հոն ազգականներէն եւ ազգակիցներէն հաւատքին պատճառաւ հալածուելով՝ Պոլիս կու գայ 1778 ձմեռը, ուր գաղտնագի Տիմոթէոս Վ. Սիմոնեան զինք կը խնամէ եւ Սէն Լուի Քափուչին կրօնաւորաց քով կը տեղաւորէ ամսական 10 ղրուշով։ Ասկէ տեղեկութիւններ գրած է Սարգիս ի Հռոմ՝ ժամանակին դէպքերուն վրայ, զորոնք ուրիշ տեղ կը յիշատակեմ։ Ինքն ալ շատ նեղութիւններ կրեց, որոնց պատճառներէն մէկն ալ կը յիշէ Թէքիրտաղի Առաջնորդը Յակոբ Եւդոկիացի, աշակերտ Յակոբ Նալեան Պատրիարքի, որ 1778ին Պոլիս փոխադրուած եւ 1779 փետր.ին Պատրիարքին վէքիլը եղած էր։ Այս Յակոբ 1919ին ի Կ. Պոլիս մեռաւ 121 տարեկան։

Երբ Յարութիւն Արքեպ. Բասենցի 1781ին վերջը Պոլսէն փախաւ եւ 1782ին Թրիեստ հաս-

տառուեցաւ՝ իր աշակերտը Սարգիսն հօն կանչեց եւ զինք վարդապետ ձեռնադրեց։ Սարգիս Վ. անկէ Բասուս անցնելով՝ երկու տարիէն Աստուածաբանութեան ուսումն աւարտեց, եւ միտքը դրաւ Հայաստան երթալ ուղղափառ հաւատքը քարոզելու, մանաւանդ որ գիտէր թէ Էջմիածնի Դուկաս կաթողիկոս աշակերտն է Յարութիւն Բասենցի Արքեպ.ին, եւ վերջինս զինք կը գովէր միշտ՝ իբրեւ բարեբարոյ եւ ուղղափառութեան մէտ։ Մինչ կողմանէ լաւն էր, թէ Դուկաս Էջմիածին ժողովք գումարած է Վրաց հետ ի հաւատս միանալու դիտաւորութեամբ։ Սարգիս ծածուկ պահելով այս խորհուրդը՝ եւ Յարութիւն Բասենցիէն Դուկաս Կաթողիկոսին ուղղուած յանձնարարական մ'առած՝ Պոլիս գնաց եւ Մոնս. Պիրաքիա Նուիրակին յայտնեց։ Անկէ հրահանգներ եւ յանձնարարականներ առաւ, Նուգոկիա-Կարին մեկնեցաւ աշխարհական տարազով։ Կարին կաթողիկեայ Հայոց առաջնորդը՝ Սուքիասեանց Յովհ. Վ. եւ մեծամեծներ զինքն զգուշացուցին, սակայն անիկայ Բասեն անցաւ, այնտեղ քիչ մ'ատեն մնաց Յարութիւն Բասենցւոյ ազգականներուն քով, եւ վերջապէս Հայհոռոմի զգեստով մտաւ Էջմիածին, իբրեւ հնաւէր ուղեւոր մը։ Լաւ յանձնարարականներ ունենալուն, մանաւանդ Բասենցւոյնը, Կաթողիկոսը զինք սիրով ընդունեցաւ։ Սարգիս յաջորդ օրն առանձին գաղտնի ունկնդրութիւն ուզեց Կաթողիկոսէն եւ փակուեցաւ Կաթողիկոսին հետ, դուռը կղպած։ Նպատակը պարզեց, եւ յորդորեց որ

կաթուղիկեայ հաւատքն ընդունի եւ տարածէ։ Կաթուղիկոսն ընդդիմացաւ. այս գաղափարն անգործադրելի համարեց, եւ բարեկամաբար խորհուրդ տուաւ, որչափ կարելի է շուտ մեկնիլ երթալ։ Նոյն միջոցին միաբաններ գուրան ականջ կը դնէին խոստովանքին. եւ երբ Սարգիս դուրս ելաւ՝ տանք ներս մնան եւ պահանջեցին, որ Կաթուղիկոսը իրենց յայտնէ խոստովանութիւնը, ապա թէ ոչ զինք գահընկէց կ՚ընեն. վասն զի Ղուկաս՝ Բասենցւոյն աշակերտն եւ տէր Եւդոկիոյ Նուիրակութեան ժամանակ եօթը տարի քովը մնացած ըլլալուն, կը կասկածէին անոր հաւատքին վրայ, եւ այս պատճառաւ Կաթուղիկոս ընտրուելուն առաջին տարիները զինք չէին ուզեր ճանչնալ։ Եւ երբ իմացան նիւթը, մեծերնէն ոմանք Սարգսին հրամայեցին որ շուտով մեկնի, ապա թէ ոչ՝ մինչեւ իսկ մահը կը գտնէ։ Սարգիս անոնց հետ ալ հաւատոյ վրայ խօսեցաւ։ Յաջորդ օրը Կաթուղիկոսը ժողովք կազմեց, եւ Սարգիս բանտի դատապարտուեցաւ. երկու օր ետքը Եպիսկոպոսաց առջեւ հանեցին, որոնց մէջ էր Մինաս Եպ. ուսագ վարդապետաց, Մկրրտիչ Եպ. ղազնատար եւ Դանիէլ Եպ. դարպասծի՝ որ 1792ին Նուիրակ-առաջնորդ եղաւ Կարնոյ. տանք զինքը ծեծեցին, անարգանք ըրին եւ արհամարհանաց բանտարկեցին։ Յետոյ խոստումներ ըրին՝ եթէ կաթուղիկէութիւնը թողու. եւ երբ ընդդիմացաւ, երկաթ կապեցին ոտքն ու ձեռքը եւ ուրիշ մութ բանտ նետեցին, ուր 20 օր մնալով, յաջողեցաւ ձեռքերն ու ոտքերն ազա-

տել եւ գիշերային բանտէն փախչիլ։ Հեռու դաշտի մը մէջ քիւրտ հովիւներու յարեցաւ, որոնք իրեն զգեստները կողոպտեցին։ Ցետոյ կաթուղիկոսին կարմանէ երկու ձիաւոր հասան զինք բռնեցին, շարչարելով Էջմիածին բերին. կաթողիկոսը հաւատոյ դաւանութիւն պահանջեց, որպէս զի արձակէ. Սարգիս առանց իր դաւանութեանը փնտռելու՝ տուաւ գրաւոր դաւանութիւն մը որ ընդունելի չեղաւ։ Գրուածքն այրեցին եւ զինք չղթայակապ բանտարկեցին, ուր մնաց ամբողջ ձմեռը, մինչեւ հիւանդացաւ։ Ընդթանէրն արձակեցին, առանձին խուց եւ դիւրութիւններ տուին, որով Սարգիս այգին անդին նամակներ ղրկեց։ Այս Էջմիածին գրուած նամակներէն երկուքը (21 Յունիս հ. տ. 1788 եւ 15 Յուլիս հ. տ. 1790) գրուած են ի Համ առ Ձեռնադրիչ Արքեպ. Սահի. Աւթանտիլեան, որ ժամանակաւ նոյն նեղութիւնները կրած էր յԷջմիածին։ Այս նամակներով Սարգիս Փրոփականտայէն եւ Ս. Քահանայապետէն կը խնդրէ, որ հանին զինք ազատել։ Էջմիածնի եպիսկոպոսներն իմացան եւ զինք Սեւանայ վանքն աքսորեցին, ուր վերջին աստիճանի տառապանքներ կրեց վանականներէն։ Այսպէս մնաց երեք տարի եւ երեք ամիս։ Նոյն միջոցին նամակներն իրենց տեղն հասնելով՝ Նորեւանի խանէն եւ ազդեցիկ իշխանութիւններէն թուղթ եկաւ կաթուղիկոսին որ Սարգիսն արձակէ։ Կաթուղիկոսը զինք Էջմիածին բերել տուաւ, ուր քանի մ'ամիս թեթեւ բանտարկուեցաւ, եւ վերջապէս Հերակլ թագաւո-

րին որդւոյն՝ Թիֆլիսի կոյկի խանին կողմանէ երկու Հոգի եկան, Սեւանէն դառնալէն տարի մը ետքը, եւ անոնց հետ Թիֆլիս փախաւ. 20 օր Քարուշխններու քով մնաց եւ անկէ Մոլտավիոյ ճամբով Պոլիս անցաւ։ 1796 Մայիս 13ին (Հ. տ.) կը գրէ Կ. Պոլսէն, թէ էջմիածնէն Պոլիս հասեր է տարւոյ մը մէջ մեծ նեղութեամբ։ Ի Կ. Պոլիս շատ տարիներ կաթողիկեայց քով ապրեցաւ իբրեւ միսիոնար։ 1802 Մայիս 6 թուականաւ Կ. Պոլսոյ Աւստրիական տեսպանը B. de Testa ձեռագիր վկայագիր մը տուած է՝ թէ Սիստովի խաղաղութեան 12դ յօդուածին համեմատ՝ Սարգիս Վ. Պաղտասարեան Թէքիրտաղցի աւստրիական պաշտպանեալներու ցանկը գրուած է։ 2 Յունուար 1804ին Կ. Պոլսոյ Մոնս. Փոնզոն նուիրակը խոստովանանք լսելու իրաւունք տուած է իրեն, ինչպէս նաեւ Երուսաղէմ երթալու համար 4 Հոկտ. 1805 թուականի յանձնարարական մը։ 1822ին Ղալաթիա "ի վանս Ճէզվիթաց" կը բնակէր, մինչեւ որ 1828ին ուրիշ կաթողիկէից հետ Պոլսէն աքսորուեցաւ, Հռոմ հասաւ. Սեպտ. ի մէջ, որ Պրոպականտան զինք սիրով ընդունեցաւ, եւ իր շէնքին մէջ առանձին բնակարան տուաւ "Ընդ հովանեաւ երից սրբոց մոգուց", ուրկէ է 1833ին գրած մէկնամակը, որ նաեւ վախճանեցաւ 1834ին, 83 տարեկան, որուն 1882 Ապրիլին Ս. Քահանայապետէն անօրինակ տրուած էր Պատարագի մէջ ընթեռնոյ չփոյթացածներուն զանց առնելու, աչքի ակարութեանը պատճառաւ։

Վիեննայի Մխիթարեանց Կ. Պոլսոյ վանառան մատենադարանի «Գիրք օրինակաց» (տպ. 1750) մատենին սկիզբը կայ տպագրեալ՝ «Սարգիս Վրդ. Պաղտասարեան Թէօքիւրճեանցն», որ անտարակոյս նոյն անձն է։

Սարգիս Վ. Թէքիրտաղցւոյ փիճակակից եղաւ նաեւ Սահակ քահանայ, ծնած Ախալցխա 28 Յունիս 1753, որդի Խաչատուր քահանայի։ Աւրիկոյ այնչափ նշանաւոր էր հմտութեամբն ու քարոզութեամբը, որ Ղուկաս կաթուղիկոս զինքը Ախալցխայի նուիրակ անուանած էր, որ անլուր բան էր ամուսնացեալ քահանայի համար, եւ իրեն համար կ'ըսէին՝ թէ եւ ոչ իսկ Թիֆլիսի առաջնորդն —— Մարտիրոս Եպ. կրնար անոր հետ վիճաբանիլ։ Այս Մարտիրոս Եպ. 1769ին Սիմէոն կաթողիկոսին կողմանէ Ախալցխայի նուիրակ ղրկուած էր յատուկ Գէրմանոյ Բարձրագոյն Դրան, որպէս զի այնտեղ կաթողիկէներն հալածէ։ Մարտիրոս նկաւ տրուացաւ երեք եկեղեցիներուն երեք տարի, Քաղուչին կրօնաւորները բերդ մ'աքսորել տալու, իսկ չորս հայազգի եկեղեցականները՝ այն է Պօղոս Վ. Լեւոնեան, Արքեպ. Ախալցխայի, Տէր Յովհ. Ճիկոնեան (Gigonanti), երկուքն ալ Հռոմայ Պրոպագանդայ աշակերտ, Սահի. Վ. Աւթանտիլեան, փոխանորդ Լեւոնեանի, եւ Տէր Յակոբ, կապանօք Էջմիածին ղրկեց, ուր երեք տարի բանտ եւ խոշտանգանք կրելէն ետեւ ազատեցան չորսն ալ, Լեւոնեան եւ Աւթանտիլեան Հռոմ գացին, ուր Լեւոնեան ձեռնադրիչ

կարգուեցաւ, եւ սորա մահուընէն ետեւ Աթանասեան յաջորդեց՝ Արքեպ. Թիֆլիսի ձեռնադրուելով։ Արդ Սահակ այս Մարտիրոս Վ.ին աշակերտելով՝ անոր հոգին ստացաւ եւ կաթոլիկեայց ախերիմն էր։ Երեք տարիէն Մարտիրոս մեկնեցաւ, հոգիներն հանդարտեցան. Սահակ ամուսնացաւ եւ Կարին գնաց, ուր Հայերու գլխաւորին՝ Եփրիկ օղլու Գրիգորին միջնորդութեամբ՝ 1776 փետր. 28ին Յարութիւն Արքեպ.էն քահանայ ձեռնադրուեցաւ։ Ախալցխա դարձաւ, Հայոց հովիւ եղաւ ուրիշ երեք ծեր քահանաներուն հետ։ Որչափ ալ կաթոլիկեայց հակառակ կը խօսէր, բարեկամացաւ հայ կաթոլիկէից ժողովրդապետ Յովհ. Վ. Մաքսուտեանի հետ։ Ախալցխայի աղքատ ժողովրդեան օգնելու համար՝ դրամահաւաքութեան ելաւ, Կարին եկաւ, ուր հայ կաթոլիկեայ քահանայի մը հետ վիճաբանելով յաղթահարեց, որով համբաւն աւելի մեծցաւ։ Անկէ Կ.Պոլիս անցաւ, ուր Զաքարիա Պատրիարքէն սիրով ընդունուեցաւ. այստեղ հայ կաթոլիկեայ եկեղեցականաց հետ յարաբերութեան մէջ մտնելով՝ մտքին մէջ համոզում կազմեց, եւ արդէն ի ներքուստ կաթոլիկեայ եղաւ, ինչպէս գրէ 10 Մարտ 1785 թուականի նամակով։ 1790 դեկտ.ին Սահակ ժանտախտէ բռնուեցաւ եւ հայ կաթոլիկեայ Յովհ. Մաքսուտեան քահանային խոստովանեցաւ, եւ հաղորդուեցաւ։ Յետոյ առողջանալով յաջորդ տարին Զատկէն ետեւ իր եկեղեցին գնաց եւ հոն պատարագեց. Պատարագին մէջ

յիշեց Հռոմայ Քահանայապետը եւ յետոյ կաթողիկոսը, եւ կաթողիկէութիւն քարոզեց. երկու ամսոյ միջոցին քաղքին ժողովրդեան կէսէն աւելին իրեն յարեցաւ։ Նոյն միջոցին Ախալցխայի փաշան փոխուեցաւ եւ տեղն եկող Խաս փաշա կարնեցի Գրիգոր Եփրիկեանի որդի՝ Համի Աղապապա վաճառականէն 1600 քսակ դրամ փոխ առաւ։ Աղապապա պայման դրաւ, որ փաշան Սահակ երէցը բռնել տայ եւ Էջմիածին ղրկէ, զոր սիրով կատարեց։ Սահակ շղթայակապ Էջմիածին հասաւ Սեպտ. 1ին մէջերը։ Ղուկաս կաթողիկոս ատեան կազմեց, ուր Սահակ հաւատքին համար դատապարտուեցաւ բանտի։ Քահանայական սքեմ հագուցին, յետոյ թշնամանքներով հանեցին, մօրուքը անիծեցին, գլուխը թրէք կապեցին, երեսը կպրածիւթ քսեցին եւ իշու վրայ նստեցուցին եւ Վաղարշապատի գիւղին մէջ պտըտցուցին, մանուկներ կարդացընելով՝ թէ «Այսպէս պիտի ըլլայ փռանկացողին վիճակը»։ Յետոյ բանտարկեցին, գուբը հիւսեցին եւ վերին ծակէն հաց եւ ջուր միայն կ'իջեցընէին։ Այսպէս ձմեռն ու ամառը, հիւանդ եւ ծիւրած, մինչեւ որ 1792ին Ապրիլին՝ նախորդ Շէրիֆ Մահմուտ փաշա յաջորդեց եւ իր բարեկամին՝ Սահակ երիցու Էջմիածին բանտարկութիւնը լսելով՝ պաշտօնատարը ղրկեց քանի մը հոգւով։ Առանք Էջմիածին չհասած՝ կաթողիկոսը Սահակը բանտէն հանեց, քանի մ'անգամ գանակոծել եւ գլուխը գերծել տուաւ եւ տաճկական զգեստ

մը հագցնելով յանձնեց եկողներուն։ Սահակ գունատ եւ տկար՝ չէր կարող ձի նստիլ, զինք ստիպուեցան ձիու վրայ կապել տախտակներու։ Ախալցխա գրեթէ մեռելացած էր, երբ հոգին աւանդեց, 38 տարեկան, 3 ամսուան եւ քանի մ՚օրուան, թունաւորուածի նշաններով։ Պաշ չուխատարը մարմինը մերձաւոր Խոշակվանքը տարաւ, որ լաւ օրինի թաղումի. վանականք մերժեցին, եւ տաճիկք զինք այնտեղերը թաղեցին։ Իր յիշատակը տակաւին կենդանի է տեղւոյն ժողովրդեան մէջ։ Ղուկաս Կաթողիկոս ինքնին կը յիշատակէ այս բանտարկութիւնը եւ զՍահակ խարտուակերը՝ 1791 Դեկ.ին Ախալցխացիներուն գրած նամակին մէջ (Աղանեան Դ. Թ.Հ. Դիւան Դ. էջ 554)։

Անտոնեան Միաբանութեան դիւանին մէջէն այս տեղեկութիւնները քաղած ժամանակս՝ հաճոյական անակնկալ մ՚եղաւ ինծի Գեր. Աբբահայր Գեր. Հ. Ոսկանեան Թ. Վ. Միաւէրեանի կողմանէ, որ մատենադարանին մէջ կախուած շատ հին իւղաներկ պատկեր մը (41×33³ սմ.)՝ աւանդաբար Ս. Սահակ անուամբ ճանչցուած, ներկայացուց ինծի, եւ ուր հին գրով գրուած "Տէր Սահակ Ախըլխացի"։ Անիկայ մեր Սահակ երիցուն պատկերն է, պարզ քահանայի զգեստով երիտասարդ մը, դեղին մօրուքով, աջը բռնած սկիհ մը, որուն մէջէն օձ մը կ՚ելլէ, նշանակ թունաւորման։

Սարգիս Արքեպ. Սարաֆեանի հետ շփոթուած է դարձեալ ուրիշ Սարգիս Եպ. մը։

Ինչպէս վերն (Երգ Գ.) յիշատակեցի, մեզի ժամանակակից երեք հեղինակներ՝ Սարգիս Արքեպ. Սարաֆեանի կաթողիկէ հաւատքն ընդունիլը կը դնեն 1727—40 Հալէպ կամ Լիբանան Աբրահամ Արծիւեան եպիսկոպոսին (յետոյ կաթողիկոս) ձեռք. մինչդեռ, ինչպէս մտադիր ըրաւ զիս Գեր. Հ. Ռափ. Թ. Վ. Միասէրեան, Աբբահայր Անտոնեան Միաբանութեան, իրենց դիւանէն ցոյց տալով, այն Սարգիս Եպիսկոպոսն Երուսաղեմի միաբան խարլանեան է, որ Գրիգոր Շղթայակիր Երուսաղեմի Պատրիարքէն (9 Սեպտ. 1715—1749 Փետր. 12 †) ղրկուած էր Անտոնեան Միաբանութեան Քրէյմեայ վանքը՝ այնտեղ հանդիպող եւ կաթողիկեայ եղող ուխտաւորները լուսաւորելու համար։ Բայց տարիկայ յարեցաւ Միաբանից, նոյն վանքն երկու տարի ճնալէն ետեւ Հռոմ գնաց (Հ. Խ. Սրապեան, "Հանդէս Ա.", 1902, էջ 291—2)։ Հաւանականաբար ինքն է հետեւեալ տապանագիրը, որ կը գտնուի Հռոմայ կաթողիկեայ Հայոց Ս. Մարիամ Եգիպտացի եկեղեցին, որուն օրինակն ինչպէս նաեւ Հռոմ գտնուած ուրիշ հայ տապանագիրներ ղրկեց ինծի վերջերս Հռոմէն Գեր. Անտոն Վ. Խալէնտէրեան, Պատրիարքէոյի Հայ կաթողիկեայց ժողովրդապետը, որուն նաեւ հրապարակաւ կը յայտնեմ՝ շնորհակալութիւններս։

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՍԱՐԳՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ
ԱՃԱԿԵՐՏԻ ՏԻՐԱՑՈՒ ՍԻՄԷՈՆԻ ՈՐ

ԵԿԵՂ. Ի ՀՌՈՄ ՎՃԱՐԵԱՑ ՋԿԵ
ԱՆՍ ԻԻՄ Ի ԹՎԻ ՓՐԿՉԻՆ ՌՉԻԹ (= 1729)
Ի (Ն. Տ.) ՅՈՒՆՎԱՐԻ ԺԶ.ԻՆ

Այս Խարբլանեան Սարգիս Եպիսկոպոսին ժամանակ Երուսաղեմի միաբան եւ Դամասկոսի արքեպիսկոպոսն Ստեփանոս Բերիացի Գուռնի ազգատոհմէն, Երուսաղէմ 30 տարի լուսահանութեան պաշտօն վարելէն ետեւ՝ նոյնպէս Անտոնեանց Քրէյմայ վանքը քաշուեցաւ իբր 1727ին, Արծիւեան Աբրահամ Եպիսկոպոսին ձեռքը ուղղափառ դաւանութիւն առաւ եւ 1737ին 105 տարեկան վախճանելով Անտոնեանց վանքին գամբարանը թաղուեցաւ (Հ. Խ. Սրապեան, «Հանդ. Ա.», 1902, էջ 292, Davidian S., Biografia di Abramo Pietro I, Cairo 1861, p. 68)։ Մարոնիգներն 1736 Սեպտ. 30ին ի Լիբանան, Լուայզա վանքին Ս. Աստուածածին Եկեղեցին գաւառական Սիւնհոդոս մը գումարած են, եւ ի մէջ այլոց նաեւ Տրիդենտեան ժողովոյ վճիռներն ընդունած։ Այս Սիւնհոդոսին հրաւիրուած էին նաեւ Աբրահամ Արծիւեան եւ Ստեփանոս Բերիացի եպիսկոպոսները. սակայն վերջինս ծերութեանը պատճառաւ անձամբ երթալ չկարենալուն՝ իրեն ներկայացուցիչն եղած է Անտոնեան Մխարան Հ. Նիկողայոս Տ. Վ. Միրոյեան, որ Արծիւեանին հետ փոխանորդարար ստորագրած է Սիւնհոդոսի վճռոյն (Արձանագրութիւնք տպագրուած են ի Հռոմ, Պրոպագանտայի տպարանը, 1820ին)։

# 9.

*Սարգիս Եւդոկիա փոխանորդ կը դնէ եւ տարին մը կը հրաժարի. Կ. Պոլսոյ ամէն եկեղեցիներու մէջ քարոզ կու տայ: Իր հակառակորդները, Բալուցի Մանուէլ քահանայ, Սափրիչ Յովհաննէս՝ ինքնակենսագրութիւնը: Սարգիս Երուսաղէմի նուիրահաւատարութեան հաշիւը կը ներկայացընէ: Սարգսի աշակերտ Յարութիւն Պետանեան: Նալեան կը հրաժարի Պատրիարքութենէն եւ կը փախչի: Սարգիս կը խօսի դամբանականը: 1771ին Սիմէոն Կաթողիկոս զՍարգիս կ'ուզէ նուիրակ անուանել: Սարգիս կը մերժէ. 29 Սեպտ. 1772ին Յովհ. Վ. Նուրինեանին հետ Պոլսէն կը մեկնի. 24 օրէն Մարսիլիա կը հասնի:*

Քիչ մը կազդուրուելէն ետեւ՝ սկսաւ այցելութիւն տալ ծանօթներուն։ Նախ Յակոբ Պատրիարքին գնաց։ Պատրիարքն յարատեւ փղձկեցաւ, ինչպէս բոլոր ներկաները. վասն զի Պատրիարքը բաղձատարած ներողութիւն խնդրեց իր ըրածներուն. իսկ Սարգիս ներելով գրկեց եւ համբուրեցան. Սարգիս չուզեց բնաւ աքսորանաց յիշատակութիւն ընել, այլ զուարթ խօսակցութեամբ մը փախեց. Այնուհետեւ այցելութիւն տուաւ Աբրահամ Ամիրա Քիւլէլեանի, որ Սարգսի սերտ բարեկամն էր եւ ազատութեան առաջին պատճառը, եւ որ յառաջ՝ եպարքոսի վաճառապետ Ղազարոսին եւ Պետրոսին հաշուընկերն էր։ Սարգիս անոր շնորհակալ եղաւ եւ մեծ պատուով ընդունուեցաւ։ Յետոյ մի առ մի վարդապետաց եւ իշխանաց այցելութիւն տուաւ, եւ միշտ կը յորդորէր անցեալը մոռնալով՝ սիրով ապրիլ միասին. եւ ամէնքն ընծաներով եւ նուէրներով զինք մխիթարեցին։

Քանի՞ մ'օր ետքը Սարգիս Յակոբայ ներկայացաւ, եւ ըսաւ որ Խուգոկիոյ առաջնորդութեանէն կը հրաժարի, եւ խնդրեց որ թոյլ տայ Կ. Պոլիս ապրելու քաշուած եւ առանձին: Յակոբ ընդդիմացաւ, ըսելով որ ասոր հրաժարականն արդէն եղած է, եւ գէթ տարի մը նորէն առաջնորդութիւնը վարէ: Սարգիս տեղի տուաւ, սակայն Պոլիս մնաց եւ Խուգոկիա իրեն փոխանորդ մը կարգեց:

Այս ամէն դէպքերուն պատճառաւ Սարգիս ծանր պարտուց տակ ինկած էր, դրամ չունէր հատուցանելու, եւ տպագրած գրքերն ալ անվաճառ կեցած էին: Իշխաններն երբ լսեցին, իրենց հաշիւն ուզեցին ապրանաց պատճառաւ եղած ծախուց: Այս հաշիւն իշխանք եւ ի մասնաւորի Աբրահամ Քուլէլեան, Յակոբայ ներկայացուցին, եւ պահանջեցին որ այն գումարը հատուցանէ Սարգսի: Յակոբ թէեւ ընդդիմացաւ, սակայն չկրցաւ իշխանաց հակառակիլ. ամբողջն հատոյց Սարգսի, եւ Քիոս ղրկած հարիւր ոսկին ալ շնորհեց: Նոյնպէս Սիմէոն Վ. Նուիրակ, որ աքսորման օրը Սարգսի հարիւր ոսկի փոխ տուած էր, ամբողջը շնորհեց:

Այսպէս Յակոբ թոյլ տուաւ Սարգսի որ ուզած տեղը բնակի, եւ ուզած եկեղեցին պարակի եւ Ցօն օրեր քարոզ խօսի: Սարգիս ասով բոլոր անցեալը մոռցած, ստէպ Յակոբայ կ'երթար, կը տեսակցէր, ինչպէս նաեւ բոլոր Ամիրաններու դռները բաց էին իրեն համար, եւ մեծ շքով զինք կ'ընդունէին: Տարի մ'ետքը Սարգիս

հրաժարեցաւ Նուզոնկիոյ աթոռը փոխանորդով կառավարելէն, եւ կը բնակէր մերձ Ս. Գէորգայ եկեղեցին եւ մերձ Ցակոբ Պատրիարքի քով Ս. Աստուածածնի եկեղեցին. յաճախ կ'երթար Ս. Լուսաւորիչ եկեղեցին Ղալաթիոյ, Ս. Հրեշտակապետաց եկեղեցին, Սկիւտարի եկեղեցին, եւ Սեւ ծովու Նեղուցին եկեղեցիները, եւ քարոզ կու տար ամէն տեղ։

Անշուշտ այս միջոցներուն պիտի վերաբերի հետեւեալ նամակն Ցակոբ Պատրիարքի, զոր 15 Դեկտ. 1761ին գրած է Սարգիս Աբբեպիսկոպոսին (Գիւ. Լիվ.)։

Է.

Սիրով՝ որդւոյ Հոգւոյն եւ Ցիսուսածին ողջունիւ ծանիր տիրելի իմ եւ պաշտօնակից եղբայր Սարգիս Աստուածաբան վարդապետ, զատձնէվար Ֆերմանի ուրէթս որպէս յամենայն եկեղեցիս, նոյնպէս այժմ առաքեցաք. յառաւօտուն որ է Կիրակի յառաջանն մօլլայի կամ գիտայի զդպրութիւն տաճկի մի ընթեռնուլ տայցես, եւ բառ միաձէւային զծանուցումն արասցես լաւ թէմպէհի. եւն. լինելով ողջ ի Տէր ի Պարծանս Ցէր. Պոր" Կոս"պօլ". ՌՄԺ (= 1761). դեկտ. ԺԵ. (Ցակոբայ կնիքը, որ կը կարդացուի (փակագիր) "Ցակոբ վարդապետ ՌՃՂ." = 1741)։

Եւ աՀա դարձեալ իրեն դէմ Հակառակորդներ ելան, որոնց գլխաւորներն էին Ցօհան սափրիչ, Տիվրիկեցի Մովսէս եւ Մեծմասնեան, որոնց պարագլուխն էր ուղղափառաց միշտ Հակառակող Մանուէլ քահանայ։ Այս անձինք ինչպէս Սարգսի, նոյնպէս Ցակոբ Պատրիարքի,

եւ յետոյ Գրիգոր Պատրիարքի դէմ հակառակեցան միեւնոյն զէնքերով։ Ասոնցմէ Բալուցի Մանուէլ քահանայի մասին բաւական գրած է Չամչեան (Գ. էջ 867—871, 875, 876). ինչպէս նաեւ Գրիգոր Պատրիարք Պասմաճեան իր Յիշատակարանին մէջ (էջ 238 «Բալուցի Մանուէլ երէց եւ Ակնցի Աբրահամ», վերջինս «Պատրիարքարանի դատու Օղլանի»։) Միւսներու մասին յիշատակութիւն չկայ. միայն Յօհաննէս Սափրիչ ունի ինքնակենսագրութիւն մը, զոր ուրիշներ չեն յիշատակեր եւ որմէ կ'իմանանք թէ ինքը Ագուլեցի է եւ արիացու, ի մանկութենէ կաթողիկեայ, եւ Յակոբ Նալեան զինք երեք անգամ թիարան նետել տուած է հաւատոքին համար, որմէ ետ կեցած է յետոյ։ 1755ին Կ. Պոլիս, Բարբողի տպարանին մէջ տպուած է «Գիրք որ կոչի Լուծիչ տարակուսանաց», գործ Յովհաննէս Սափրիչի (զոր Հ. Աստուր, անդ էջ 149, սխալմամբ Մանուէլ Արմաշեցի կու տայ, որ շարագրող կամ խմբագրողն է, ինչպէս նաեւ Մանուէլի «Գաւազան կրկնազօր»ը 1750ին տպագրուած կը դնէ, մինչդեռ այն գրութեան տարին է, եւ տպագրուած է 1780ին)։ Այս «Լուծիչ» գրքին մէջ (էջ 5) կը կարդանք. «Բան առ բարեմիտ ընթերցողդ, ի յօհաննէսէ սափրիչէ... գոլով իմ ամաց իբրեւ եօթանց եւ կամ ութից, անկեալ էի ի ձեռս նորարարս թոնթրկեցւոց այսինքն սխտորամայից, եւ նոքա ուսուցեալ էին ինձ զաղանդն իւրեանց։ Իսկ յորժամ եղէ ամաց իբրեւ քսանից՝ սկսեալ իմ

այնուհետեւ՝ զրպարտել զմայրս իմ, զՀայաստանեայցս սուրբ եկեղեցի... բայց Աստուած... ազգեաց երիցս... Տեառն Յակոբայ Աստուածաբանի եւ Պատրիարքի Կոստանդնուպօլսոյ, որ պատժեաց զարժանիս պատժոյ՝ տալով ի քիրէկն զնա։ Բայց ես զկնի բազում ժամանակի ելեալ ի նմանէ բազմաւ աշխատութեամբ եւ ճգնաւ... եւս առաւել չարչարեալ եղէ քան զառաջինն... Արդ մնացեալ ի միջի նոցա ամս 25 յետոյ ամենագթածն Աստուած ...երեաց զաչս մտաց իմոց... եղէ... վերահասու, որ մայրս մեր սուրբ եկեղեցի Հայաստանեայցս՝ է ճշմարտապէս ուղղափառ եւ անբիծ... Վասն որոյ եւ ես հաւաքեցի ի գրեանց զբանս բազումս... եւ զժողովեալս զայսոսիկ՝ յոյժ աշխատմամբ եւ մեծաւ պաղատանօք, եւս շարադրել սիրելի եղբօրն իմոյ տիրացու Մանուէլի փոքրկան... Նուաստագունեղ Յօհաննէս Սափրիչ»։ Յիշատակարանին մէջ ալ (էջ 159) կ'ըսուի «... Արդեամբք եւ ծախիւք Ագուլեցի սափրիչ Տիրացու Յօհաննէսին, որ ի չքաւորութենէ իւրմէ՝ ընծայեաց զամենայն զոր ինչ ունէր... յիշեսջիք... զի վերոյիշեալ սափրիչ տիրացու Յօհաննէսն հանդերձ ծնողօքն Պաղտասարիւ եւ Թագուհեաւ։ Այլ եւ յիշել աղաչեմ զփոքրիկ Մանուէլս, զշարադրօղս գրքոյս, զշարօղս եւ զցրուօղս կապարեայ գրոց...»։

Արդ վերոյիշեալ անձինք միշտ Սարգսի քարոզներուն ներկայ կը գտնուէին՝ անոր բերնէն ուղղափառական բառ մը կամ խօսք որսա-

լու համար. եւ սկսան ամէն տեղ զինք բամբասել՝ Վ'ըսէին, թէ Սարգիս Ս. Յակոբայ նուէրները կլլեց, զոր Զմիւռնիա ժողված էր նուիրակութեամբ, թէ քարոզներուն մէջ կ'ըսէ թէ «Աւելի աղէկ է բոլոր տարին պահք չպահել քան թէ ընկերը բամբասել», թէ «սխտան հաւիկը արքայութեան դուռը չի կրնար բանալ», թէ կ'արհամարհէ ազգին պահքերը, աղուհացից մէջ եւ այլ ուրբաթ օրեր ձէթ կ'ուտէ, ինքը զուտ փռանկ է, Քաղկեդոնականները կը սիրէ եւ Լուսաւորչականները կ'ատէ։ Այս եւ նման խօսքերով պարզամիտները Սարգսի դէմ կը գրգռէին, եւ տեսնելով որ Յակոբ Պատրիարք բոլորովին լռութիւն կը պահէ, եւս առաւել կը գրգռուէին։ Սարգիս Պատրիարքին գնաց եւ ըսաւ թէ պէտք չէ լսել այս հաչողներուն առջեւ, ապա թէ ոչ զինքն ալ կը զրպարտեն. վասն զի ասոնք քիչ ետքը Պատրիարքին դէմ ալ խօսելու եւ գործելու սկսան, զինք մատնելով տէրութեան։ Վերջապէս Յակոբ Սարգսի խնդիրը ներկայացուց Ընդհանուրայ ժողովին, որոնք Սարգսէն Երուսաղեմայ նուիրահաւատութեան հաշիւը պահանջեցին։ Յակոբ թէպէտ գիտէր որ Սարգիս ամբողջն Երուսաղէմ հասուցած էր եւ Գրիգոր Շղթայակիր Պատրիարքէն ընկալագիր առած էր եւ ինքն ալ վրան ստորագրած էր, սակայն լռեց։ Աւասիկ, իբրեւ գահերէց, պատասխան պահանջեց Սարգսէն։ Սարգիս ծիծաղերես հարցուց Պատրիարքին. «Ս. Յակոբայ առաջնորդը

կամ փոխանորդն ատենք են արդեօք, որ հա-
մար կը պահանջեն, եւ միթէ Ձեր Տէրութեան
ծանօթ չէ՞, որ այս տուրքերը Ձեզի յանձնեցի,
եւ Դուք ինծի հաստատական տուիք Ձեր
կնքով։ Մինչ Յակոբ լուռ կը կենար, Սարգիս
ներկայացուց ընկալագիրը եւ կարդալ տուաւ
լուի ի լուր ամենեցուն. որուն վրայ Յակոբ ամօ-
թապարտ եւ նեղացած՝ յանդիմանեց ամբաս-
տանիչները, եւ անոնց ուրիշ զրպարտութիւն-
ները ջրեց։ Առոր վրայ ներկայ եկեղեցականք
եւ իշխանք պահանջեցին, որ պատմուին եւ
բանտարկուին ամբաստանողք։ Յակոբ աղաչեց
զիրենք զզջալու եւ Սարգսէն թողութիւն խնդրե-
լու, զոր եւ Սարգիս սիրով շնորհեց, խրատե-
լով ի միաբանութիւն զՄանուէլ։ Իսկ այնուհետեւ
ամէնքն ալ եւս սկսան յարգել զՍարգիս եւ
ակնածիլ իրմէ։ Այս Մանուէլը յանգդնած էր
նաեւ Մխիթարեանները նախատել, տակայն
Ճառընտրան Հ. Մկրտչին առ գրչին հանդիպե-
լով՝ ի սիրտ խոցուած էր։

Այսուհետեւ Սարգիս Արքեպ. Պալատու
եկեղեցին կը բնակէր եւ կը քարոզէր։ Այնտեղ
Սարգսի աշակերտեցաւ Սամաթիացի ուսումնա-
սէր պատանին՝ Յարութիւն Պետանեան, որդի
Նազելիի եւ Յովհաննու, որ լաւ ուսանելէն
ետեւ ուզեց թէպէտ եկեղեցական ըլլալ,
բայց մնաց աշխարհական, եւ եղաւ վա-
ճառական ի Կ.Պոլիս եւ 1772ին Սարգիսը,
յետոյ Սամուէլ Եպ. Երզնկացին, Գրիգոր
Պատրիարքն Պասմաճեան, եւ Յարութիւն Ար-

քեալ. Էջմիածնի Հռոմ՝ փախելուց, ինչպէս պիտի տեսնենք։

Քանի մը տարի ետքը Սարգիս Պալաթեցի Ս. Դր. Լուսաւորիչ եկեղեցին հաստատուեցաւ եւ հոն սկսաւ նորէն քարոզել։ Այս միջոցին (1764ի սկիզբը) Յակոբ Պատրիարք, մահուան հիւանդ կը պառկէր Սկիւտարու Նրատաղեմեան վանքը, ուր Սարգիս Արքեպ. տանը կ'այցելէր. կը մխիթարէր, եւ զինք յաւիտենական կենաց կը պատրաստէր, անցեալ գործերը յիշեցնելով զղջման կը յորդորէր։ Յառաջ կը բերէր այն գրքերը՝ զոր ընդդէմ ուղղափառութեան տպած էր, թէպէտ ինքն Յակոբ այլ ըրածներուն վրայ գոհ չէր։ Նոյն Յակոբ պատասխանեց թէ վերջին անգամ գիրք մ'այլ տպած է մաղթանքի եւ աղօթքի վրայ (Գիրք աղօթից ամենայն անձանց հարկաւոր, Կ. Պոլ. Տպ. Աստուածատուրի, 1760), որուն մէջ ուղղափառական շատ բան կայ։ Նոյն Սարգիս պատասխանեց, թէ «ատոր մէջ կամքդ բացայայտ չէ, ինչպէս բացայայտ է ուղղափառաց դէմ գրածներուդ մէջ»։ Սարգիս տեսնելով որ Յակոբ չուզեր որ այլ եւս վրան խօսուի, ելեր։

Յակոբ զգալով որ հիւանդութիւնը կը սաստկանայ, ուրիշներուն խորհուրդին անսալով՝ ուզեց որ իր տեղ ուրիշ մը Պատրիարք ըլլայ։ Առաջարկեց Սարգսին, որ հրաժարեցաւ եւ երդմամբ պնդեց որ բնաւ յանձն չ'առնուր։ Այս մասին Սարգիս 9 Յունուար 1773ին Լիվոռնոյէ կը գրէ առ Հ. Ռափայէլ Սուքիասեան

ի Հռոմ (Գիւ. Ընտ.), ինչ Գաղղիոյ եւ Նափոլիի գեսպաններուն տուած միջամտութիւններուն մէջ գրուած է "եւ վասն բանադրանելոյ հասարակութիւնն առ ի յաննել Պատրիարգ, եւ զաշ ընդունելոյն»: Ցեսոյ Պրուսայէ առաջնորդ Սամուէլ Եպ. Ինտաճարգեան, որ նոյնպէս մերժեց. ինչպէս վերն յիշեցինք: Վերջապէս 13 Մայիս 1764ին ժողովին մէջ ինքն ալ պատգամաւորի վրայ գտնուելով՝ բանի հաւանեցուցին Երուսաղեմի Ջէթէճ Գրիգոր Վ. Պասմաճեանը պատրիարքութիւնը յանձն առնելու:

Յամին 1764, Յուլիսի 19ին, Վարդավառի երկրորդ օրն Բշ. իրիկուն ժամը 12ին Յակոբ Պատրիարք մաշարայական ախտի փոխեցաւ յաւիտեան: Յաջորդ օրն՝ ժամը 3ին մարմինը փոխադրուեցաւ Հանդիսիւ Պէյօղլու Հայոց գերեզմանոցը, եւ Յակոբ Կաթողիկոսի գամբանին քով թաղուեցաւ: Օծողն ու գերեզմանի կարգը կատարողն էր Էջմիածնի Նուիրակ ՝Քաջաքարոզ Յարութիւն Արքեպ. Բասենցի.: Ներկայ էին Գրիգոր Պատրիարք, Սարգիս Արք. Սարաֆեան, բազմութիւն յոյժ վարդապետաց, քահանայից, իշխանաց եւ ժողովրդոց: Կարգը կատարուած ժամանակ ժողովուրդն այնպէս բռնած էր գերեզմանին շուրջը, որ Գրիգոր Պատրիարք ամբոխը հեռացնելու համար, Հրամայեց Սարգիս Արքեպ.ին որ դամբանականն մը խօսի: Սարգիս Արքեպ. Սարաֆեան քիչ մը հեռու բարձր գերեզմանաքարի մը վրայ ելաւ. եւ սկսաւ խօսիլ: Ընկանտանեան Սարգիս գիրք

Յովհաննիսեան, որ այս մանրամասնութիւններս կ'աւանդէ (ձեռագիր Տր. Վ. Թորգոմեանի), "Համբարձում. Սարաֆեանի այս գամբռանկանը հետեւեալ կերպով կը յիշատակէ. Սարգիս Արքեպ. տեսաւ մեծաւ հառաչմամբ, եւ արտասուաց կերպիւ, արտասուաթոր աչօք, եւ հեկեկելով ձայնիւ, աւաղել եւ ողբալ զհարգկային բնութեան լայծիւն եւ անկայիւն լինելն ի վերայ երկրի եւ միշտ ի հասման եւ ի ծորման գոլն ի սկզբանէ մինչեւ ցկատարած, եւ զաշխարհիս ունայնութենէն, եւ զսին սաղարթիւք պաճուճեցելով զլինելութենէն, եւս եւ յունայն եւ ի նանիր իրս առ աչօք երելով զհեշտութենէն՝ զարդելով ամբաստաննեաց, բերելով զօրինակս շահաւէտս, եւ զառակս օգտակարս եւ զխրատս։ Եւ յետոյ զմիայն գոյատեւութեան միանգամն եւ նպատակն, եւ օգտաւէտ շահաւէտութեան արժանին եւ ընդունելին, այսինքն՝ զաստուածային առաքինութիւնս գովելով զօվեաց եւ ներբողեաց, եւ այսու կերպիւ մխիթարեաց սփոփանաց եւ զմխացուցեալ ապահովացուց զմտաղօթութն սակաւիկ ինչ։

"Եւ յաղագս հանդուցելոյն ասաւ սակս այսպէս. Եղբարք իմ սիրելիք, ահա այդ տեսէք, մեր մեծապատիւ եւ սիրելի հոգեւոր սրբազան Հայրն լուսահոգի՝ թէ որպէս վճարեաց զկեանս իւր, եւ զմեզ զամենեսին որբացոյց իրաւի եւ կաթողնելով միջամբեկս արար. եւ արդ տեսէք թէ որպէս ակունքն իւր լուսաւորք՝ զորս ունէրն երեկն եւ եռանդն, այժմ՝ զազա-

ընտալք են ի տեսանելոյ. բերանն ի խօսելոյ զաստուածային քաղցրութիւնն վարդապետելոյ՝ եւս յօրհնելոյ զՔեզ լռեալ են ուսանիկ. տեսէք եւ այժմ եւ զձեռն որ ոչ կարէ վերացուցանել եւ խաչակնքել զձեզ, եւ տալ առ ձեզ խաղաղութիւն ընդ ձեզ եւ այլն. եւ ականջքն ի լսելոյ զջերմեռանդ աղօթքն ձեր, եւ առ Աստուած մատուցանելոյ (իբրեւ զՀրեշտակն Կուռնելեայ). այդ զրկեալք ի լսելոյ եւ խզեալք զգայարանք. եւ ոչ որչափ առ Աստուած խնամակալարար, եւ ինքն իսկ բոլորովին զրկեցեալ է ի համայնից զգայութեանց եւ շարժութեանց, եւ բովանդակ դասուց եկեղեցականաց ի հօգեւոր պարտաւորութեանցն, եւս ձեզ նման հօգեւոր եւ միւսն որդեկացդ ի տեսութենէն հեռացեալ մեկնեցաւ այսօր. ուրեմն պարտիք եւ դուք վասն նորա առ Աստուածն զողորմագութ ջերմեռանդապէս աղօթս մատուցանել, զոր մխիթարիչ Հոգին Սուրբ Աստուած զձեզ եւ զՄեզ մխիթարեսցէ. եւ զհօգի երանելւոյ Պատրիարքիս այսորիկ, ի լուսեղէն խորանսն ընդ սրբոցն իւրոց զմայլեցուսցէ տեսութեամբ իւրով:.

Գրիգոր Պատրիարք որ միշտ յարգած էր զՍարգիս եւ զինք " Հայր վարդապետ „ կ'անուանէր, թող տուաւ որ նախկին տեղը՝ Ս. Գր. Լուսաւորիչ ընակի։ Տարի մ'ետքը՝ 1765ին Ղալաթիոյ քահանայք Սարգսի խօսքերէն տհաճ անոր դարան մը լարեցին։ Վասն զի Սարգիս քարոզներուն մէջ կը յորդորէր, որ

հաւատացեալք գիտուն եւ բարեկիրթ Տէրտէրներուն խոստովանէին. եւ որովհետեւ Ղալաթիոյ Տէրտէրներըն ագէտ եւ անկիրթ էին՝ ամէնքը ատոնցմէ հեռացան։ Ասոր վրայ Տէրտէրներ տան մը մէջ գաղտնի ժողով գումարեցին, Սարգսի դէմ՝ ամբաստանագիր մը տորագրեցին եւ ղրկեցին Պատրիարքին։ Տէրտէրները կը խնդրէին՝ որ Սարգիսն անկէ հեռացընէ, որպէս զի ժողովուրդն իրենցմէ չպաղի եւ իրենք ալ հանդարտին. վասն զի Սարգսին միտքն է, կ՚ըսէին, որ ժողովուրդը իրենցմէ հեռանայ եւ երթայ կաթոլիկ քահանաներուն խոստովանի։ Նոյն տնէն ուր ժողովք կազմած էին, կին մը փութաց Սարգսին իմացուց։ Սարգիս չհաւատալով՝ ժամարարին գնաց, եւ հարցափորձով իմանալով իրականութիւնը, իսկոյն կանչեց Աւագ Տէր Յոհանը, որ նոյնն հաստատեց։ Երեկոյեան ժամերգութենէն ետեւ՝ իշխանք եւ ժողովուրդք եկեղեցւոյ սրահն ելան, որոնցմէ զոմանս Սարգիս մէկդի առաւ, եղածը պատմեց եւ ստացած ըլլալն իմացուց։ Ասոնք զայրացան երիցանց դէմ, եւ պահանջեցին որ պանդուխտ երէցները եկեղեցիէն հեռացուին։ Բայց Սարգիս զիրենք հանդարտեցուց, երեցունք եկան Սարգսէն թողութիւն խնդրեցին, զոր եւ Պատրիարքը լսելով՝ զՍարգիս մխիթարեց եւ երիցունքը սաստեց։

Յարութիւն Արքեպս. Բասենցի 1763ին Կաթողիկոսի կողմանէ Կ. Պոլիս նուիրակ ղրկուած էր, եւ այլեւայլ եկեղեցիներ պտըտելէն ետեւ,

Նաեւ Ս. Լուսաւորիչ նուէր պիտի հանէր (1766). եւ որովհետեւ տրամադրելի սենեակ չկար, Սարգիս իր սենեակն անոր տուաւ եւ ինք Միջագիւղ գնաց, ուր եկեղեցին սենեակ շինենալուն, պատրիարքն անոր համար տուն մը վարձեց, ուր Սարգիս ամառը բնակեցաւ։ Սարգիս անդուոյն եկեղեցւոյն մէջ ամէն կիրակի կը քարոզէր, նոյն ատեն բնական բազմաթիւ իշխաններ զինք շատ կը յարգէին, մանաւանդ Զօպանեանք եւ Սիմէոն Աստուածատուրեան։ Պէշիկթաշի ազգայինք ալ, որ եկեղեցի շինէին, Սարգսի քարոզին կու գային։

Յամին 1771 Սիմէոն Կաթողիկոսն Էջմիածնի ուզեց զՍարգիս իւր նուիրակն ընել ի Կ. Պոլիս. իր այս կամքն յայտնեց Զաքարիա Վ.ի, որ այն ատեն նուիրակ էր Էջմիածնի, եւ հրամայեց որ այս մասին խօսի Սարգսին հետ։ Սակայն Սարգիս ծերութիւնը պատճառելով հրաժարեցաւ։ Տարի մ՚ետքը Սարգիս եկեղեցւոյն երէցները սաստեց գործուած անկարգութեան մը համար, որուն անոնք բարկանալով եւ կողմնակից գտնելով՝ Սարգսի դէմ Պատրիարքին ամբաստանութիւն գրեցին։ Բայց Գրիգոր Պատրիարք քննելով անոնց արարքը՝ յանդիմանեց զիրենք, եւ հրամայեց Սարգսին առնալ, որոնք Սարգսէն ներում խնդրեցին։

Սարգիս վերջապէս կը խորհէր դառնալ Եւրոպա երթալ, եւ Հռոմ՝ անցընել իր վերջին օրերը. բայց Տաճկաց եւ Ռուսաց պատերազմը, իր գրքերուն անվաճառ մնալն արգելք կ'ըլ-

լայն։ Վերջապէս տեսնելով՝ որ Գրիգոր պատրիարքը կ'ուզէ վերջնականապէս Հրաժարիլ պատրիարքութենէ, ուրիշներուն եւ իր աշակերտ Նուրանեան Վ.-ին յորդորներուն անսալով՝ փութացոյց կատարումը. գրքերու վաճառումը կարգադրեց, տանը կահկարասին քոյրերուն տուաւ, եւ ամենայն ինչ ոսկւոյ վերածեց, Մարսիլիա գացող նաւ մը վարձեց, Նուրանեանին Հետ բոլորովին գաղտնի մեկնեցաւ Պոլսէն 29 Սեպտ. 1772ին, եւ 24 օր նաւելէն ետեւ Մարսիլիա Հասաւ։

## 10.

*Սարգսի հաւատարիմ բազմաթիւ հետեւորդներու անունները։ Իր մեկնումը Պոլսոյ մէջ մեծ տպաւորութիւն գործեց։ Սամուէլ Եպ. Լամբրոն, Պրուսայի Առաջնորդը։ Ղազար Անմարմին Արքեպ. Տրապիզոնի՝ կաթողիկեայ. Կարնեցի Տէր Յովհաննէս Վ.։ Յարութիւն Արքեպ. Բաանեցւոյ նամակը. Յարութիւն Պատմանեանի ընդարձակ նամակը։ Գր. Պատմաճեան Պատրիարքի ընդարձակ կենսագրութիւնը։ Յարութիւն Արք. Բաանեցւոյ կենսագրութիւնը։ Սարգիս ի Մարսիլիա, ի Լիվոռնոյ. Հիւանդութեանն սկիզբը։ Կ. Պոլսեցի Յակոբ Մնացող Արքեպ. Քեռեսեա Արապկեան. Կ. Պոլսեցի Աղեքսանդր Արալմեան, Արքեպ. Վանայ. Սիմոն Եպ. Ամուսեան, Սամուէլ Եպ. Երզնկացի կաթողիկեայ ի Հռոմ։ Սարգիս հոգեվարք, իր կտակը, մահը, թաղումը։ Իր հոգւոյն համար մշտնջենաւոր Պատարագ. իր շիրիմը, դիմանկարը, տապանագիրը։*

Սարգիս Արքեպ. սրտով եւ վարդապետութեամբ ուղղափառ կաթուղիկեայ՝ 1754էն մինչեւ 1772 ջանաց քարոզութեամբ ազգն ուղղափառութեան բերել, եւ յաջողեցաւ շա-

տեղը փոխարկել թէ եկեղեցականներէն, եւ թէ իշխաններէն ու ժողովուրդէն, որոնց ամենց անուն-ները տեսնել մեր հրատարակած նամակներէն պիտի իմանանք։ Շատ խօսեցաւ վարդապետաց եւ իշխանաց հետ, որ իրենց եկեղեցւոյ կաթո-ղիկեայ հաւատքէն տարբերութիւնը միայն Յու-նաց եւ Ասորւոց ձեռքէ յառաջ եկած է, եւ թէ պէտք է թօթափել իրենց հին հաւատքին այս յաւելուածները։ Սակայն այլեւայլ նկա-տումներ թոյլ չէին տար ամենուն այս քայլն առնելու։ Ինքն ալ արդէն եօթանասունն անցած եւ հիւանդագին՝ ուզեց իբրեւ ուղղափառ ուղղափառաց մէջ կեանքին մնացորդն ան-ցընել եւ անոնց մէջ մեռնիլ։ Ունէր նա եւ մեծ ծրագիր մը՝ ազգին օգտին հա-մար, զոր կը յուսար գործադրել տալ ի Հռոմ, ինչպէս վարն իր գրութիւններէն պիտի տեսնենք։

Մենք թող տանք զինքն առ այժմ ի Մարսիլիա, եւ տեսնենք, թէ ինչեր անցան Կ. Պոլիս իր մեկնումէն ետեւ, եւ իր հետեւող-ներէն ի մասնաւորի երկու նշանաւոր անձնաւո-րութիւնները նկատողութեան առնենք, այն է՝ Գրիգոր Պատրիարք Պասմաճեան, եւ Յարու-թիւն Արքեպ. Բասենցի։ Նախորդին՝ Պրուսայի Առաջնորդ Սամուէլ Եպ. Երզնկեցւոյն վրայ վերն արդէն խօսեցայ։ Այստեղ կը յաւե-լում նաեւ հետեւեալները, որով վերը տա-րակուսական թողածներս կը լուսաւորուին։ Վերն յիշուած Սարգիս Վ. Թէքիրտաղցւոյ

նամակներէն (Դիւ. Ընդ.) կը քաղեմ հետեւեալ տեղեկութիւնները։ Մեր այս Պրուսայի Ռուսչուքց Սամուէլ Եպ. Երզնկացւոյ մականունն է Լ—ճե—ն, եւ բոլորովին սխալ է Ուղուրլեան Վ.ի աւանդածն՝ թէ Լաճեան Եպս. 1773ին ի Հռոմ վախճանած ըլլայ. վասն զի Սարգիս Վ. Թէքիրտաղցի, տակաւին սարկաւագ եւ աշակերտ Դպրատան, 20 Ապր. Ն. տ. 1776ին Հռոմէն կը գրէ «առ Սամուէլ Լաճեան Եպ. Պրուսայի ի Պրուսայ», դարձեալ 20 Մայիս Հ. տ. 1776ին «առ Գումրուեան Խաչակ Սարկաւագ Սամուէլ Եպս.ի Պրուսայու ի Պրուսայ» (այս սարկաւագն էր, որ Սամուէլի հետ Հռոմ գացած էր), եւ վերջապէս նոյն տարւոյ Յունիսին «առ Սամուէլ Եպ. ի Պրուսայ»։ Սարգիս Պոլիս դառնալէն ետեւ գրած նամակներուն մէջ ալ, ինչպէս նաեւ իր Ինքնակենսագրութեան մէջ կը յիշատակէ Սամուէլ Եպ.ը։ Ասոնցմէ կ'իմանանք, որ Սամուէլ Վ. Լաճեան, Երզնկացի, Եպ. Պրուսայի, 1775ի վերջերը կամ 1776ի սկիզբը իր կահ կարասիքը Հռոմ Հայոց Եկեղեցւոյն ընծայելով՝ Պոլիս դարձած է իր սարկաւագին հետ, եւ դարձեալ իր թեմը գացած. իսկ 1782—3ին Խասգիւղ հաստատուած է։ Սամուէլ Պրուսայէն 150 ղր. փոխ կը ղրկէ Սարգսին Վենետիկի Յովհաննէս Սերոբեան Մարքիզին ձեռօք. Սարգիս ալ Հռոմէն տեղեկութիւններ կու տայ Սամուէլին, եւ Խաչակ սարկաւագին խրատ կու տայ հաստատուն մնալու հաւատքին մէջ։ Սամուէլ դար-

ձեռք իր եկեղեցւոյն յարած կ'երեւայ, վասն զի Սարգիս Հռոմ՛ յանդիմանութիւն կը կրէ իր մեծերէն Սամուէլի հետ հաղորդակցութեան մէջ ըլլալուն. դարձեալ Սամուէլ 1778ին ի Կ. Պոլիս Սարգսէն կը պահանջէ իր պահանջքն 100 դր. եւ զինք կը նեղէ. եւ վերջապէս Սարգիս Վ. 1783ին կ'ուզէ խաղաղիլ երթալ, եւ Սամուէլը խրատել ու դարձի բերել. թէպէտ եւ Կ. Պոլսոյ Պալաթի Ս. Հրեշտակապետ եկեղեցւոյն մէջ պահուած Սամուէլ Եպ.ի աշխատասիրած գործը՝ «Աղթութիւն մատաղական եւ ձեռնադրութեան աղօթից տետր». (Բարգէն Վ. «Լոյս» 1905, էջ 967) շատ կաթողիկեական կը հնչէ.

Յովհաննէս Կոլոտ Պատրիարքի աշակերտ էր նաեւ «Ղազար Վ. Պոնտացեան, որ ան-մորցին կոչիւր. (Կոլոտ, անդ. էջ 71, 203). Ընկայ Տրապիզոնի ուսանողաց ըլլալով՝ 1741ին Էջմիածին Ղազար Կաթողիկոսէն Տրապիզոնի եպիսկոպոս ձեռնադրուած է («Ուսանողական եւ վկայական կոնդակը». տես Տաշեան, անդ, էջ 1031—2) եւ իր գարնկեր՝ Սարգիս Արքեպ.ին հաւատոյն աշակերտելով՝ 1760ին Վենետիկ գացած է (Հայ-Վենետ. էջ 343). Ղազար 1764ին Հռոմ կը գտնուէր. վասն զի Ընտանեաց Մատենադարանին թիւ ՂԸ. «Հաւաքածոյ. ձեռագրին ակիզբը կը կարդանք. «Գիրքս Սրբոյն Գրիգորի Նիւսացւոյն յիշատակ կարգեաց Լիբանանցի կրօնաւորացն Հայոց ուղղափառաց ի կարգէ սրբոյն Անտոնի մեծի վար-

գին յանապատի Ղազար Արհի Եպիսկոպոսն պանդուխտի, ի մեծն Հռոմ վասն նորաշէն վանուցն սրբոյն Գրիգորի Լուսաւորչին սրբոյն պետրոսի ի Վատիկան թվին մարմնաւորութեան Փրկչին 1764 Մայիսի 15։ Որ է ընդ հովանեաւ եկեղեցւոյն սրբոյն պետրոսի ի Վատիկան։ Իսկ 1766ին Անգեան էր (Թուղթ. պետրոս աբի Գաբրիէլի Ղայսէրլի. գրեալ 7 Յունիս 1766 յԱնգեան առ Հ. Գր. Վ. Նիփոնթ ի Հռոմ. Դիւ. Անտ.)։

Ահաւասիկ իր եպիսկոպոսական ձեռնադրութեան կոնդակը.

Յիսուսի Քրիստոսի ծառայ Տէր Ղազար Կաթողիկոս առաքելական Էջմիածնի եկեղեցւոյն Քրիստոսի, և յաջորդ սրբոց Առաքելոյն Բարթուղիմէոսի և Թադէոսի, և մեծի Հայրապետին մերոյ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին. և ծայրագոյն Պատրիարգ Վաղարշապատու քրիստոսահիմն և աստուածա-կառոյց երկնահանգէտ և տիեզերական սրբավայրէա-ճեմ և քրովբէապար, աղբիւրաբուխ և աւե-տարանաքարոզ Աթոռոյս սրբոյն Էջմիածնի, և ամենայն Հայոց։ Յորմէ ժամանեալ հասցէ գիր օրհնութեան և նամակ պահպանութեան. Շնորհք առաքելական, և աստուածային բազմապատիկ օրհնութիւնն. և նախախնամական գթութիւնն ի վերայ տիրապաշտ և աստուածախնամ օրհնեալ ծագմանեաց քաղաքիս Տրապիզոնու. նաև Քի-րասոնու, Խրխալու, և այլ ամենայն գիւղորէից բոլոր թեմի. և վիճակի գործին. և ի մէջի գոյցին կառուցեալ և հաստատեալ սրբոց եկեղեցեաց և եկեղեցականաց մանկանց. սրբանուէր և երկնա-հրաւէր քահանայից, աւրաթագին խորհրդոյն պաշ-տօնօր աւագերիցաց. պերճազարդ և փառաւորեալ

զմա, եւ կամ որդւոյ փոխիցի. զի այնպիսին աստուածային հրամանին եւ մեր իշխանութեան լինիցին ներհակք, որ եւ ոչ մնասցի առանց պատժոյ: Իսկ կատարողք հրամանաց մերոց օրհնեսցին ի յԱստուծոյ. եւ ի սրբոյ Էջմիածնական Բանին Աստուծոյ, եւ ամենայն Սրբոց նորա, եւ ի մէնջ, ամէն:

Գրեցաւ աստուածարգական
եւ վեհափառ Կոնդակս
ՌՄԻԲ. թուին, ի փետր-
վարի մուտն, առ դրան
Սուրբ Էջմիածնի:

[Ձեռագիր Մատենադարանին Մխիթարեանց Վիեննայ թիւ 564։]

Սարգսի Պոլսէն մեկնելէն ետեւ՝ բազմաթիւ գրութիւններ (Դիւ. Էջմ.) ղրկուեցան իրեն, իրեն հետեւող մեծամեծներէն ու բարեկամներէն։ Եւ ինչպէս Սահակ Վ. Աբբահայր Մխիթարեանց Վենետիկէն կը գրէ 9 Յունուար 1773ին առ Սարգիս Արքեպ. տէր Պոլսէն անակնկալ մեկնելուն պատճառաւ "բարեկամք զերապայծառութեանդ տրտմեալ են եւ այլք զարմացեալ եւ ապշեալ..."։ 14/25 Նոյ. 1772ին ի Վէզիր խան գրուած նամակի մը մէջ՝ իրենց ցաւը կը յայտնեն անոր Պոլսէն հեռանալուն եւ իրմէ զրկուելուն համար եւ յաջողութիւն կը մաղթեն հետեւեալ ստորագրողներ. "Մարտիրոս մահտեսի Յակոբ Հովուեանց, Պօղոս եւ Զօրան Պետրոս, եւ Գաբրիէլ, եւ Աղէքսանդր, Նիկողոս, Միքայէլ, Աբրահամ. Հաճի Տատ, փոքրիկ Մկրտիչ, Յօհաննէս Նազար Պէկզօղեան, Յարութիւն Հովուեան, Թովմա, Յօ-

Հաննէս եւ Ընտան Սարգիսեան, եւ կը հաղորդեն եւս «Քէօթահիայու տեառ Յօհաննէս վարդապետին» Հոկտեմբ. 6ին եկած նամակու զրկած ողջոյնը։ Սոյն Տէառ Յովհաննէս Վ. 1764ին Կարնէն Կուտինա եկած էր, եւ հոն կաթողիկէ վարդապետութիւնը քարոզած (Տաշեան, էջ 991)։ Դարձեալ 18/29 Նոյ. 1772ին ի Կուրուչէշմէ գրուած նամակին մէջ ստորագրողն Պետրոսյա-կը յայտնէ մեկնելուն համար, եւ ներողամտութիւն կը խնդրէ գիրքը վշտացընողներուն համար։ Նոյն նամակին վրայ ստորագրած է նաեւ „Alessandro Mighirdici di Pietro" որ Պետրոսին որդին կ'երեւայ։ 8 Դեկտ. 1772ին ի Կ. Պոլիս «Պետրոս աղի Զաքարիա» եւ «Պետրոս աղի Մուրատ» կը հաղորդեն ի մէջ այլոց թէ «Ազնուական Աբրահամ աղան եւ Սրապիոն աղան խուլեկանք բազում՝ սիրով ողջոյն մատուցանեն։» 22 Մարտ 1773ին ի Կ. Պոլիս աբքունի փոխերանոցի մէջ կը գրէ «Գալուստ մարքարեան» Սարգսի դրամներուն փոխադրութեան մասին ի ձեռն «Փեթրոս Զաքարիայի»։ 3 Ապր. 1773 ի Կ. Պոլիս «Պետրոս աղի Զաքարիա» կը գրէ դրամներու փոխադրութեան մասին, եւ թէ գրքերը Վենետիկ կը ղրկէ արկղով։ Կ'ողջունեն. կ'ըսէ. «Աբրահամ աղան եւ Սրապիոն չէլէպին, Պատուելի Սեդրոսեան աղայենք, եղբայրս Յակոբ Աղան, Մուրատեան Պետրոս աղան եւ Ընտոն աղան ...»։ 14 Սեպտ. 1772 ի Կ. Պոլիս գրուած նամակաւ «Միքիթճանեանց Մկրտիչ» կը պայմանաւորի Սարգսի Հեա, որ վերջինս «զՄար-

կոս ավրէլիոսի գյառաջուց Հայկական տպա-
գրեալն վերաթարգմանէ եւ ի փռանկոսան
տպագրել տայ.

Բայց ամենէն ընդարձակ եւ հետաքրքրական նամակը գրած է Յարութիւն Պետանեան, Սարգսի ձեռնասուն աշակերտը, զինքը փոխցինողը, եւ անշուշտ բժիշկ Պէտան պէյի պապը («Հանդ. Ամս.» 1896 էջ 47), որուն մէկ նամակն ալ հրատարակեց Տրդատ Եպ. Պալեան («Արեւ. Մամուլ» 1905, էջ 465—8). Պետանեան մեր այս նամակին մէջ կը ստորագրէ Սարգսի Պոլսէն մեկնելէն ետեւ անցած դարձածները։ Այս նամակն ամբողջովին կը հրատարակեմ։ Առաջին նամակը Բասենցի Յարութիւն Արքեպ. ին է, գրուած Յարութիւն Պետանեանի ձեռքը, եւ ստորագրուած Բասենցիէ, զոր նմանահանութեամբ կը դնեմ։ Երկրորդը նոյն թղթին վրայ իբր շարունակութիւն գրած է Պետանեան 28 Հոկ. 7 Նոյ. 1772 առ Սարգիս Արքեպ.։ Իսկ երրորդը նոյնպէս Պետանեան գրած է նոյն թղթին վրայ առ Յովհ. Վ. Նուրիճեան։

Մնձավ. Եւ Դենյ. Եղբոր խնոյ. յոդոդամ արտի. ամ-
կից մտօք սիրեցելոյ յիշէմ Տէրամ Սարգսի Արքե-
պիսկոպոսի Կեսարիոս հեղյալ միշտ ի տէր:

Զգուշեաւ Միսայական գիրդ ընկալայ զողջոյնով ի ձեռն իմ որոց մատչելի՛ մատուցի, յորոց զգարձ փոխարինին ընկալցիս աշա հանդոյր յարգանայ, իսկ սիրելի եղբայր իմ պատուական, բազում ցաւո

թողեր ինձ, ոչ՝ յարժանին վայր դիմելով. այլ մարմնապէսն անջատմամբդ, որոյ վասն մարմնոյին աղէք իմ, խորովի սիրտ իմ, ո՞ւր հովուես, ո՞ւր հանգուցանես եւն, արածեալդ ի շուշանս, թռուցեալդ ի բարձունս խնկաբերաց, եւ զի անդէր՝ աստ եղադի բաղձանաց ի տառապել զիս. խնդրեցի զքեզ, եւ ոչ գտի. կոչեմ, եւ ոչ տաս զձայն. աՀա երդմնեցուցանեմ զդստերս Երուսաղեմի՝ գրաւոր բանիւս, զի պատմեսցեն քեզ, եթէ խանդակաթ եմ ի սէր քո, զիր ուրեմն զիս իբրեւ զկնիք ի վերայ սրտի քոյ, եւ իբրեւ զմատանի ի վերայ բազկի քոյ։ Արդ՝ խնդիր իմ այս է ի յարգութենէդ, զի մի մնասցես յումեքէ աւանդականաց վիրաւորեալ, որոց փոխանակ աՀա ես խնդրեմ զներումն. աղաչեմ անձեղ ի միտ զՅիսուսին զանոխութեան զնշան, որ յարազակէ Հրէից "արիւն զորա ի վերայ մեր եւ ի վերայ որդւոց մերոց", եւ ի կենդանարարական յաւազանէն ջրով՝ Պիղատոսի, ընկալեալ վիշտ ի սրտի ջրոյ եւ արեան, եւ ի ժամ առ Հայր պատարագելոյն՝ ի նշան անոխակալութեան՝ աղագաւ խաչելոյ՝ եՀան վաղվաղակի զարիւնն եւ զջուր. եւ զի պատուականութիւն քո աՀա մնացուցեր զմնացեալ կենաց՝ զուխտաւոր պատարագ, մի լիցի ախտաւոր սխալալութեամբ, աստի մաղթեմ ներել։ Նաեւ խնդրեմ զմշտնջենաւոր եկաւորութիւն զրոյց եւ զարդիւնութեան կացութեանց ծանօթութիւն։ Եւ առ ամիրայս միամիտս ուղղոյնդ թէ նէր գրոյն առ իս, եւ թէ որոց արժէ յատուկ գրով. այլ եւ պաՀանջեմ ի սիրոյդ թախանձանաց, զի յառակայէս զիր մի սիրոյ եւ օրՀնութեան՝ առանց ինչ զծանուց բանից՝ գրեսցես առ մաՀանեաի Պատարար ամիրայն, եւ առ իս յղեսցես. զի ես մնացից նմա. զայսօսիկ զէթ ի սէր նուաստութեան աշատելոյ կատարեսցես. եւ զաղօթս աստուածընկալ Հանապազ մատուսցես առ Տէր վասն իմ, ամ կարօտիմ միշտ, եւ լիցի անձն զերապայծառ պատուականութեանդ միշտ ի՝

ի ձեռն նոյն արանց՝ որովք գու, եւ նոցաւանն՝ յոր գու շուեցեր. ժամանակն մերձ ընդ մերձ, երբ աստ-ճինն եղանէ նաւ. բայց յոր նաւահանգիստ եղանելն ամեւկութին անդ յայտ. զի յաջողման պատրաստ նաւու ալրաւէ ուր եւ գնայցէ նաւն, որ ողջանեայց մեծաւ փրով, եւ ընդ անձապարելց հիացաւ. որոյն գժուարացաւ եղանակ եղեց, ուստի Պատրիար-քարանն եւ ի Կոստանդնուպոլսին թագաւորի առ շատ-յոյ աւիթ, եւ քարոզէ թէ անդրէն ի Պրուսայ գնալոյ եմ, զի մնահուա յօհաննէս վարդապետ հարեզոյն իւր ընդ իւր է, ոչ կարէ գտանել զներոյ անձնամամն. Տէր յաջողեսցէ զգնացս իւր. զնի որոյ կարի զժուարանդոյ բաւանդութեանն։ Այսպիսին գիրն թղթոյ հայցագործին հօգւոյն եւ առ նաւ վաճառ էր յառաջագէս ոչ էիր գրեալ ողջոյն, որոց միաբանութեան միայն այն է։ Նաեւ զքառասուն աղաչին իւկոյն Պօղոսն եւ թէ յղէիք առ ի ոչ վա-ճառել զերդ այլոց ի Յեւայ լիշատակ իւրեանց։ Իսկ եւ առ ոչինչ համարեալ պարագայսն իմ ոչ էիր յառաջ ձեռամբդ առաքաքեալ զգիրդ որ առ իս, ոչ գիտես, զի ողջունեալքն նախ գտարագրու-թիւնն կամին անտանել ի հաւատութիւն, զոր յաւահեալ ոչ գանց առնուլք աղաչեմ։

Եւ արդ մանկանցիկք աստուածեան յանձուրդ հանեալ են զքէն յուր, որպէս թէ ի քիսա եղեալ քո յեկեղեցի իմ Յունաց քարոզեալ եւ. զոր ոչ հաւատամ։ Այգամ վարդապետն եկն յԽամինիոս։ Աւետիքս վարդապետն եկն յԱդրիանիսու, եւ ողջունէ գքեզ, որ գարձաւ ի տեղի իւր անդրէն։ Փոքր որդի թագաւորի անդուզնա ուղթան մահա-մեա անուն մեծամեալ հասակաւ՝ ի ծաղիկ յաւէն մեռաւ յեկգան հիւանդերի։ Յաւրրաթի գուք անցիք ի նեղուցն, ի նոյն աւուր եւ ոգի՝ յաւելի Պարսն Կուռթի Զմիւռնացւոյ ի մարմնոյն, եւ ի շարաթի թաղեցաւ։ Տակաւին Աւետէր ողջաւն ի բանտի է։ Նաեւ Սարգիս Խոյլիփեալի որդի Անտոն

ողջոյն Համբոյր ընծայէ սրբազան աջոյդ, եւ որ լինիցի ի ծանուցանելդ ինձ, ի ձեռն իմ ընծայ առաքելոյ է մեկ պատուական մուճէնէմ Թէո-տիմէլ, ինչըն քրիստոնեի սորայ, զու եթէ այլ զու-նով ախորժիս, գրեա ինձ։ Տէր Խաչահակս, Պա-լատու Տէր Գրիգորն, Տէր Փիլիպպոսն, ախրայու Գէորքն, ախրայու Տէփլէթն ընդ որդւոյն, ախրա-յու Ռուփայէլն, ախրայու Պօղոսն Պետանեան բղձիւ, Զօհրապեանքն բոլոր, Պարոն Գալուստն, յառակայեան Պարանցի Տէր Գէորքն քո, Սան-տալճի մահտեսի Ստեփաննոս (որոյ անեք Տագէս ամիրայն ողբականն ատարարանութեանս ասացեալ է, Հա՛յ վախ. եթէ գերիս ասուրս գինի չունայն խմանայի. ի Պաղտէն ուրՀանդաւիսն դարձու-ցանէի, զիւրան առ եւս Հանդարտ Հանդուցանէի յապահով անգիր) Պարոն Մկրտիչն Գաբրիէլեան (որոյ ի տան եմ այժմ. որ աղաչանօք խնդրէ ոչ զանց առնուլ զՆ.ւբելեան ապարգրութեան որ մի յուսալ կատարելն. զոր եւ ես աղաչեմ) Պարոն Միքայէլն իմ յոյժ մեծաւ ախրով. Մուրատեան Պաղտասար եւ Գասպար ամիրայքն, եւ Ռուփայէլ աղայն որդի Պաղտասար ամիրային, եւ Յարու-թիւն չէլէպի Թոռն (որք կալիսականին պարտոյին փարթութեան) եւ այլք բազումք, որոց ընաւքն բղձիւ փափագանօք՝ կարօտիւ՝ բաղձանաց ցանկան Համբուրել զաջիդ ներբանս. եւ Կիւմիւշխանցի պարոն Ստեփանին եւս յառակայէս ողջոյն գրեցես, որ կարի խնդակիթ է ի ներ քո, եւ Համբոյր նուիրեաց բղձիւ մեծաւ, զոր ճանաչես լինել որդի եկեղեցւոյ։ Սոյա անմնեքին եւ Յոհաննու Վար-դապետի սիրելի աշակերտին քոյ ընծայեն ներ եւ Համբոյր կարօտի. եւ ընտանեօք Համանգամայն արտասուօք բազումս կարօտանելեւ որտիւ Համբոյր գարշապարաց նուիրեն։ Ն.յլ եւ Վ. Հ. Նանանեանն, եւ Վ. Հ. Գանիէլն Համբոյր ընծայեն։ Երթէ Համեալ իցես ի սուրբ Հռոմ ցանկային, մասնա ոյես

հնամեայ բերանոյս փափաքանաց ճառամատեան բանիւք Վ. Հ. Գէորգ վարդապետի, որում արքահար եմ յոյժ յոյժ։ Զախտական ներգածից ոչ ինչ էր գրելոյ արժան, վասն այն գգրիչս ընդ ականջեօք իմացութեան խնայեցի. զի յանձնեցին Տէր Մարկոսին գրել առ որդին, առ ի ընդունել զնախիկին վճիռն ձեր. ոչ եւ ոչ։ Տեղւոյս կացութիւնն որպէս թողեր, այնպէս է անդանորցան։ Աղաչեմ անդրէն՝ մի ումեք գրեսցես զինանս, որ բացում բարեկամացդ է բան։ Զառժամս անձեզ բամբասելոց հասուցանել եմ պատրիարգ վարդապետն Տէր Յոհաննիսին, զի յամենեցունցդ պանիցն՝ յառաջուց ինքնին վճարել է, այժմ էառ 280 դշն. եւ բարձանք աւերակներն որքան որէ յանձնէ՝ մինչեւ բարեկամացն եւս սկսան զարչէլ քիմք։ Ամենայն մահտեսի Յոհաննէսի կինն բաժանեցաւ առանց հանդիսաւոր խայտառակութեան, զաւակս այրն, եւ զդստերս կինն առեալ։ — Խոկ եւ զայս ծանիր, զի ի Հոկամ. Խէչին ի որսոյ գրեալ էր առ քարդ արկղատակ յոհաննէան, եթէ զմտութիւն ինչ անկեալ ի մէջ Նիփրեմին եւ Հալէպու առաջնորդ Գաբրիէլ վարդապետին, զոր բազումս բազում կերպիւ տագնապեալ Նիփրեմն, այս ի գիշերի թիւփէկով ապանել առեալ է զԳաբրիէլ Վ. Ն. զլուխոյ ոչ լիցի։ Այլ եւ այսօր կինքն յանձնեայց մահտեսի Պաղտար ամիրային յառաջագոյն գրել առ անբաւթիւնդ բացում ճարտարութեամբ խօսեցեալ, զոր ընկալցիս անդրանութեամբ, եւ հաստատեսցես մանրամասն։ Խնդիմաւ առաջնորդութիւնն ձգեալ զմի մասն եւսն երկան Պօղոս Վ. Ամեցութն, այսինքն զՄուհամմէն, զՔիրմոս, զՊալը-քէօէր, եւ զարբանեակս ազգին, զուցէ կացցէ զամիս 3, զոյգս մի բան միայն ունիս ճանկայ մերձ ժամանակն ի Ա. Վ.էն կենդանի այնի։ Վերայ Պետրոս Արքայի խնդրան Պետրոս առաքելոյ պատկերն ամենեւին անդրանցանելի

գրգռատախտան՝ զոր աՀա ընկալցիս զայս՝ Համարեալ եւ զիս երկրորդ մաՀտեսի Մուրատ եւ յերկուց միակ դիր։ Բաղում կարօտ ի նմանէ, որպէս եւ յինէն, մեծաւ սիրով Համբոյր, եւ խնդիր աղօթից եւ մշտնջենաւոր եկաւորութեան զբոյզ բաղձանս եւ խնդիր, զոր եւ ես երկրորդեմ. աղօթէ առ Աստուած վասն Հանդստութեան քոյ, զոր եւ ես ոչ մոռանամ. փափագումն անդրէն տեսութեան քոյ, որ յինէն նոյնպէս. յաւ կենդանւոյ վասն բաժանման առ ի քէն, որում մեծապէս կցորդիմ. միշտ յիշատակ քո ի բերան իմ, յոր զանցանեմ քան զնա։ Արդ զորս ողջունեալ ես ի գրիդ որ առ նա, ամենեքեան բաղում սիրով Համբոյր ողջոյն նուիրեն. բայց զերկուս անուանս մոռացեալ ես գրել նոցա ողջոյն, այսինքն՝ պարոն Սեփերին եւ խօճայ Նորկիրին, նոքա եւս զուրբ ողջ. ցանկան Համբուրել. ամենեքեան բնտանիք քո ողջ եւ առողջ են. մանկունք եղբօր քոյ ի զարգացումն են, եւ որՀնութեանդ կարօտին. բոլոր բարեկամքդ Հանդարտ են՝ որպէս անեկալդ էիր. Սեղմի անուանն քո առ ի եղբօր քոյ, զմխիթարութեան բան ոչ անխայեմ ի նմանէ, եւ խիտ առ խիտ գնամ ի խանութն միշտ։ Սանկոյն խնդրեմ ի քէն, զի աՀա յորոց առ Հայր Վարդապետն գիր առաքեցաւ, եւ վասն որոց խնդիր եղեւ կամ յառաջ գիր եւ կամ յատուկ ողջոյն արխութեամբ վճարել. տայցես զՀամայնն ի տեսցումն բարեաց Համբաւոյ միաբանեաւորութեան եւ ի բարբոքումն սիրոյ սիրաՀարեցոյ, եւ մի զրաւութեամբ մոռացութեան կամ քինախնդրութեան զչիջումն Համբուրել. եւ յամենայն գիրս՝ որ ի բերանոյ Հայր վարդապետին, գտանուկ ձեռին իւրոյ ստորագրութիւնն զնել տացես. եւ այս բաղձմութիւն ի ձէնջ առաքելի գրեանց Հարկաւոր լինելն յառաջնում նուագիս է, եւ ոչ միշտ, զի այս ի կամս ձեր է։ Մի ինչ քամաՀանաց եւ վրէժխնդրութեան բանս գրել ձեռն արկանիցէք

եղեալ գրանս անբանից կարող զձեզ փանելոյ, որով առաւել պարծին, քան պատուանին. այլ լինելով անյիշաչար թողուլ անյուշ. որք ահա չինէին բառ ինքեանց, եւ չինեցին առ յապայն անշէջ բոցով խղճի մտաց, իւրաքանչիւրքն կատակածեալ մի թէ ես իցեմ, մի թէ ես իցեմ. այսինքն ինքնանախատ կշտամբութիւն պապանձմական ամօթհարութեամբ առաւել է քան զքրէական պատիժ՝ զոր կրեն. զմնացեալն խոհեմութիւն քո իմաստասիրեսցէ։ Եւ ցոյցս ոչ մի ինչ վատաբանութիւն, այլ հռչակ բարեաց, անէծ պատճառ եղելոց, փափաքումն բղձալին անուանն լոյս, եւ որք կսկծանաց վասն բամբասման առնեն ամենայն, այլ զինչ քան զայս մեծ բարերարութիւն. իսկ եթէ անարգութիւն ինչ ի թշնամեաց այսուհետեւ չնչինցի, իսկոյն գրեմ ձեզ. զի մինչ չիցէ առաջի բանակ թշնամեաց՝ ապստամբչաց ներկայութիւն, ընդ որ լինի մարտիւ հանդիպել. ահա զայրացեալ ոչ համարձակեցայ գրել հայր վարդապետիս, զոր որդեացս եւ ծառայեցս, զի ընդ ձեր եւ զբարեհամբաւութեան ձերոյ կամիմ անմեռ կենդանութիւն։ Այլ եւ ամենայն ամբողջ, չէլէպիք, քահանայք, եւ բարեկամք հայրըն եւ ձեր ընծայեն քեզ, զորոց անուանս եթէ գրէի, ոչ բաւէր հնգատասանին թղթոյս. յատկապէս Տէր Գէորգն, Տէր Փիլիպպոսն, Տէր Ստեփանն, Տիրացու Գէորգն, թողում զայլս, զի եւ ժամանակն ահա ոչ ներէ. ամենեքին զառ ի գիրն քո յատուկ, եւ զհայր վարդապետին իւր առաջադրութեամբ մի պահպանեցուցանել աղաչեմ. զի եւ ես այնու մխիթարիցիմ. եթէ համայն գրեանս առ իս հասուցանել հաճիք, չէ ընդունայն, զի փութով հասուցանեմ ի տեղւոջ, զոր այլոց չէ փոյթ. եւ առ այժմ ոչ էր հարկաւոր այլ գրելի. այլ ողջ լեր ի Տէր Յիսուս ընդ բազում ժամանակս բոլորեալ ամաց ի հրճուանս նուաստութեան իմոյ,

որ եմ՝ յետին ամենեցուն, բայց ոչ ի սիրելւոյ գուրգուրելոյ իմ ի Քրիստոս.

Յիսուսի ծառայ անպիտան
Նուաստ Արութիւն աբ Պետան.

$17\frac{\text{ԻԵ}}{11}72$

ի Կոստանդնուպօլիս

Հասցէ ի ձեռս Տեառն Սարգսի Ճէպոյեանի Արքեպիսկոպոսի Կոստանդնուպօլսեցի Սամաթ թաղու Բաղչէկեցելոյ քաղում՝ քաղաքաթեամբ:

Գալլիական նաւու
Գուցէ ձեռամբ Սամուէլ վարդապետի

ի Մարսիլիա, կամ ի տունն Հռոմ
եւ կամ ուր եւ իցէ:

Սարգսի Կ. Պոլսէն մեկնելէն ետեւ՝ իրեն հաւատակից բարձրաստիճան եկեղեցականներէն երկքն անոր ետեւէն գացին։ Առաջինն եղաւ Սամուէլ Եպ. Երզնկացի, Առաջնորդն Պրուսայու, որ 4 Դեկտ. 1772ին փախաւ գնաց Հռոմ, ինչպէս տեսանք։

Այնուհետեւ մեկնեցաւ Գրիգոր Պատրիարք Պասմաճեան։ Ասոր վարուց մասին հետեւեալ տեղեկութիւնները քաղած եմ, եւ վերջնականապէս ստուգած անոր մահուան թուականն ու տեղը։

Գրիգոր Ն. Վ. Պասմաճեան կամ Աստուածատրեան, Պատրիարքն Կ.Պոլսոյ, ծնած 1715ին ի Կ. Պոլիս, էր թոռն Սամաթիոյ «Ս. Գէորգայ եկեղեցւոյ Աւագերէց Տէր Մովսէս քահանայի», որուն եղբայրն էր Տէր Մարտիրոս քահանայ, եւ ասոնց սերունդէն մէկ դարու մէջ

եօթը քահանայ յառաջ եկած էր, ինչպէս կը գրէ ինքն Գրիգոր Վ. Ինքնագիր կենսագրութեանը մէջ, զոր գրած է 1784ին իջուածք ունենալէն ետեւ ի Վենետիկ եւ յԱնքոնա մինչեւ 1789, դժուարընթեռնլի գրով մը։ Այս մի միակ ինքնագիրը կը պահուի ի Կ.Պոլիս Անտոնեան Մխիթարանութեան դիւանը. Բաբգէն Վ. Կիւլէսէրեան հրատարակեց զայն Փարիզ «Յիշատակարան», 1905—7։ Գրիգորի հայրը, որ հաւանականօրէն (Տէր) Աստուածատուր կը կոչուէր, կ'ըսուէր «Պասմաճի օղլու» (Սարգիս դպիր Սարաֆ Յովհաննիսեան, Ձեռագիր)։ Գրիգոր 22 տարեկան Երուսաղեմայ վանքին միաբան ըլլալով՝ աշակերտած է Երուսաղեմի Թորոս կամ Թէոդորոս Վ. Կորդուացի (Մշեցի, Խորենացի. Հզնացւոց) Պատրիարքի (1752—1761 Սեպտ. 6 †)։ 1750ին ուխտաւորներ բերելով Երուսաղեմէն ի Կ.Պոլիս, հոս մնաց եւ Եւդոկիա նուիրակութիւն ընելով դրամ հոն ղրկեց («Յիշատակարան», էջ 207)։ 1757ին Թորոս Պատրիարքն Երուսաղեմի զինք Կ.Պոլսոյ փոխանորդ՝ վէքիլ անուանեց, եւ Թորոսի մահուանէն ետեւ՝ յաջորդը Կարապետ Վ. Գանձակեցի (Երեւելցի) (23 Մարտ 1762—1768 Յունուար 24 †) նոյն պաշտօնին մէջ հաստատեց զինք 14 դեկտ. 1762 թուակիր թղթով (անդ, էջ 209)։ Գրիգոր Վ. 1758ին կամարականացի Մահտեսի Ալեքսանեան Պետրոս Ամիրայի եւ Ղազար Ամիրայի միջնորդութեամբ, որոնք արքունի վաճառականներ էին, յաջողեցաւ

հրովարտակ մը ձեռք բերել, որով Երուսաղէմի Ս. Աստուածածնի գերեզմանին վրայ Հայոց ունեցած հին իրաւունքը հաստատուեցաւ (Ա. Ա. Ալպօյաճեան, «Բիւզանդիոն», 1905, թ. 2734)։ 1762ին ի Կ. Պոլիս գումարեալ ժողովը թէպէտ զինք Երուսաղէմի Թորոս պատրիարքի յաջորդ ընտրեց, սակայն ինքն ամենայն հաստատութեամբ հրաժարեցաւ (անդ, էջ 87)։ 1763ին գում գալով, Մայր Եկեղեցւոյ դէմը՝ Երուսաղէմատունը շինեց (էջ 89), 1762 Մայիս 11ի հրդեհին Մայր Եկեղեցւոյ շուրջն այրած տներուն հողը գնելով։ 1764ին Մայիս 13ին ի համագումար ժողովի Յակոբ պատրիարք Նալեան հիւանդութեան պատճառաւ հրաժարելով՝ ամենուն հաւանութեամբ վերջապէս զԳրիգոր Ծ. Վ. ընտրեցին պատրիարք, որ ամենայն սաստկութեամբ ընդդիմանալէն ետեւ՝ ստիպուեցաւ հաւանիլ պատրիարքին եւ ժողովրդեան թախանձանաց. Մայիս 15ին Բ. Դուռը գնաց, ու պատրիարքական խիլան հագցուցին իրեն (էջ 232)։ Իր պատրիարքութեան ժամանակ շատ նեղութիւններ եւ զրպարտութիւններ կրեց, զոր կը ստորագրէ «Յիշատակարանին» մէջ. յանդիմանուեցաւ հակառակորդներէն՝ թէ «դու ես որ զազգդ բոլոր լատինացուցեր եւ հնազանդեցուցեր եկեղեցւոյն Հռոմայ եւ Հայրապետին նորին»։ (էջ 153) թէ «զի իւր զՍարգիս (Ս—ր—ֆէ—ն) եւ զՍամուէլ (Պէ——յ——) եպիսկոպոսունս եւ ինձ զնոսա առաջոյ յարեւմուտս՝ տալով նոցա եր-

կուսին ըՃ (= 800) քսակ փողս հարկադիրս լինելով ի վերայ նոցա թէ գնացէք եւ ի յանդանոր գպրտուսնս բացէք եւ սահմանեցէք որ ես տասի յորդորելով մարդիկ տպագրեմ տասի առ ձեզ վասն ուսնելոյ զլատինականս», եւ թէ «զբոլոր զազգն իմ եւ զժողովուրդս հնազանդեցուցեալ փափին Հռոմայ եւ հեռեւիլ նմա։ Աստի բոլոր ժողովուրդք Հայոց ընթանան ի յեկեղեցիս լատինացւոց» (էջ 238)։ Պատրիարք ընտրութեան ժամանակ խռովացան իրեն որ անմիջապէս եպիսկոպոս ըլլալ ձեռնադրուի, սակայն երբ 1767ին ուզեց Էջմիածին երթալ, եւ Սիմէոն կաթողիկոս իւր թղթովն խոստացաւ մինչեւ Կարին եւ նոյն իսկ Կ. Պոլիս գալ ձեռնադրելու, Գասպար ամիրայն հակառակեցաւ. Սիմէոն Կաթող. ալ թոյլ չտուաւ որ Պոլիս եպիսկոպոսներէն ձեռնադրուի (Համառօտ՝ Աղանեանց, անդ՝ էջ ՃԻԹ ՃԼ եւն։)

«Ցիշատակարանի» մէջ կը յիշատակէ նաեւ հետեւեալները։ 1765ին Տրապիզոնի առաջնորդ էր Երզնկացի Ք---ւ--ն կոչեցեալ Աթանաս Եպիսկոպոսն, որ էր «այր սակաւահաւատ եւ ամբարիշտ», որմէ շատ կրեց Գրիգոր (էջ 151)։ 1765ին «լիրբ եւ անհարկի Ք--Ճ--լը կոչեցեալ Սանատալճի Սարգիս...» ապստամբեցաւ. Ալնորօղ։ 1768ին Տիպածի օղլու կոչեցեալ Սարգիս երէցն Սամաթիոյ եկեղեցւոյն քահանայն «բոսահակեալ... քրթմնջէր» (153)։ 1769 Դեկտ.ին «Դուրու պալըխ օղլու Երամ՝ ասա քրիստոնեայն» մատնած եւ զրպարտած է զԳրիգոր (153)։

1770 նոյ. ին «Մովսէս ամէն կարգաւոր միաբան ի աղանդս այլազգեաց„, շատերը լեզուագ արեցուց, կարծելով թէ Գրիգորն է պատճառ (153)։ Այն ուրացեալ Մովսէսին դէմ՝ տաղաւոր մի գրած է «Բանաստեղծ տիրացու Մինաս, ի ծնէ կոյր, ի կարգէ մուրացողաց„ (Սարգ. գալ.)։ Նոյն տարին Պոլիս կը գտնուէր ճռ—ճռ— անուն Սեբաստացի վարդապետ փարդապետեան, առաջնորդն Սեպուհոյ լերին, «այր սուրբ և անձնանէր„, որմէ շատ կրեց (154)։ Այս վարդապետ Վ. կը գրէ Էջմիածնայ մէկ ձեռագրին յիշատակարանին մէջ. «Թուին ՌՄԻԲ (= 1773) յուլիս 23. ես մեղապարտ վարդապետ Վ. երկրէն Սեբաստիոյ, աւելածու սուրբ Լուսաւորչայ գերեզմանին, որ ի լեառն Սեպուհոյ, Սամաթիոյու Գրիգոր պատրիարքին աքսորս առաքեաց զիս ի ծովապատ անապատն Լիմոյ„ (Հ. Ա. Էփրիկեան «Բազմավէպ„ 1898 էջ 515)։ 1772ին «Թոխաթցի ճո—ռն ողլու կոչեցեալ Յարութիւն եպիսկոպոսն, ատեցեալն և բանադրեալն ի Սիմէոն կաթողիկոսէ„, Պոլիս եկաւ, որմէ շատ փիշտ կրեց Գրիգոր (154)։ 1772ին Յակոբ պատրիարքին աշակերտը Գեորգ Վ. Սամաթիոյի մեռաւ, և ժառանգները դատ բրին պատրիարքին դէմ (154)։ Նմանապէս Բալուցի Մանուէլ երէցն և իր երրեամ գործակատար Ակնցի Աբրահամ իր վրայ այլևայլ ամբաստանութիւններ բրին, և թէպէտ Մանուէլ աքսորուած էր Յակոբ պատրիարքէն, սակայն Գրիգորի ժամանակ Պոլիս եկած էր, և Սիմոն ամիրային սատիկեր է զԳրի-

գոր, որ Մանուէլին ներէ եւ դարձեալ միլոն տայ։ Աբրահամ Եպիսկոպոսն Ըստապատցի, որ Սինէօն կաթողիկոսի կողմանէ Զմիւռնիայէն Կ. Պոլիս եկած էր, եւ կաթողիկոսը կ'ուզէր զինք իրեն փոխանորդը ընել, Գասպար ամիրան էր, որ Աբրահամի աքսորման հրովարտակը հանել տուաւ, եւ Հրամայեց որ զԱբրահամ Խակիւտար ձաշի հրաւիրէ, խմցընէ, եւ յետոյ պատրաստ չ----չին յանձնէ, որ զինք տանի։ Այս առթիւ կը յիշէ Գրիգոր, Ակնայ գիւղէն Լուսաչէնցի Սահակ Վ.ն եւ Արքեպիսկոպոսն, իբրեւ Պատրիարքք Հայոց Կ. Պոլսոյ (1707 Յունուար 22—26 Սեպտ., վերստին 30 Դեկտ. 1708—1714) որովհետեւ կաթողիկեայ եղած էր, կէտիկ փաշայէն անցած ժամանակ՝ Հայերը պատուհանէն "թափեցին զգարշութիւնս աղաւաղիչ ի գլուխ նորա. (187)։ Դամանակս կ'ըսէ. "Յովա-նէս պատրիարքն Կոստանդնուպոլսոյ Բաղիշեցի, յարեան ի վերայ նորա ի մէջ յեկեղեցւոյն ուսերօք եւ բրօք, վասն ձանաչելոյ նորին զճշմարտութիւն եւ հետեւելոյն նմա, որ ոչ սակաւ զաղմուկս յարուցին եւ նախատական բանս եւ հայհոյութիւնս խօսեցան եւ այնքանս որք կամէին ի կենաց հանել զինքն. (189)։

Իգնատիոս Եպս. Արաբկերցի, կաթողիկեայ, իր մէկ գրութեան մէջ կ'ըսէ Գրիգորի մասին. "Զաքարիա Վ. Նուիրակին Էջմիածնի... զնոյն սրիկային, որք էին հակառակք Յակոբ Պատրիարքին, յարոյց եւս ի վերայ Գրիգոր

Պատրիարքին, որք երբեմն զփոյթ խնդրէին, եւ երբեմն ի վերայ ուղղափառաց զՀալածանս յարուցանել գրգէին, նա եւս առաւել ախտացեալք ի մոլութիւնս այլեւայլ բարուրանս յօդէին ի վերայ նորա, եւ քանիցս անգամ արզուՀալ ետուն ընդդէմ նորա՝ ասելով, թէ փոխանակացեալ է, եւ կամի զժողովուրդն բոլոր կաթոլիկ առնել։ Եւ այսու ոչ շատացեալք այլ եւս քան զեւս առաւել խստացեալք ի չարութիւնս, զբանս անօրէն բարբարանաց յօդեալ, արզուՀալ ետուն վերստին, թէ սա ի մանկութենէ տաճկացեալ է, եւ այժմ քրիստոնեայ է եղեալ, վասն որոյ յամենայն կողմանէ անձամբ մեռցեալ կամու իւրով Հրաժարեցաւ ի Պատրիարքութենէն, ելեալ գնաց ի Կիպրոս, եւ անտի ի Հռոմ, ուր ընդունեալ Հօրն, եւ զմարմինն Հանգստութիւն գտեալ պապաՀովացաւ։ Եւ այսպէս զգուած՝ 1772 փետր. 2ին. ՊՀ. օրբ. Պատրիարքական եկեղեցին ժողովք ըրած է, Հրաժարելով վեց ծէժմաճաֆեոէ, եւ Հրաժարած է Պատրիարքութենէ։ Սակայն ներկայք որ Հազարէ աւելի էին, մերժեցին Հրաժարականը, եւ 200է աւելի կնքով մաՀզարական գիր տուին, զոր գրած էր իւր փոխանորդն ու Քէօթիւ Եւդոկիացի ախրացու Սարգիս, յորում կ'ըսէին թէ գոհ են իրմէ եւ իրեն Հակառակորդները պիտի ճնշեն. որով ստիպուեցաւ շարունակել, բայց անոնք իրենց խոստումը չպաՀեցին (անդ. "Ազդեցութիւն... առ ազգն", որ տակաւին տպուած չէ)։ Բայց երբ Սարգիս Արքեպ. Սարաֆեան 1772 Սեպտ. 29ին

դոլսէն փախաւ, ինքն ալ քիչ ետքը վերջնականապէս հրաժարեցաւ պատրիարքութենէ (էջ 233)։ 1773 Հոկտ. 22ին կիրակի օրն, Ս. Խաչի Գիւտի տօնին, Գասպար Ամիրայն զԳրիգոր կը կանչէ Առաքել Ամիրային տունը, ուր ամիրայք եւ խորհրդականք ժողովուած էին, եւ կ՚ըսէ Գրիգորին. «Դուն հրաժարիլ կ՚ուզես, մենք չենք ընդունիր»։ Սակայն Գրիգոր կը պնդէ իր հրաժարականին վրայ, եւ 1773 Նոյ. 28ին նոր ժողովի կը հրաւիրէ մեծամեծները. սակայն Գասպար ամիրան ժողովոյն նախընթաց օրը Գրիգորին կը հրամայէ հակառակ անոր ընդդիմութեան՝ որ ժողովին մէջ չերեւայ, այլ Խասգիւղ փախչի, եւ ինքն Ամիրայն ժողովին մէջ հրաժարման խօսքը կը բանայ եւ ընդունիլ կու տայ։ Դրան տրուելի յայտարարութեան մէջ Գրիգոր հրաման կ՚ուզէր, որ կարենայ ուզած տեղը բնակիլ, ինչպէս իր նախորդն Յակոբ։ Սակայն ամիրայն ջնջել կու տայ այս կտորը։

Հրաժարելէն ետեւ Գրիգոր իբր տասն ամիս Խասգիւղ փակուած մնաց. վասն զի Գասպար Ամիրայն թոյլ չէր տար որ դուրս ելլէ. եւ երբ Ամիրայն Վարդավառի տօնին վանք կու գայ, Գրիգոր մինչեւ անգամ Ամիրային ոտքն ինկած՝ կը խնդրէ որ թողու Երուսաղէմ երթալ. Ամիրան կ՚ընդդիմանայ. Գրիգոր կը խնդրէ Թէքիրտաղի առաջնորդութիւնը, կը մերժեն։ Իրեն կ՚առաջարկեն որ Էջմիածին երթայ՝ յուսացընելով որ կաթողիկոս կ՚ըլլայ. կամ Աժդարխան երթայ առաջնորդ ըլլալ։ Գրիգոր վերջապէս

կ'որոշէ որեւէ կերպով հեռանալ Կ. Պոլսէն եւ մեկնիլ ի Հռոմ։ Նոյն միջոցին Ափրոսի առաջնորդութիւնը ազատ ըլլալով՝ կը խնդրէ. կ'ընդունի, եւ 1774 Հոկտ. 26ին կը մեկնի Պոլսէն։

Սակայն Մուրատեան Գասպար Ըմիրայն թող չի տար որ Գրիգոր մեկնելու օրն իր ծերունի մօրմէն հրաժարական եւ օրհնութիւն առնու, այլ նոյն գիշերը "ի ձեռն Համբարձումին իւրոյ Խաչիկիւտարցւոյ" Զօղաննեանց օրհնեալ անէն ուղղակի փոքրիկ մակոյկ մը գնել կու տայ։ Ճամբան փոթորկէն ուղեւորներէն ոմանք կը խղդուին, եւ ինքն հազիւ հրաշքով Ափրոս կը հասնի։ ("Յիշատ." "Ողջունագիր... առ ընթերցողս գրուած 30 Մարտ 1789, տակաւին անտիպ։)

Բայց իր բուն որոշումն էր Եւրոպա երթալ. 11 ամիս ետքը նաւ մը գտնելով երկար ճամբորդութենէն ետեւ, հասաւ Վենետիկ 1776 փետր.ի մէջ, եւ հոն Հայոց եկեղեցւոյն մօտ տուն մը վարձեց։ Անկէ Ս. Ժողովոյն գրեց Հռոմ երթալու եւ Ս. Քահանայապետին ներկայանալու համար։ Ս. Ժողովը զինք սիրով հրաւիրեց եւ Հայոց օթեւանին մէջ իրեն համար մասնաւոր տեղ պատրաստել տուաւ. ինչպէս կը գրէ Հռոմէն Սարգիս Վ. Թէքիրտաղցի առ Սամուէլ Եպ. ի Պոլիս 1776ին (Դիւ. Ընտ.). "զՏէր Տիմոթէոսի սենեակն ծախեցին եւ ներկեցին եւ ի մէջն զկահս ամթոցս եւ վարագուրքը ի փրոփականտայէն. եւ մեծ մութփախը եւս իւր զատեցին"։ Ըստ Ն. ա. Մայիս 28ին Վենետիկէն մեկ-

նեցաւ Գրիգոր Հեռան առած Մխիթարեան վանքէն Հ. Ստեփան Վ.ն իբր թարգման եւ Գաղտասացի սարկաւագ մը, իբրեւ փոքրաւոր, եւ գնաց «առ ցանկալին ամենայն ազանց քրիստոնէից»։ Հոն ամենէն սէր եւ շատ յարգանք տեսաւ։ Հռոմ՝ մնաց իբր ինն ամիս։ Ս. Ժողովէն խնդրեց որ ծովեզերեայ քաղաք մը բնակի. թոյլ տրուեցաւ Անքոնա նաւիլ։ 1777 Ապրիլի մէջ Անքոնա գնաց, եւ հոն բնակեցաւ իբր վեց տարի։ Այնուհետեւ խնդրեց Ս. Ժողովէն որ Վենետիկ բնակի, վասն զի Անքոնա փոքրիկ հայ մատուռ մը եւ քահանայ մը միայն կար, եւ ինքը տեղւոյն լեզուն ինչպէս նաեւ լատիներէն չէր հասկընար եւ դժուարութիւն կը կրէր։ 1782ին (Ապրիլ 24ին՝ թուղթ Ստեփ. Արք. առ Յարութիւն Արք. Բասենցի, Դիւ. Անա.) Վենետիկ փոխադրուեցաւ, ուր Մխիթարեանց վանքը մնաց քանի մ՚ամիս (18 Մայ. 1782. թուղթ Ստ. Արք. առ Յարութիւն Արք. Բասենցի, Դիւ. Անա.), մինչեւ որ քաղքին մէջ յարմար բնակութիւն գտաւ։ Տեղւոյն Հայերէն, մանաւանդ Սեղբոսեան Յովհաննէս Մարքիզէն մեծ հիւրընկալութիւն տեսաւ։

Ընտանեան Հայոց Մատենադարանին թիւ ՌԳ գրչագիր ձեռագրին իբրեւ պահպանակ գրուած նամակ մը գտայ. այս նամակը գրած են «Սասամիզօլու» վեց եկեղեցեաց քահանայք եւ ժողովուրդք առ Նշանաւոր ամն Գրիգոր Վարդապետ, որ երբեմն Կ. Պոլսոյ վրայ առաջնորդ օրհնուած եւ զայն հալուած էր, եւ նոյն գրու-

թեան ժամանակ հեռու տեղ մը կը գտնուէր: Գրողները՝ 40—50 երէց, որոնց անկ էր բառ հին սովորութեան պատրիարքի ընտրութեան առաջին ձայնը տալ, կը ծանուցանեն թէ Զաքարիա պատրիարք գահընկէց եղաւ, որ զիրենք շատ չարչարած էր, եկեղեցիներու ծախուց պատճառ եղած, եւ արգելած էր այդ Գրիգոր Վ.ին՝ ինչպէս նաեւ Հոգեւոր Տիրոջ (Կաթողիկոսին) անունը յիշատակել: Քահանայք թէպէտ կ'ուզեն Գրիգոր Վ.ը դարձեալ պատրիարք ընել, սակայն այլք արդէն որոշեր են Երուսաղեմէն Կարապետ Վ.ը բերել եւ անոր անուան պատրիարքութեան պէրաթը հանել տուած են: Նոյն միջոցին Գրիգոր Վ.էն նամակներ կը հասնին, որուն վրայ քահանայք կ'ուրախանան եւ ժողովրդեան կամքին համեմատ Սուրբ Մանուկը (Ս. Գէորգ եկեղեցի Սամաթիոյ) ժողովք կը գումարուին՝ թէպէտ կ'ուզեն կանոնօք եւ օրինօք դարձեալ զԳրիգոր Վ. պատրիարք ընել, սակայն ժողովուրդը կը պատասխանէ, թէ արդէն պէրաթը Կարապետ Վ.ի անուան հանուած է, ուստի քահանայք պէտք են տալ ճարը գտնել: Իսկ Շէհրի Չէլէպի, Խոճա Սէֆէր եւ Խոճա Գասպար կ'աւելցնեն նաեւ՝ թէ Գրիգոր Վ. ծերացած է, անոր համար թող Կարապետ Վ.ին վրայ մնայ պէրաթը: Ուստի, կ'ըսեն քահանայք, թէ իրենք միշտ զԳրիգոր Վ. իբրեւ հովիւ կը նկատեն, եւ եթէ Պոլիս գայ, կենայ կամ Կարապետ պատրիարքի հետ միաբանիլ եւ ինքը միայն հոգեւոր կառավարութիւնը կատարել:

եւ կամ՝ դիւրութեամբ կրնան յետոյ դէպ—ը
Գրիգոր Վ.ին անուան դարձնել։

Յայտնի է արդ, թէ այս Նամակը որ Գրի-
գոր վարդապետին ուղղուած է, որ երբեմն Պոլ-
սոյ Առաջնորդ Պատրիարք եղած ըլլայ։ Թող-
տալով Գրիգոր Ա. (1526—1537) եւ Գրի-
գոր Գ. Խամեցի (ընտր. 31 Հոկտ. 1801—
1802 Հոկտ. 21) Պատրիարքները, որոնց հետ
ամենեւին առնչութիւն չունի Նամակս, կը մնայ
նախ Գրիգոր Բ. Կեսարացի՝ ըստ ընկալեալ ժա-
մանակագրութեան, որ պէտք ունի ուղղուելու,
1601—1610, 1611—21, 1623—26 Ա-
ռաջնորդ. Պատրիարք Կ.Պոլսոյ։ Յակոբ Երեց.
Եղբօրորդի Գրիգոր Վ. Կեսարացւոյ, Յիշատա-
կարանի մը մէջ (Թարգէն Վ., "Լոյս. 1906,
էջ 1184 ծան.) հակառակ ծանօթ հեղինակ-
ներու ժամանակագրութեան, կ'աւանդէ թէ
Գրիգոր 1633էն դարձեալ Պատրիարք եղած է
Կ.Պոլսոյ եւ 1636էն (եւ ոչ՝ 1635էն ըստ
այլոց) ի Կ.Պոլիս մեռած եւ թաղուած է ի
Ս. Գր. Լուսաւորիչ եկեղեցին Ղալաթիոյ։ Եթէ
այս չէ մեր փնտռած Գրիգոր Վ., այն ատեն
պէտք է որ ըլլայ մեր Գրիգոր Վ. Պասմաճեանը։

Նամակիս Գրիգոր Վ. Կեսարացւոյ վերա-
բերելուն նպաստաւոր պարագաներն են. 1. Իր
ժամանակ կար Զաքարիա Վ. Վանեցի՝ կրկին
անգամ Պատրիարք Կ.Պոլսոյ, որուն յաջորդ
կրնար Գրիգոր Կեսարացին ընտրել ուզել, երբ
անիկայ Կ.Պոլսէն հեռու (Պրուսա, Լեհաստան,
Կեսարիա) կը գտնուէր։ 2. Նամակին մէջ յի-

շուած Շէհրի Չէլէպի, խոճա Սէֆէր եւ խոճա Պապայար անուններն ունելի այս ժամանակի կը յարմարին, երբ կար Շահին Չէլէպի, եւ արեւելեան (ջուղայեցի) հարուստներ, որոնք «խոճա» տիտղոսն ունէին, որ յետոյ գրեթէ անհետացաւ ի Կ. Պոլիս։ 3. Անտոնեանց Մատենադարանին յիշեալ ձեռագրին կազմը 1655ին նորոգուած է, ուստի կրնար յիշեալ թուղթն իբրեւ աւելորդ կողքին դրուիլ։ 4. Սարգսի մը շատ կարեւոր յիշատակարանը կ՚աւանդէ (Հակոբեան Հ. Աստուրի, էջ 91, եւ այլոց) որ մինչեւ 1633 Զաքարիա Պատրիարք էր. «Գրեցաւ ի թուականիս Հայոց ՌՁԲ (= 1633) ի գիւղաքաղաքս Խուզիստանի, ի դուռն սուրբ Կարապետին։ Իսկ առաջին Զաքարէ վարդապետն մահցուլ արին սատանայօք։ Սուրբ Կարապետայ ՌԻՃ ղուռուշ։ Խուզիստանոյ. քահանայք եւ ժողովուրդք նոր գնեցին զեկեղեցին։ Աշխարհ մեծ եւ շատ աղմուկք եղաւ ի մէջ սոցա։ Ի թուականիս այսմիկ Կոստանդինոյ քահանայք եւ ժողովուրդն մահչալ եւ արժանի տեսան կեսարացի Գրիգոր վարդապետն դեսպանաց խաւուրեցին բերին Յոհան ոսկեբերան հայրապետին աթոռին արժանի արարին» (Տէրոյենց, «Հայաս.» 1847, թ. 27—80), որ եւ փոխճանեցաւ 1636ին (Արուանձանեանց Գ., Թորոս Աղբար, Բ. էջ 294, ուր կայ նաեւ Գր. Վ. Կեսարացւոյ կտակը)։

Գիտելու է որ Զաքարիա Վանեցւոյ յաջորդը Կարապետ չէր, ոչ 1623ին եւ ոչ 1633ին

պատրիարքութեան ժամանակ Գրիգոր Կեսարացի ծերունի կրնայ համարուիլ, քանի որ 1595ին վարդապետ ձեռնադրուած էր, որմէ մինչեւ մահը 41 տարի կ'անցնի, եւ հաւանաբար 60—65 տարեկան մեռած է։

Իսկ Պասմաճեան Գրիգոր Պատրիարքին ինկատ կրնայ հետեւեալները դիտուիլ. Զաքարիա Կաղզուանցի պատրիարքն (30 Նոյ. 1773—1781 Մայիս 20 գահընկէց) էր որ թէ կաթողիկեայ Գրիգոր Պասմաճեան նախկին պատրիարքին եւ թէ Էջմիածնի Ղուկաս Նորընտիր կաթողիկոսին անունը չէր ուզեր որ յիշուի, եւ իր անդթութեանցն ու գոռոզութեանը համար ժողովուրդը զինք գահընկէց ըրաւ եւ անոր պատրիարք դրաւ Յովհաննէս Համատանցին կամ՝ Պաղտատցին (2 Յունիս 1781—1782 Մարտ 23), որ Երուսաղեմայ միաբան էր եւ Պրուսայի առաջնորդ։ Նամակին մէջ յիշուած երեք ամիրաներէն միայն Գասպարի համար կրնանք ըսել՝ որ հաւանաբար Պասմաճեանի ժամանակակից եւ հակառակորդ Մուրատեան Գասպար Ամիրան ըլլայ։

Սակայն ասոր ալ կը հակառակի այն պարագան՝ որ Յովհ. Համատանցի ինչպէս նաեւ Յովհ. Խուլ չեն կոչուիր նաեւ «Կարապետ», եւ առջինը թէպէտ Երուսաղեմի միաբան՝ բայց Պրուսայէն բերուեցաւ։ Արդ, քանի որ Զաքարիայի մը յաջորդող ուրիշ «Կարապետ» պատրիարք մ'անծանօթ է, (թող Կեսարացի Կարապետ կամ Կրպօ աշխարհիկ քահանան, որ

յետոյ վարդապետ եւ եպիսկոպոս ձեռնադրուեցաւ, վասն զի տարբեր ժամանակ մը 1676—1689 հինգ անգամ պատրիարք եղած է, առանց Զաքարիայի մը յաջորդած ըլլալու.) կարելի է թերեւս որ նամակս ուղղուած էր Գրիգոր Վ. Պասմաճեանի։ Երկու դէպքին ալ նամակս կարեւոր ըլլալուն՝ ամբողջապէս հոս կը հրատարակեմ.

"Առաքելական վէմ եկեղեցւոյ. քահանայից եւ միաբան ժողովրդեանէ. հասցէ շատ կարօտով ողջոյն հօրն մերոյ սուրբ հայրն մեր Տէր Գրիգոր վարդապետին. առաջնորդ եւ խաչանց բանականաց. գլուխ եկեղեցւոյ. ախոյեան հաւատոյ. պարիսպ քրիստոնէից. եւ կարկիչ անհաւատից. հովապետ հօտին արիական. բարուն նաւելի. եւ ամենեցուն գովելի. շքեղաշուք շնորհալի. ի փառաց զարդուն նոր սիոնի. բոլորից անընչալի. եւ համայնից բաղձալի. գերամաքուր եւ ամենայն շնորհօք ի լի. բազմերջանիկ սուրբ հայրն մեր. տեառն տէր Գրիգոր քաջ բարունապետիդ.։ Ի հեռաստանէ իբր զկօտոյ մեծու փափաքանօք եւ ջերմեռանդ սիրով համբուրելով համբուրեմք զսուրբ գարշապարդ. եւ շնորհակալ եմք ի քոյին սրբութենէդ. եւ հարցանելով հարցանեմք զքեզ ի բարին։ Եւ թէ զմեր անարժանութիւնս հարցման արժան առնէք նա. եւ եմք ողջ հոգով. եւ առողջ մարմնով. ձեռամբ սուրբ աղօթիւքդ։ Եւ արդ արժանապատուի. սրբութեանդ ծանուցումն լիցի քեզ տէր վարդապետ որ Զաքարիայն՝ որ մանուկ եղաւ շատ նեղութիւն եւ չարչարանք եղեւ մեզ, որ լուեալ էք բազմօք՝ որ զեկեղեցիքն. շատ բառնալէն փողէն հանեցին. այպս ի մենէ պատրիարգ ուզեցին. մեր միտքն. ի մեր կամքն ի հրամանքն էր. այպս մէկ հեղէ ի հրամանուցդ առանն յիշելոյ

կան ըլլալուն՝ ամբողջովին յառաջ կը բերեմ։

«Տեղեկութիւնք վասն բանից ոմանց եւ արարմանց Հայոց, հաւաքեալք յամենայն ազգութեանց, գրեալ ծանուցում։

## Վասն առաջնոյն [illegible] է։

Հայք ի հասարակ դաւանութեան ասեն. մի անձն, մի դէմ, եւ միաւորեալ մի բնութիւն։ Ի վերայ այսմ բանիս բազումք խօսին զբազումս, եւ զանազանս։ Այլ թէ յինչ միտս առնուցեալ, ոչ է բացորոշեալ։ Այլ գինի յարեն եւ ասեն. յերկուց բնութեանց միաւորեալ մի բնութիւն. զոր ի բանին յայտնապէս առեալ. մի է բնութիւն։ Վասն որոյ մեք այսպիսի կարգացուք գիտել, որպէս ասացաւ։

## Վասն երկրորդին։

Եթէ Հայք ընդէ՞ր խափանեցեալ յիւրեանց տարեր յառաջ զդատապարտութիւն քաղկեդոնի ժողովոյն, եւ զտումարի որոյն Լեւոնի։ Առ այս ջանացին Հայք, զի հնարիւք, եւ պատճառաւ իմիք բառնայցեն զբան Նզովից. վասն որոյ բարձին։ Զի իբր կամեցողութեամբ դեսպանի Գաղղիացւոց եղեւ բարձումն. բայց միայն ի Կոստանդնուպոլիս, եւ զայն՝ բազում ահիւ եւ դողութեամբ վասն ահի Հասարակութեանց. եւ խառնիճաղանճ ժողովրդոց, զոր մեք ականատեսք եմք վասն անցից անցելոց։ Այլ ի յայլ տեղիս անխափան ասի այն բան Նզովից. զոր օրինակ ի յԷջմիածին, ի յԵրուսաղէմ, եւ կամ ի յայլ տեղիս ասեն մինչեւ ցայսօր։ Իսկ ի ձեռնադրութեան քահանայից ժամանակին զայն տեղ Նզովից անցանեն, եւ ոչ ընթեռնուն, որպէս ի յաւուրս մերում պատուէր տուեալ ձեռնադրող եպիսկոպոսին զայն բան Նզովից ոչ ընթեռնուլ, եւ ոչ յիշատակել, այլ՝ ան-

ահա նոր յանձն։ Այլ թէ եղեալ է, կամ թէ ոչ, զայն մեք ոչ գիտեմք։

### Վասն վեցերորդին։

Որ է վասն տաթեւացւոյն, զի ի գիրս ան-ուեալ, եւ ի ծերոց մերոց լուեալ, որ նոյն ինքն գրիգոր տաթեւացին է աշակերտ վերոգրեալ ամ-Հաննու որոտնեցւոյ, որ ի պատարագի նորա յի-շատակի, որոց զանուն երրեակ առնեին ընդ Յով-Հաննու Երուսաղէմայ Հայրապետի։ Իսկ եւ զայն միւս տաթեւացին, որ գրիգոր անուանի, որ իբր վկայաբան մեծ Հաւատարեալ բաւ ամից ամենոց, որ մեք ահա նոր յանձն գնեմնեկ. որոյ պատմութիւն առի եւ յոր, այլ մեք ոչ եւք անկեալք։

### Վասն եօթներորդին։

Վասն պարսամայ. զայն չար պարսամ Հայք զնա ոչ գիտեն, եւ ոչ թէ ճանաչեն, կամ ընդու-նին զնա. այլ միայն զնա գիտեն, որ ընդ արիւնի վկայի առնի. եւ զմիւսն, որ յիշի ի պատարագի ընդ միանձնունն Հարց սրբոց։

### Վասն ութերորդին։

Ի մկրտելն երեխայից, եւ ի կոչելն նորա Պար-սամ անուամբ, ոչ թէ յանուն նորին, այսինքն Պարսամայ մկրտին, այլ ի յանուն ամենասուրբ եր-րորդութեան մկրտեցեալք. եւ մկրտող քահանայն եւս այնու դիտաւորութեամբ, եւ ոչ թէ ի յա-նուն պարսամայն։ Նմանապէս եւ վասն եկեղեցւոյն, որ ի Թօխաթ՝ ի յանուն սրբոյ է, եւ ոչ թէ ի յա-նուն այնմ չար պարսամայ, վասն այն յորդեն, եւ պատուեն Հայք, որք եւ ի յանուն սուրբ կոչեցե-լոյն, եւ ոչ թէ ի յանուն այնմ չար պարսամայ։ Այսպիսի խորութիւնք, եւ տարաձայնութիւնք,

որք ձգեն նորա, որք կան ի յարեւելս, ոչ այլ ինչ, եթէ ոչ վասն անիրաւ մամոնայի, զի այնու լցուացեն զփոր իւրեանց։ Աւասիկ առ այս ասեմք, զի ահա ազգ մեր փչացաւ, եւ ի մոխիր դարձաւ պատճառաւ առաջնորդաց, որ վասն այսմ, զոր ասէր ինքն ողորմայի։

### Վ՟ն իններորդէ։

Ի գնալն ուղղափառաց ի յեկեղեցիս Հայոց ոչ ուղղափառաց. ուղղափառաց Հայոց անհնար է, թէ կարիցեն առնել բանս ինչ ուղղափառութեա. զի բառ զխոստմամբ մերոյ ասեմք զայս, զի Հայք որք են ոչ ուղղափառք, թողուցուն առնել ուղղափառութեա. քանզի ոչ ի խոստովանութիւնս, եւ ոչ ի պատարագեն ուղղափառութեա. եւ զի թէպէտ վասն երթեւեկութեանց նոցին լինեն, որ զայս ի սակաւ ժամանակս. այլ՝ զէնի ինդրեն զզաւանութիւնս Հաւատոյ, եւ վասն ոչ ընդունելոյ զերկու բնութիւնս, այլ զմի բնութիւն, եւ առլ նզովել զժողովն քաղկեդոնի, եւ զայլն որ ընդ նմին։ Որոց նախկին քաջութիւն եւ մեծագործութիւն այն է, զի խոստանայցեն ի վերայ ուղղափառաց, եւ զզատումն որ ի վերայ (սուրբ) սատկացուցեն։ Վասն որոյ եթէ առ այս գլխաւորքն Հայոց վասն Հաստատութեան ուխտի եւ պայմանի իմիք գիրս եւս տայցեն, ոչ է յուսալի բանից եւ գրոց նոցա. վասն զի Հաստատութիւնք եւ խոստմնադրանք նոցին ոչ զադարին եւ ոչ ի յետս մնան ի չար արարմանց իւրեանց, զորոց զփորձն առեալ, եւ զբաժակ զառանութեան արբեալս եմք, եւ ի բազում անեծս զտարբերարութիւն բարուց նոցա։

### Վ՟ն տասներորդէ։

Այս բանս եւ փութթս քան զամենայն զժամարս երեւի, որ տայցեն թոյլ Հայքն ոչ ուղ-

զաւակոքն քահանայից ուղղափառաց, եւ միաբանարաց, որ ի գաւառն նոցին ի ժամն հայոց ոչ ուղղափառաց, քարոզս տայցեն, կամ ուղղափառապէս ատենիցեն զժամերգութիւնս, եւ զպատարագս մատուցանիցեն. զի զայս անհնարինս երեւի մեզ, միայն թէ Աստուծոյ յատուկ օգնութեամբն կարօտի, որ զայս այսպէս գիտակ լերուք. եւ կամք ձեր հրամանոցն է։

Վասն ազդեցութեան գրոյս, եւ անյարմար գրուածոյս ներումն խնդրի. վասն զի միտ մեր եւ տեսողութիւնք աչաց մերոց նուազեցեալ, եւ զայսչափս հազիւ հազ կարացեալ, զի ամք աւուրց կենաց մերոց ի չափն հասեալ, որ ի թիւս եօթանասուն եւ չորս եղեւն լնանեցեալ։

*Սիրելւոյդ մերոյ Տեառնդ Տեառնդ Սամփսանճեանի Գերապատուութեանդ ընծայի ողջոյն. այլ կերպ:*

Որովհետեւ հարկաւոր է, զի ամենայն որք ճանաչիցէ զշնորհ անձին, վասն որոյ ահա յայտ առնեմք ձերում գերապայծառութեանդ, որ ահա հասին առ մեզ գիր գրեցեալն յօգոստ. 22ին, ուստի եւ մեք ընթերցեալ ծանեաք զմիտ գրուածոյն, որք էին նուիրք նորրագոյնք. Վասն որոյ ի միտ ածեալ արժան վարկաք խոստովանիլ զանկարութիւն, եւ զանկարութիւնս մեր առ բանս ձեռնհասութեան լինելոյն. որոյ պատճառն է, զի միտք մեր խելայեղեալ, որ զայս առաւել վասն մերոյ անկարութեան, որ ի յամենայն կողմանէ, որպէս որ յայտ է։ Միայն թէ զայսքանս կարացաք առ զանեղեկութիւնս բառ մերոյ կարողութեան զի մեք այժմ այսչափս միայն գիտեմք, որ մեք զմեզ ունիմք ընդ հովանեաւ որոց եկեղեցւոյ եւ ընդ հովանեաւ որոց ժողովոյն, եւ ընդ պաշտպանութեամբ նորին, եւ նաեւ լսիկ միայն ի տան մերում, աղօթողս լինել վասն հաստատութեան նորին, եւ վասն խաղաղութեան ա-

մնայն աշխարհի, հոգալով զհոգ ախտաւորութեան եւ ծերութեան մերոյ, զի մինչեւ զաւանդն առ Տէրն իւր աւանդեսցի։

Գրեալ էր զախտաւորութենէ ձերոյ, վասն որոյ յոյժ ցաւ եղեւ մեզ, ուստի խնդրեսցուք, եւ մնասցուք զաղօթս, զի ինքն Տէր տացէ զկատարեալ առողջութիւնս, եւ պահեսցէ զգերապայծառութիւնդ ընդ հովանեաւ խնամոց իւրոց։

Սիրելւոյն մերոյ, եւ հոգեւոր զաւակին ձերոյ Հեզահոգի վերապատուելի Տէր Գրիգոր վարդապետին, եւ պարոն Դաւիթին, եւ այլոց հարցանող սիրելեաց եւ բարեկամաց ողջոյն եւ սէր ընծայի, լիցին ողջ ի Տէր։

Ի Անդրանայ 1789, ապր. 4.

Գրիգոր Վարդ. եւն.

Թէ Գրիգոր Պատրիարք այսուհետեւ ինչ վախճան ունեցած է, անծանօթ էր ցայժմ՝ Ալիշան Հ. Ղ. կը գրէ (Հայ Վենետ. էջ 344) թէ 1776–1791 ի Վենետիկ էր եւ 1791ին Թրիեստ վախճանած է. Չամչեան (Գ. հտ. 1783 էջ 877) կ՚ըսէ. "չոգաւ յերկիր քրիստոնէից, ուր կայ մինչեւ ցայսօր՝ հոգացեալ միայն զփրկութենէ հոգւոյ իւրոյ". Իսկ իր "Խրախճանին" մէջ (Վենետ. 1812 էջ 479) կ՚ըսէ. "չոգաւ յերկիր քրիստոնէից եւ անդ վախճանեցաւ" Հ. Աստուր (Ընդ. Օր. 1901 էջ 151) կ՚ըսէ. "1774ին առաջնորդ եղաւ Կիպրոսի, ուր մնաց 11 ամիս. ապա գնաց Եւրոպա եւ դարձաւ նորէն Պոլիս. 1787ին Պոլիս էր, եւ նոյն տարին Ներսէս Աշտարակեցիին հետ գնաց Էջմիածին, ինչպէս կը վկայէ Տէր Գաբրիէլ քահանան իր

՚Դօ-պլ-է-ու-լին [uncertain reading] մէջ։ Սոյնպէս յայտնի է որ ամբող-ջովին սխալ է, ինչպէս բաւականներէն յայտնի է։ Այս Դօ-պլ-է-ու-լին [uncertain reading] մասին քիչ մը վարը պիտի խօսիմ։

Ես գտայ Գրիգոր Պատրիարքի մահուան ճիշդ թուականը։ Ընտանեան Հարց մատենագա-րանին մէջ կայ 1728ին ի Վենետիկ տպուած ՚Միխայէլ Քաջազնեայց՚։ Սոյն սկիզբը մաքուր գրով գրուած է.

«Փոխեցաւ յաւիտեանս. 1791 յու-նիսի 22։

Ի գրոց Գրիգոր Պատրիարքի Կոստանդի-նուպօլսեցւոյ Աստուածատրեանց, 1791, յու-լիս 18։»

Նմանապէս նոյն մատենադարանին՝ Serpos, Compendio Storico, Venezia 1786, T. I—III, երեք հատորին սկիզբն ալ նոյն գրչէն գրուած է. «Ի գրոց Գրիգոր Պատրիարքի Աս-տուածատրեանց կոստ. 1791. Յուլ. 18,,, ուրիշ քանի մը գրքերու վրայ կայ նոյն գրութիւնը, որմէ յայտնի է թէ 1791 Յունիս 22ին վախճանած է եւ Յուլիս 18ին իր գրքերն ու գրուածները Ընտանեանհարց ձեռքն անցած են։ Նոյն Միա-բանութեան գիւանին մէջ կայ նաեւ Գրիգորի դամբանին տապանագրին օրինակը. սակայն այս մասին նոր մանրամասնութիւն չի յայտներ։ Ահաւասիկ այն տապանագիրը.

ՏԱՊԱՆ ՇԻՐՄԻ՝ ՏԵԱՌՆ ԳՐԻԳՈՐԻ,
ՀՕՐ ՄԵՐՈՑ ՆԱԽՆՈՑ՝ ԱՆՈՒԱՆԵԱԼՐԻ
ԹԻՒԶԱՆԴԱՑԻՈՑ՝ ՎԱՐԴԱՊԵՏԻ,
ԱՍՏՈՒԱԾԱՏՐԵԱՆ՝ ԲԱՐՈՒՆԱԿԻ,

ՍԱ ՊԱՏՐԻԱՐԳ ԼԵԱԼ ԱՐԺԱՆԻ,
ՀԱՑԿԱԶՈՒՆԵԱՑՆ՝ Ի ԲԻԻԶԱՆԴԻ.
ԱՊԱ ԿԱՄՕՔ՝ ԻԻՐ ՀՐԱԺԱՐԻ,
Ի ԼՐՈՒՄՆ ԱՄԱՑ՝ԸՆ ՏԱՄՆԵԿԻ։

ԴԻՄԵԱՑ Ի ՀՌՈՎՄ՝ ՄԱՅՐԸՆ ԲԱՐԻ,
ԸՍՏ ՆԱԽՆՈՑՆ ԻԻՐ՝ ՕՐԻՆԱԿԻ։
ԱԹ Ի ՆՄԱՆԷ՝ ՊԱՏՈՒԱՍԻՐԻ,
ՈՐԴԻԱՊԷՍ՝ ԸՍՏ ԱՐԺԱՆԻ։

ԴԱՑ ՊԱՆԴԽՏԻ՝ ՅԱՅՍՄ ՔԱՂԱՔԻ,
ԽԱՂԱՂԱԿԱՆ՝ ԿԵՆՕՔ ՓԱՅԼԻ.
ՄԻՆՉԵՒ ԿՈՉՄԱՄԲ՝ ԸՆ ՏԷՐՈՒՆԻ,
ՓՈԽԻ ՅԱՆԱՆՑ՝ ԻԻՐ ՀԱՅՐԵՆԻ։

Բարեբախտաբար Թրիեստի Հայ կաթողիկեայ վախճանելոց մատեանը կայ այսօր, զոր Թրիեստի Մխիթարեանք իրենց հաստատութենէն ի վեր, այն է 1773—1810, կանոնաւորապէս բռնած են, ինչպէս նաեւ Մկրտելոց եւ պսակելոց գիրքը։ Այս մատեանը կը պահուի Թրիեստի S. Maria Maggiore եկեղեցին, ուր ես 1895ին ընդօրինակած եմ Վիեննայի վանքին մատենադարանին համար (Տաշեան, Ցուցակ, Թ. 454). Ասոր մէջ ահա կը կարդանք այսպէս (թղթ. 39ա).

"Կզ. Յամի Տեառն 1791 եւ յունիսի 22. վախճանեցաւ գերապատիւ գրիգոր վարդապետն Աստուածատուրեանց, որ էր պատրիարգ ամենայն Հայոց Կոստանդնուպօլսի, իբր 78 ամեայ։ եւ թաղեցաւ ի մասնաւոր գերեզմանի ի գերեզմա-

Նստան որ առաջի դրան եկեղեցւոյն սան Ջիուսթոյի։

> Ես Հ. Կամիլլոս Կարապետեան վարդապետ Մխիթարեան եւ եկեղեցպան
> հաստատեմ։»

Անկէ յայտնի է որ Գր. Պատրիարք 1789էն ետեւ Թրիեստ փոխադրուած եւ այնտեղ վախճանած է 22 Յունիս 1791ին։

Ես նոյն 1895 տարին գացի S. Giusto եկեղեցին, այս գերեզմանը փնտռելու, սակայն եկեղեցւոյն շուրջը գերեզմանի հետք չկայ, ամենայն ինչ վերցուած, յարդարուած եւ քաղաքին կենդրոնական գերեզմանոցը փոխադրուած է։ Սակայն այն տեղ ալ չկրցայ գտնել Գրիգոր Պատրիարքի յիշեալ տապանագիրը, ինչպէս նաեւ իմ խնդրանօքս այս օրերս մեր Միաբաններէն մէկը փնտռեց գերեզմանատան մէջ եւ չգտաւ։ —




Գրիգոր Պատրիարքին կնիքին նմանահանութիւնը հոս կը դնեմ. մենագիրներուն ընթերցուածն է «Գրիգոր Վարդապետ Պատրիարք ՌՄԺԳ» (= 1764)։ Անիկայ կը գտնուի 1771 Նոյ. 5 թուականաւ ի Կ.Պօլիս գրուած հրամանագրի մը վրայ, որով Պատրիարքը հրա-

մանկու թայ Յովակիմ՝ Արքեպիսկոպոսին, որ կարենայ աւագ սարկաւագ ձեռնադրել Թէքիրտաղցի պաղտատարեանց տիրացու Սարգիսը, որ Թէքիրտաղի Առաջնորդ Յակոբ Վ.ին աշակերտն է և անկէ վկայագիր ունի (Գիւ. Անտ.), զոր մերն յառաջ բերի։

Սարգիս Արքեպ. Սարաֆեանի Հետեւող երրորդ բարձրաստիճան եկեղեցականն էր Յովհաննէս Վ. Թոփճեան, Նուիրակ Արքեպիսկոպոսն Էջմիածնի, որ 1781ին Եւրոպա մեկնեցաւ ուղղափառաց մէջ իւր կեանքին վերջն անցընելու Համար։ Ասիկայ ծնած էր 1695ին ի Բասեն, և Էջմիածնի միաբան ըլլալով՝ Սիմոն Անեցի կաթողիկոսէն (ընտր. 13 Յունիս, օծեալ 15 Սեպտ. 1751—1753 Մայիս 12 †) Արքեպիսկոպոս ձեռնադրուեցաւ։ 1754ին Աղեքսանդր Բ. Բիւզանդացի Ղարաղաշ կաթողիկոսն Էջմիածնի (ընտրեալ 1754—1755 Նոյ. †) զինք Եւդոկիա իբրեւ Նուիրակ ղրկելով՝ նոյն քաղքին Առաջնորդ կարգեց (Չամչեան, Գ. 865). որ 1755ին Էջմիածնէն եկող թղթատարէն իմանալով՝ որ Աղեքսանդր կաթողիկոս վախճանած է, անդլոյն եկեղեցիներուն մէջ Հրատարակեց՝ թէ Սահակ Վ. Ահագին, Զմիւռնիոյ Նուիրակ-Առաջնորդն է կաթողիկոս, ինչպէս ալ ի Կ.Պոլիս նոյնն ընտրուեցաւ 20 Յունիս 1756։ 1755ին Յարութիւն Արքեպ. Կ.Պոլիս եկաւ, և Յակոբ Պատրիարքը անոր տեղ Բարսեղ Վ.ն Եւդոկիոյ Առաջնորդ դրաւ։ 1756ին, երբ Սիմէօն Վ. Երեւանցի Էջմիածնի Նուիրակ եկաւ Կ.Պոլիս,

Յարութիւն Արքեպ. Պրուսա գնաց եւ հոն մնաց մինչեւ 1759, Սամուէլ Եպ. Երզնկացւոյ Առաջնորդութեան ժամանակ: Այս մասին հետեւեալը կը գրէ Վահրեան Արիստ. Եպ. («Բիւզանդիոն», 1906, թ. 3127). «Յարութիւն Վ. Քասենցի. (1756—1759) կամ իբր նուիրակ կամ իբր առաջնորդ Պրուսա գտնուած է: Պրուսայի Հայոց մէջ երկպառակութիւն եւ կրօնական վէճեր առաջ գալու պատճառ կ'ըլլայ դէպ ի Հռոմէականութիւն միտում ցոյց տալով: Երբեմն հոս Պրուսա գտնուած է Սարաֆեան Սարգիս Վ., որ յետոյ առաջնորդ եղած է Կեսարիոյ եւ Գաղատիոյ եւ հուսկ ուրեմն Հռոմէականութիւնն ընդունած է: Պրուսայի մէջ անկէ առջի սերունդին պատկանող ծերունիներէն շատեր նողկանք կը յիշէին Քարսենցի Յարութիւն Վ. մը, որ Պրուսայի Հայերն երկպառակած է կրօնական խնդիրներով: Լեզուական աղաւաղում մ'է անշուշտ Քարսենցի կոչումը որ Քասենցին ըլլալ ցոյց կու տայ: Այս Քասենցին Թոքատի նուիրակ ալ եղած է, եւ քանիցս Կ. Պոլսոյ մէջ եկեղեցական գործոց խառնուած: Ի վերջոյ 1751ին Էջմիածինը ձգելով գացած է Թիֆլիսէ, Մխիթարեանց վանքն ապաստանած է Հռոմէականութիւնն ընդունելով: Մեռած է 1756ին 101 տարեկան եւ թաղուած է ի Թիֆլիսէ: Հաւանական է որ Քասենցի աւելի նուիրակի հանգամանքով Պրուսա գտնուած ըլլայ. վասնզի ոմանք Սամուէլ Երզնկացին 1756ին պաշտօնի մնած կը կարծեն»: Յայտնի է որ Սարգիս Արքեպ.ի

մասին այստեղ գրուածները բոլորովին սխալ են ժամանակագրօրէն. ինչպէս նաեւ յիշուած *1751, եւ *1756. թուականները, ինչպէս քիչ ետքը կը տեսնենք։

Երբ Էջմիածնի Յակոբ Ե. Շամախեցի Կաթողիկոսն (1759—1763 Մարտ 21 †) վախճանեցաւ, Բասենցի Յարութիւն Արքեպ. կաթողիկոսական ընտրելի կը նկատուէր, եւ Էջմիածին գումարուած ժողովին մէջ գտնուելով՝ ինք առաջարկեց ընտրել Սիմէոն Վ. Երեւանցին, որ եւ ընտրեցաւ (Չամչեան, գ. 871 2)։ Սիմէոն Կաթողիկոս նոյն 1763 տարին Հոկտ.ին Կ.Պոլիս ղրկեց զՅարութիւն Արքեպ. իբրեւ նուիրակ, որ ճամբան թղթերը գողցուելուն պատճառաւ Եւդոկիա շատ սպասած էր (Աղաւնեանց, անդ. էջ 6—10)։ 1763ին վերջն արդէն Կ.Պոլիս հասած էր եւ նուիրակութիւն սկսած պայմանաւ Ս. Հրեշտակապետ եկեղեցիէն (Սարգիս Դպիր, Ձեռագիր)։ Կ.Պոլիս Նոյեան Յակոբ Պատրիարքը՝ իր մահուանէն († 19 Յուլ. 1764) յառաջ, անոր յանձնեց իր սեպհական եկեղեցական սպասներէն մաս մը իբրեւ նուէր Էջմիածնի (Ընդ. Օր. էջ 144)։ Բասենցի՝ Նոյեանի թաղման ալ ներկայ գտնուեցաւ, ինչպէս վերն յիշեցինք։ Սիմէոնի եւ Յարութիւնի յարաբերութիւնները հետզհետէ ձգտեցան (Աղաւնեանց, անդ, էջ 750—1), 1767ին իրեն տեղ Էջմիածնի նուիրակ եկաւ Զաքարիա Եպ. Կաղզուանցի Փօքուզեան, որով Յարութիւն Արքեպ. Պոլիս անպաշտօն մնաց։

Սարգիս Արքեպ. երբ 1772ին Պոլսէն Հռոմ մեկնեցաւ, Յարութիւն Արքեպ. ալ կ՚ուզէր անոր հետեւիլ, ինչպէս Յարութիւն պետանեանի ընդարձակ նամակին մէջ յիշուեցաւ, ինչպէս նաեւ 13 փետր. 1773ին Սանփ. Վ. Արրահայրն Մխիթարեանց Վենետիկէն կը գրէր առ Սարգիս Արքեպ. ի Լիվոռնոյ (Դիւ. Լիվ.)։ «...Գրեն, թէ եւ Քասենցի Յարութիւն վարդապետն ունի միտս փախչելոյ, զոր զգացեալ են բազումք եւ չփութութիւն մեծ հանեալ։ Ջնոյն գրեն եւ վասն առաջնորդին Գաղատիոյ...»։ Սակայն Սամուէլ Եպ. Երզնկացւոյ եւ Գր. Պառմաճեան պատրիարքի մեկնումէն շատ ետքն հազիւ կրցած է յաջողցընել, այն է 1781ին. (տես Ա. Պէրպէրեան, Պատմ. Հայոց, Կ. Պոլ. 1871 էջ 435 գրուած թուականն փոխանակ «14 Օգ. 1771»։) Կ՚երեւայ թէ Վենետիկ, ինչպէս նաեւ Հռոմ երթալէն ետեւ՝ 1781 Օգ.ին մէջ Վենետիկէն մեկնած եւ Թրիեստ հասած է, ինչպէս յայտնի կ՚երեւայ Սանփ. Վ. Արրայի Մխիթարեանց ի Վենետիկ առ նոյն Յարութիւն Արքեպ. գրած 22 Օգ. 1781 թուակիր նամակէն (Դիւ. Անս.), ուր կ՚ըսուի. «...խմացայ զյաջողութեամբ հասանիլ ձեր ի մէջ երկուց աւուրց ի Թրիեստ...»։

Թրիեստի մէջ ապրած է անուղղոյն Մխիթարեանց հետ սերտ բարեկամութեամբ, նոյն Մխիթարեանց նորընծայ քահանաները ձեռնադրելով։ Հետաքրքրութեամբ հետեւած է արեւելքի մէջ անցած ազգային դէպքերու,

ինչպէս իրեն ուղղուած նամակներէն յայտնի է։

Աղանեանց (անդ. էջ 852) Յարութիւն Արքեպ.ի մասին կը գրէ ի ծանօթութեան. «Այս Յարութիւն Վ.-ը (Քասենցի) Կ. Պոլսի եւ շրջակայից նուիրակութեան գործը աւարտելուց յետոյ Պրուսայի առաջնորդ կարգուեցաւ. այնտեղից գնաց Վենետիկ եւ Տրիեստ, տանելով իւր հետ Մ. Աթոռի արդիւնքները, ուստի Սիմէոն կաթողիկոսը մի թղթով դիմեց տեղական կառավարութեան, որի հրամանով վերջինս առնելով նորանից աթոռապատկան բոլոր դրամները՝ Ս. Էջմիածին ուղարկեց. իսկ իրան՝ Յարութիւն Վ.-ին զրկելով եպիսկոպոսական պատուից՝ հաւասարեց աբեղաներին եւ նոցա պէս ռոճիկ էր տալիս արքունիքից, մինչեւ որ փոքր ժամանակից յետոյ վախճանեցաւ այնտեղ (ժամանակագր.)»։ Մեր ընթերցողներուն յայտնի է որ Յարութիւն Պրուսա էր 1756—9, իսկ նուիրակութիւնը անկէ ետքը վերջացուց (1763—1767). մինչեւ 1781 Կ. Պոլիս էր Յարութիւն Արքեպ., որ միջոցին Սիմէոն կաթողիկոսն ինչո՞ւ չպահանջեց «Մ. Աթոռի արդիւնքը», եւ ի՞նչպէս կարողացաւ Սիմէոն իւր իսկ մահուընէն ետեւ († 26 Յուլ. 1780) հազիւ 1781ի վերջերը Թրիեստ հասնող Յարութիւնէն գանձել պահանջքները։ Ո՞ւր լսուած է որ Աւստրիա կաթողիկէ կառավարութիւն մը՝ «տալիքի» մը պատճառաւ եպիսկոպոսական պատուէ զրկած ըլլայ կամ զրկելու իշխանութիւն ունեցած ըլլայ։ Դժբախտաբար կա-

թողլկեայ Հաստատակութեան վրայ ու-կաթողի-կէից գրածները գրեթէ ամէնքն այսպէս սխալ կամ՝ խեղաթիւրեալ են։ Այսպէս նաեւ «Ծերունի Գաբրիէլ Պատկանեան», «[illegible]» ի Սիս-կատար կենսագրութենէն օրիադան Հայրապետի Ներսէսի Ե.... («Արշալոյս Արարատեան», 1874, թ. 987) ըսելէն նաեւ՝ թէ Յարու-թիւն Քահանայի Յակոբ Նալեան պատրիարքի ժամանակ (1741—9) պաշտօնատար դպրի վար-ժարանին աշակերտած ըլլայ, մինչդեռ Յարու-թիւն Քահանայի 1754ին Արքեպ. նուիրակ էր Եւդոկիոյ մէջ, կ՚ըսէ թէ Ղուկաս Կաթողի-կոսի ընտրութեան ժամանակ (1780), անիկայ կաթողիկոսաչընտրութեան մէջ գոհանալուն Եւրոպա փախած ըլլայ. նոյնը կը կրկնէ նաեւ «Արարատ»ի մէջ (1875 էջ 173—5). մինչդեռ վերը գրուածներէն յայտնի է, որ Քահանայի արդէն իրր 1750ին կաթողիկեայ էր, եւ 1772—3ին Սարգիս Սարաֆեանի, Սամուէլ Երզնկացւոյ եւ Գրիգոր Պատրիարք Պասմաճեանի հետեւէն կ՚ուզէր Եւրոպա երթալ։ Վերջնոյս նկատմամբ ալ նոյնպիսի յերիւրանքներ գրած է (անդ, թ. 997) ինչպէս վերն յիշեցի։

Յարութիւն Արքեպ. վախճանած է 14 Մարտ 1796ին ի Թրիեստ 101 ամեայ, եւ իբրեւ Եպիս-կոպոս՝ թաղուած է քաղաքին Լատինաց S. Giusto աթոռանիստ եկեղեցին, փոքր դրան ձախակողմը, եւ նոյնին դրան կողմը մարմարեայ տախտակի վրայ գրուած է տապանագիրը՝ Հայե-րէն եւ լատիներէն։ Այս մասին գրած էի

«Հանդէս Ամսօրեայ.ի մէջ (1896 էջ 86). Յարութիւն Արքեպ.ի տապանագրին «...վրայ հայկական եկեղեցի մը ուրուագծուած է, վրան երկաթագիր ՍԲ Է.Ջ.(միածին) գրուած. տոր տակը կայ հետեւեալ արձանագրութիւնը.

ՏԷՐՈՒՆԵԱՆ ԿՈՉՄԱՆ ԵՂԵԱԼ ՋՈՒԳԱ ԿԻՐ
ՅԱՐՈՒԹԻՒՆ ԱՆՈՒՆ ՄԵԾ ԽՈՐՀՐԴԱ ԿԻՐ
ԾԱՆՈՒՆԴ ԲԱՍԽՆՈՅ ՐԱԲՈՒՆ ԲԱՐԻ ՉԻՐ
ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ԷՋՄԻԱԾՆԻ ՉԻՐ
ՄԵԾԱՆՈՒՆ ԱՐԴԵԱՄԲՔ ԲԱՆԻՒՔՇՆՈՐՀԱՉԻՐ
ՋԻՄԱՍՏԸՍ ՏԱՌԻՑ ԽՈՒՋՕՂ ԱՆՉԱՆ ՉԻՐ
ԹՈՂԵԱԼ ԱԶԳԱՑՆՈՑ ԸՋՇՈՒՔ ՑՈՔՆԱ ԴԻՐ
ԴԻՄԷ ՄԵՆԱԿԵԱՑ ՅԵԻՐՈՊԵԱՆ ԽԸՆ ԴԻՐ
ԱՅԼ ՅԱՌԱՋԵՑԻՆ ՓԱՌՔ ՎԱՅԵԼՉԱ ԴԻՐ
ԻՆՔՆԱԿԱԼՔ ԿՐԿԻՆ ՆԸՄԻՆ ՊԱՏՈՒԱ ԴԻՐ
ՄԱՐԻԱՄ ԹԵՐԵԶԱ ԴՇԽՈՅՆ ԳԱՀԸՆ ՏԻՐ
ԵՒ ԵՐԿՐՈՐԴՆ ՅՈՎՍԷՓ ՈՐԴԻՆ ԲԱՐՁԸՆ ՏԻՐ
ԵՐԿԵԱԿ ՈՒԹ ԱՄՕՔ Ի ԹՐԻԵՍՏ ՅԱՐԿԱ ԿԻՐ
ԱԶԳԻՆ ԵՒ ՏԵՂԻՈՅ ՎԵՀ ԱՐՁԱՆԱ ԴԻՐ
ՋՈՐ ԵՒ ՄԱՀԱՌԻԹ ՔՈՒՆ ԱՍՏՈՒԱԾԱ ԴԻՐ
ՀԱՐԻՒՐԱՄԵՆԻ ԱՄՓՈՓԵԱՑ Ի ԴԻՐ
ԱՅՍ ՔԵԶ ՀՐԱՇԱԶԱՆ ՎԱՅՐՍ ՆԻՐՀԱ ԿԻՐ
ՄԱՀ ԵՒ ՅԱՐՈՒԹԻՒՆ Ի ՄԻ ԼԸԾԱ ԿԻՐ

Ի ԹՈՒԻՆ ՀԱՅՈՑ ՌՄԽԵ. ՄԵՀԵԿԻ Բ.

1796 Ի ՄԱՐՏԻ 17.

«Ասոր կը յաջորդէ լատին արձանագրութիւն մը, այժմ մնացած բառ բաւականի, որուն իմաստը նոյն է վերինոյն հետ։ Այս Յարութիւն

Արքեպիսկոպոսի մասին Տրիեստի անցեալ դարու հայ (Մխիթարեանց) ժողովրդապետութեան «Գիրք վախճանելոց» մատեանին մէջ կը կարդանք. «Յամի Տեառն 1796, ի 14 Մարտի, ի 9 ժամու առաւօտու վախճանեցաւ ի ծերութեանէ Գերապատիւ Բասէնցի Յարութիւն վարդապետն, եւ Արհիեպիսկոպոսն Էջմիածնի՝ յառաջագոյն ընկալեալ զօրէր խորհուրդս, ի հասակի հարիւր եւ մի ամաց (որպէս ի մի գրուածոյ իւրմէ ի յայս եկեալ է, եւ թէպէտ ի թուղթն Այցառողի մեռելոց գրեցաւ 96 ամաց)։ Եւ յերրորդ աւուր, այս է ի 16 ամսոյս յուղարկաւորեցաք ի Սուրբն Յուստոս։ Եւ մարմին նորա եդաւ առաջի փոքր դրան նոյն եկեղեցւոյն։ Յորոյ վերայ դնիլ ունի եւ վէմ՝ քանդակագործ», որ է մեր յառաջ բերածն։ Հանգուցելոյն «Արհիեպիսկոպոս Էջմիածնի» տիտղոսն 1800ին արուեցաւ (Ս. Ժողովէն) Վիեննայի Մխիթարեանց առաջին Աբբահօր՝ Գեր. Աստուածատուր Վ. Բաբիկեանին։

Ահաւասիկ յիշեալ լատիներէն տապանագրին հայերէն ընթեռնլի մասը, որմէ կը հասկցուի նաեւ որ Պիոս Զ. Քահանայապետին ներկայացած է, եւ թէ իր տապանագիրը շինել տուեր է իր մտերիմ՝ բարեկամը Յովսէփ Բասենցի։

D. O. M.
PASCHALI ARUTIU
ARCHIEPISCOPO ARMENIO PASSENIAE NATO
PII . . . I . . SIT DOCTRINA
RI RI XI AN . . . DANARI CONIEPTU
APOSTOLICAE ROMANAE SEDIS

I. RIYIRINII PRYICIMO
PIO VI. PONT. MAX.
...ICISSIMO IMPR.
JOSIPHO II. IP. MARIAE IP. THERESIAE
PII..REMVM ACCIPIO
IIRCISSIS IN TECESSV
VITA AD. ANNUM PROPE CENTISIMUM
PRODUCTA
PRID. ID. MART. A. D. MDCCXCVI
PII SANCITO DIUNCTU
RAETREO OPII 19. SUIO AMICISSIMO
JOSEPH. PASSENZI
II. I. L. M. P.

Դառնանք այժմ Սարգիս Արքեպիսկոպոսին, զոր Մարսիլիա թողուցինք։

Սարգիս Արքեպ. 40 օր Մարսիլիա մնաց այն տեղ քառասնօրեայ առողջապահական հսկողութեան տան (lazaret)։ Ունէ այլեւայլ տեղեր նամակներ գրած է, ինչպէս կ'երեւայ Սանեի. Աբբային 9 Յունուար 1773ին առ Սարգիս գրած նամակէն, որուն մէջ կ'իմացընէ Սանեի. Աբբային թէ Մարսիլիայէն գրած նամակն ընդունած է եւ Հռոմէն պատասխանը գրած, ինչպէս նաեւ Գէորգ Վ. Հռոմէն կը գրէ 30 Դեկտ. 1772ին առ Սարգիս Արքեպ. թէ Սարգսի 16 Հոկտ.ին "Մարսիլիայու Նազարէթէն" առ ինքն գրած նամակն ընդունած է, որուն մէջ Սարգիս կը խնդրէր, որ ի Հռոմ իրեն յարմար վարձու տուն մը գտնէ Գէորգ Վ., վասն զի չուզեր Հայոց Տանը բնակիլ։ Դարձեալ 9 Յունուար 1773ին «Յօհաննէս առ Սէրրոս» մարքիզը կը գրէ Վենետիկէն թէ Սարգսի Մարսի-

լիոյ Լազարեթէն 15 Հոկտ. թուականաւ գրած նամակն ընդունած է։

Այնուհետեւ Նուբարեան Յովհ. Վ.ին հետ մեկնեցաւ Մարսիլիայէ, եկաւ Անթիպ (Antibes), անկէ Գենուա (Genova) եւ Լիգա եւ վերջապէս Լիվոռնոյ, ուր հասաւ 18 Դեկտ. 1772ին, հայ կաթողիկեայ եկեղեցին իջեւանեցաւ, եւ անդուոյն հայ հասարակութենէն մեծ ընդունելութիւն գտաւ։

Սարգիս Արքեպ. Ս. Գնունեան օրերն անցընելէն ետեւ՝ կ'ուզէր Հռոմ երթալ հաստատուիլ եւ հոն մեռնիլ։ Բայց քանի մ'օր ետքը երեւան ելաւ իր մէկ հին հիւանդութիւնը՝ ուղեւորութեան դժուարութիւններուն հետեւանօք։ Այս հիւանդութիւնը թէպէտ քիչ մ'ետքն անցաւ՝ սակայն յետոյ վերստին սաստկացաւ։

Նոյն միջոցին իրեն Հռոմ երթալու նախապատրաստութիւնները կը տեսնէր։

Լիվոռնոյի դիւանատան բազմաթիւ նամակներու մէջէն այս մասին հետեւեալ տեղեկութիւնները քաղեցի։

Գէորգ Վ. 30 Դեկտ. 1772ին կը գրէ Սարգսի, թէ 16 Հոկտ. թուականաւ Մարսիլիայէն գրած նամակին համեմատ՝ իրեն ,յարմար տուն մը պիտի վարձէ. եւ 10 Մարտ 1773ին դարձեալ ուրախութիւնը հարցնելով՝ կ'ապահովցընէ, որ զինք ի Հռոմ ըստ արժանւոյն ընդունելու համար պէտք եղածները կը կարգադրէ։ Արդէն իրեն Սարգիս Կ.Պոլսէն հետը բերած էր Գաղղիոյ եւ Նէապոլսոյ դեսպաննե-

րու կողմանէ ջերմագին յանձնարարականներ, եւ ինչպէս Տուրաջջոյի Արքեպ.ն Fra Giacomo 3 Յնր. 1773 թուականաւ Հռոմէն կը գրէ Մարգիս Արքեպ.ին, նաեւ Կ. Պոլսոյ Կաթողիկեայ Հայոց Առաքելական փոխանորդին (Վեր-ը)՝ Մէրասեան կամ Տայի-Միմոնեան Աթանաս Արքեպ. Հռոմկլայ (1758—1779) իր մասին շատ լաւ խօսող նամակ մը գրած է իրեն, ինչպէս նաեւ Ս. Ժողովոյ քարտուղար Մօնս. Պօրճիային՝ նաեւ Վենետիկէն Մեղրուեան Յովհաննէս Մարգիզ կը գրէ 3 Յնր. 1773 թուականաւ առ Մարգիս Արքեպ. թէ Դեկտ. 23ին Լիվոռնոյէն գրած նամակին ընդունած է, ինչպէս նաեւ Կ. Պոլսէն հետը բերած խուլէյեան Աբրահամ ամիրային յանձնարարականը, թէպէտ եւ ինքն առանց առաջ ալ աչքէկից պէտի ըլլար իրեն՝ «վասն ի սկզբանէ հետէ սերտ բարեկամութեան առ մեզ.», եւ իմանալով որ հիւանդութեանը պատճառաւ հայրը Զառակէն ետքը պիտի երթայ Հռոմ, կը հրաւիրէ զինք ի Վենետիկ, որպէս զի խօսին Հռոմ կատարելի գործին մանրամասնութեանը վրայ, եւ պէտք եղած յանձնարարականները առ Կարդինալներուն։ Մեղրուեան Մարքիզ կը հաղորդէ նաեւ՝ թէ իր եղբայրն Պետրոս եւ Անտոն կ'ողջունեն զինք, ինչպէս նաեւ «քու աշակերտ Պետրոս Վ.Ն., որ է իրեն աքսորակիցն Պետրոս Վ. Եօրուէկճեան, որ այս միջոցին Վենետիկ հաստատուած էր»։

Այսպէս ամենայն ինչ նախապատրաստուելէն ետեւ՝ 1773 Յունուար 9ին Ս. Ժողովոյ

մինչէ գրել վախճանութեանդ. եւ մանաւանդ գերապանծ սրբազան ժողովն ի ձեռն գերամբարձ Կարդինալ Կարաֆիային Հայոց յորդորեաց զանդրաժանութիւն մեր մնալ ի Հռոմ ձեռնադրող սրբոյն ատեան Պրօպականտա Ֆիտէյի. Նաեւ ես ձեռնադրել մեզ գերիս քահանայս, եւ գերկուս սարկաւագունս ի յեկեղեցին Հայոց, յորոց մինն է Մանաքինեօր Դաւապան, որ է այժմ այդր. Բայց մեք վասն ունելոյ ի մտի մերում տպագրել զամենայն ուղղափառական գրեանս ի Վէնէտիկ քաղաքի, եւ կատարել զայլ օգտակար մտածմունս ի յօգուտ ազգին մերոյ. աղաչեցաք թոյլատրել զմեզ գնալ ի Վէնէտիկ, որ եւ գնացեալ կատարեցաք զեղեալն ի մտի մերում, որպէս եւ տեսանի. Եւ զկնի անցանելոյ ամաց ամանց՝ վերստին դարձաք ի Հռոմ, եւ մնալով այդր վեցամսեայ ժամանակաւ, ապա Հրաման առեալ ի Քահանայապետէն եւ ի Սրբոյ ժողովոյն գնացաք ի Կ. Պօլիս. Եւ թէ անդանօր զինչ, եւ զորպիսի հալածանս կրեցաք, եւ զորքան ժամանակութիւնս արարաք ուղղափառացն Հայոց, եւ որպիսի քարոզութեամբ վարեցաք յայնապէս ի հոյակապ եկեղեցիս Հայոց, եւ զայլ այսպիսի իրակութիւնս տեսանելոց է Աստուծով Սրբազան ժողովն քեւ հանդերձ, ի ձեռն ճշմարիտ վկայական գրեանց գերապանծ դեսպանացն Ֆրանսայու եւ Նապօլոյ, որք ականջալուրք եւ ականատեսք գոլով ամենայն որպիսութեանց առից եւ կրից մերոց վկայեալ հաստատապէս գրեն առ գերապանծ Կարտինալս թագաւորութեանց իւրեանց, այսինքն առ... զորս ունիմ այժմ ընդ իս, առ ի բերել այդր. Վերջապէս որպէս առաջին նուագի զայլատեսան իմոյ այդր, ներշնչմամբն Աստուծոյ ձեռնտու եւ օժանդակ եղեւ ինձ հանգուցեալ Մանաքինեօր Լէքքարին, այսպէս եւս այժմ ակն ունիմ ի յԱստուած, թէ նախապատրաստեալ իցէ զքեզ առ ի լինել նեղելոյս աստուածային նպաստ եւ օժան-

գակ։ Սուրբ գինի բոլորովին յանձնելոյ զամենայն կամս եւ զհաճութիւնս իմ ընդ հրամանի Սրբոյ Ժողովոյն, զնոյնս յանձնեմ նաեւ ըստ ամենայնի քում գերահանճար խոհականութեան եւ բարեհաճութեան։

Հուսկ յետոյ ծանուցանեմ վսեմութեանդ, զի այժմ ի Կ. Պօլիս երկոքին կողմունքն Հայոց, այսինքն ուղղափառաց եւ ծիգմատիքաց ի միմեանց միջեւ ցփոյրումն անհնարինս եղեալ նկատեն ի կողմն յայս, առ ի գիտել զխորհրդութիւնն, եւ որ կայանալն որպիսութեան մերոյ։»

Նոյնպէս 9 Յունուար 1773 թուականաւ կը գրէ առ Հ. Սողոմոն Երրորդ Ընտանեան Միաբանութեան եւ առ Հ. Գէորգ Վ. ի Հռոմ (Գրիգ. Ընտ.), յորում կ'ըսէ թէ Լիվոռնոյ պիտի ձմեռէ, եւ չուզեր Հռոմ Հայոց տունը բնակիլ, որ շատ եպիսկոպոս եւ շատ քահանաներ կան, եւ կը յաւելու «...Նաեւ ոչ է պարտ զաղել ի ձէնջ եւ զայս, զի ունիմ ընդ իս զերկու յանձնարարական գիրս յոյժ պիտանիս եւ զօրաւորս. գրեալ միոյն ի Կայսերացոց Դեսպանէն, եւ միւսն ի Նաապոլեցւոց Դեսպանէն առ գերապատիւ Կարտինալս թագաւորութեանց իւրեանց, ի յորս վկայեն հաւատարմէն զհրապարակական եւ զառաքելական քարոզութիւնս, զջատագովութիւնս որ վասն ուղղափառ հաւատոյ, զաքսորելոյս ի Կիպրոս վասն ճշմարտութեան կաթողիկէի, եւ վասն բանտարկելոյ հաստատութեանն առ ի յանձնել Պատրիարգ, եւ զոչ ընդունելոյս, նաեւ սակս այլոց այսպիսեաց...»

Ս. Ժողովոյ քարտուղարն առոր կը պա-
տասխանէ 23 Յնր. 1773 նամակաւ, թէ այժմ Հռոմ շատ հայ եպիսկոպոսներ կան եւ Հայոց Տունը Ս. Մարիամ Եգիպտացի տեղ չկայ, թէ Ս. Ժողովոյ արկղը շատ ծանրաբեռնեալ է, եւ թէ Արեւելք ուղղափառ ժողովուրդն եպիսկոպոսի պէտք ունի, եւ Սարգսի հօն գտնուիլը շատ արդիւնաւոր կ'ըլլայ. ի վերջոյ կը գովէ անոր բազմարդիւն կեանքը։ Առոր կը պատասխանէ Սարգիս 8 Փետր. 1773 թուակիր նամակաւ, որուն Սարգսի ձեռօք գրուած օրինակն է այս.

Ընկալայ զպատուական գիրն Գերապայծառութեանդ գրեալն ի յունվարի 23 եւ ընթերցեալ զայն յուէտ ուրախութեայ ի սրտի իմում, եւ գիտացի զմեծերիմ բարեկամութիւն Գերապայծառութեանդ որ առ իս։ Ի պատասխանատրութիւն որոյ ասեմ հեզութեամբ եւ խոնարհութեամբ, թէ գալուստն իմ ի Հռոմ ոչ գիտէր զօգուտն անձին իմոյ ի կողմանէ գրամոյ, եւ այնպէս առալ զձանձրոյթ ինչ արկեղ սրբոյ Ժողովոյդ, այլ՝ ունէր միայն զմտանաւոր նկատումն հարկաւոր իրակութեանց ազգին իմոյ եւ յառաջագէս անձին իմոյ։ Եւ երանելեալ իմ ի Կոստանդնուպոլսոյ, ոչ սակաւս թողի անդէն ի յուղղափառ դաւանութեան յուսաւորեալս եւ հաստատեալս նաեւ անձինս մեծամեծս ազգին իմոյ քրտնաջան վարդապետութեամբք եւ վարժեցուցմամբք, զորս գործեցի մինչեւ ի խոր ծերութիւնս իմ՝ յայս՝ այնպէս հալածանաց եւ աքսորանաց հանդերձ, զորս միշտ կրեցի եւ կրէի ի ներհակութենէ ախտակիր հակառակորդաց անտի, որք որ բառ օրէ անհ[illegible] նաեւ էի ի մեծագոյն վտանգի կենաց դատապարտեագոյն քան զորս կրեցի. եւ զի մի այսու միաբանեցէին տաաւել քան թէ շահաւէտագէին ուղղափառքն

ազգին իմոյ, ուստի այսօրիկ լուսագոյն համարեցայ խոյս տալ ի Կոստանդնուպօլսոյ. որպէս յայտ է բոլոր ազգին իմոյ, ի ճշգրիտ վկայութեանց դեսպանացն Գաղղիոյ եւ Նապօլսոյ, զորս ունիմ ընդ իս։ Եւ առ այժմ որովհետեւ գտանին անձինք ոմանք ի Վենետիկ, որք սպասեն գնալոյն իմոյ անդ, յօժարութեամբ վասն ամենայն մասնաւոր գործառութեանց իմոց, յորոց ապաստանեալ Աստուծոյ դիտաւորութիւն ունիմ գալոյ այդր առ ի մատուցանել զյարգութիւն իմ հայրութիւն սրբազան աթոռին ամեներջանիկ Վեհապետին նաեւ Վեհամայրագոյից, եւ քում Գերապայծառութեան։

Գերապայծառութեան քում

ի յայլիկուռնոս փետրվարի 8, 1773

ամենախոնարհ ծառայ

Սարգիս Արքեպիսկոպոս։

Միեւնոյն ժամանակ Սարգիս գրած է նաեւ այլ եւայլ ազդեցիկ անձանց միջնորդութեան։ Այսպէս 20 Մարտ 1773 թուականու Fra Giuseppe Mª Dobbia Min. Conv. առաքագրող փրանկիսկեանը կը գրէ Հռոմէն առ Սարգիս, թէ միսիոնէ եւ դարձած ըլլալով՝ Ադրիանուպոլսոյ եւ Կ. Պոլսոյ վրայ տեղեկութիւններ առեր է Սրբազան Քահանայապետին, ի մասնաւորի Հայոց վրայ, որոնք մէկ են ի կաթողիկէութիւն, եւ ըսեր է թէ աւելի ընդարձակ եւ ճիշդ տեղեկութիւն կրնայ տալ Սարգիս Արքեպ., զոր թէպէտ անձամբ ճանչցած չէ, բայց համբաւը գիտէ. եւ թէ ըսեր է Սարգսի մասին՝ թէ Սրբազան Քահանայապետը շատ սիրով

պիտի լսէ զինք, եւ ամենայնատեւ սիրով պիտի ընդունի։

Նաեւ Հ. Գրիգոր Դեփօթ Ընտանեան Միաբանութեան Մեծաւորն ի Հռոմ կը գրէ 5 Մայիս 1773ին առ Սարգիս, թէ վերջին գրութեանը համեմատ' գացեր է առ «Յունաց Եպիսկոպոսն, որ Ցիտուսեանց կարգէն է, եւ խոստովանութեան արդիւնքը կը հաղորդէ այսպէս. "Նախ սաստ թէ Արքադանն հաճեցաւ յետ սուրբերոյն զամենայն եւ հրամայեաց մնաքինեա Պօրձիայուն զի գրեսցէ ձեզ գիր կոչման զի եկիցէք ի Հռոմ. ի սկզբան թէպէտ պատմեաց զամենայն, բայց ոչ հաւատացին նմա. եւ այս այլ ինն փաթէրայ եկեալ է նոր ի Կ. Պոլսոյ. նմա հարցին ի վերայ քոյ. եւ նոյն փաթէրայն պատմեալ է որպէս ինքն եպիսկոպոսն պատմեալ էր նոցա. յայնժամ հաւատացին նմա...։ Պօրձիայուն ոչ գրելոյ պատճառն այս է նախ' եպիսկոպոսունս որք են սաստ ահդաւորեցին եւ այս հոգացուք զնա...։ Երկրորդ բան նորին այս է. եթէ ուղղապէս եկեալ իցէք' մինչեւ ցայժմ բան նորին կատարէր։ Երրորդ սաստ թէ այժմ եկեալ կայցէ, մինչեւ քանի մի ամիս բան նորին ուղղի, քանզի ոչ է որպէս այլ եպիսկոպոսունս որք ոչ գիտեն լեզու եւ ոչ եւս կարեն համարձակօրէն խօսիլ...։"»

Նմանապէս վերոյիշեալ Տուրագցցի Արքեպիսկոպոսը 26 Յունիս 1773ին կը գրէ Սարգսին, թէ պէտք չէ յուսահատիլ, այլ սպասել. ինք տեսնուած է Մոնս. Պօրձիայի հետ, որ ըսեր

է թէ Սարգիս Արքեպ. սրտին մէջն է. եւ ինչպէս որ Աղեքսանդր Կաթողիկոսին գործը կարգադրեց, կը յուսայ նոյնպէս կարգի դնել Պրուսայի Նուիր.ին գործը, եւ յետոյ Սարգիս Արքեպ ին գործին պիտի նայի, որ արժանի է ամենայն խնամոց։ Տօրանցցոյի Արքեպ.ը կը գրէ նաեւ՝ թէ անոր (Սարգսի) մասին գրեր են որ Վենետիկ պիտի երթայ կղերիկոս ձեռնադրելու, եւ թէ Հարուստ է՝ 20.000 դր. ունի. սակայն Մօնս. Պօրճիա պաշտպաներ է զինք։

Եւ իրք. ինչպէս 20 Յնր. 1773ին Տօրանցցոյի Արքեպ.ը կը գրէ Սարգսին, եւ կը յիշէ Անտոնեան Միաբանութեան Մեծաւորն ի Հռոմ՝ Հ. Գրիգոր Վ. Նէփօթ իր ժամանակագրութեան մէջ՝ թուական 1773, այս միջոցին Հռոմ Ս. Մարիամ Եգիպտացի եկեղեցւոյն մէջ կը բնակէին կաթողիկեայ վեց Հայազգի եպիսկոպոսներ։ Անոնք են՝ 1 Կ. Պոլսեցի Յակոբ Մեսրոպ Քեաճեա Արապեան, Արքեպ. Լամպրոնի եւ Տարսոնի, որ 1742էն ի վեր Հռոմ էր։ 2. Յովհաննէս Գասպարեան, Արքեպ. Մարտինի։ 3. Գրիգոր Արքեպ. Թիֆլիզեցի։ 4. Աղեքսանդր Արքեպ. Վանայ, ի միաբանից Աղթամարայ։ 5 Գաղատացի Սիմոն Եպ. Ումուտեան։ Եւ 6. Սամուէլ Եպ. Երզնկացի, Առաքելոց Պրուսայի։ Առաջնոյն վրայ ուրիշ առթիւ կը գրեմ՝ Վերջնոյն վրայ ընդարձակ տեղեկութիւններ տուի վերը, որոնց վրայ կը յաւելում նաեւ Հետեւեալները։ Սամուէլ Եպ.ի յօրինած յիշեալ աղօթագրքէն ունի նաեւ Գիւտ քհ. Ա-

դամնանց (տես «Լումայ», Թիֆլիզ, 1900, Գիրք Ը. էջ 273—4) այս վերնագրով. «Կրթութիւն առ ջերմեռանդութեան աղօթից, ժողովեալ եւ յարմարեալ ի Սամուէլ չնչին անիմաստ Երեցայէ եւ վերատեսչուէ Պրուսայու, ի հայրապետութեան Տ. Յակոբայ ամենայն Հայոց կաթուղիկոսի Շամախեցւոյ, յամի Տեառն 1760 յունվարի 3, իսկ Հայոց 1209, ի Պրուսա քաղաքի ի Ս. Աստուածածնի եկեղեցւոջ»։ Միքայէլ քհ. Աշճեան վերջերս գրեց («Արեւելք», 1908, թ. 6751), թէ Սամուէլ Կոս. Պոլիս հաստատուելէն ետեւ՝ (երբ արդէն 1776ին Հռոմէն վերադարձած եւ 1778ին աթոռէն հրաժարած էր.) 1779ին Տնանկ Աղքատաց մնտուկին յանձնեց 2.500 ղր. որպէս զի տարը տոկոսով «իր մահուընէն վերջը աղքատ դասակարգէ որը աղջկան մը հարսնեկան օժիտը պատրաստուի»։

Իսկ միւսներու վրայ հետեւեալ տեղեկութիւնները ժողված եմ։

Յովհաննէս Պօղոսեան, Մարտինի չորրորդ հայ կաթողիկեայ Արքեպիսկոպոսն՝ էր եղբօրորդի առաջին հայ կաթողիկեայ Արքեպս. Մելքոն Տառպասեանի։ Վերջինս Պրոպականտայի աշակերտ էր եւ 1684ին Մարտինի ամբողջ հայ հասարակութիւնը կաթողիկեայ ըրած եւ ինքն 1716ին ի Կ. Պոլիս նահատակուած է։ Յովհաննէս ծնած է 1715 Յունուար 21ին Մարտին, 1735 Մայիս 30ին Հռոմ գացած եւ Պրոպականտայի աշակերտած է, 1746ին ի Հռոմ Ս. Մարիամ Եգ-

*գիպրացի եկեղեցւոյ մէջ քահանայ ձեռնադրուած է Սարգիս Արք. Սարաֆեանէ, նոյն տարին դարձած է Մարտին եւ ժողովրդեան ծառայած։ 1767ին գրած է գեղեցիկ Մեկնութիւն մը Ս. Պատարագի (օրինակ մը Մադրին. Ընդ. Թ. ՄԿԳ)։ 1768ին Մարտինի Առաջնորդ ընտրուեցաւ, եւ Կղեմէս ԺԴ. Ս. Քահանայապետէն հաստատուելով 1768 Ապր. 30ին, նոյն տարին Սեպտ. 4ին Արքեպ. ձեռնադրուեցաւ ի Զմմառ Կիլիկիոյ Միքայէլ Պետրոս Գ. Կաթողիկոսէն Հայոց Ուղղափառաց։ 1869ին Օգ.ին Զմմառ գնաց եւ թէ կաթողիկոսին եւ թէ Ս. Քահանայապետին հրաժարական մատուցանելով՝ ընդունուեցաւ հրաժարականը։ 1770ին Հռոմ հաստատուեցաւ, ուր գիրքեր գրեց եւ թարգմանութիւններ ըրաւ։ Վախճանած է 58 տարեկան 1773 Ապր. 4ին եւ թաղուած Ս. Մարիամ Եգիպտացի եկեղեցին։*

*Տապանագիրը հետեւեալն է՝*

ԱՅՍ ԷՆ ՈՍԿԵՐՔ ԱՌԻՆ ԻՄԱՍՏԻ
ՄԵՐՏԻՆԵՑԻ ՎԱՐԴԱՊԵՏԻ
ՅՈՎՀԱՆՆԷՍ ԹԱՍՊԱՍ ԿՈՉԵՑԵԼՈՅ
ՄԵԾ ՄԵԼՔՕՆ ԵՂԲՕՐ ՍՐԴԻ
ՍԱ Ի ՀՌՕՄ ՑԻՄԱՍՏ ՄԱՐԶԻ
Ի ՓՐՈՓԱԿԱՆՏԱ Ի ԴՊՐՈՑԻ
ԱՊԱ ԵՊՍ ՕԾԵԱԼ

ՅԻՒՐ ՔԱՂԱՔԻ ՀՈՎԻՒ ԿԱՐԴԻ
ՅԵՏՈՅ ԵԿԵԱԼ ՎԱՄՆ ՈՒԽՏԻ
ԴԱՅ Ի ՀՌՕՄ ԱՅՍ ԲՆԱԿԻ
ՅԻՍՈՒՆ ԵՒ Ը ԱՄՍ ԼՑԵԱԼ
ՆԱ Ի ԿԵՆԱՑ ԱՅՍՏԻ ՓՈԽԻ

ՅԱՄԻ ՏՆ ՄԵՐՈՅ ՓՐԿՉԻ
ՀԱԶԱՐ Չ ԵՕԹԱՆԱՍՈՒՆԵԻ
Ի Դ ՕՐՆ ԱՊՐԻԼԻ

—

ՍՏԵՓԱՆՈՍ ՊՕՂՈՍ ՍԲ ԺՈՂՈՎՈՅ ՔԱՐՏՈՒՂԱՐ
ՎԱՍՆ ՅԻՇԱՏԱԿԻ ԻՒՐՈՅ ԲԱՐԵԿԱՄԻՆ
ԵՏ ԿԱԶՄԵԼ ԶԱՐՁԱՆՍ

*Տապանագիրս ունի նաեւ լատիներէն մաս մը, որուն օրինակը չունիմ։ Այստեղ մահուան տարին կը դրուի 1770, մինչ ստոյգն է «յամին 1773 Մարտ 24ի 23 ժամուն յաւուր Ծաղկազարդի», ինչպէս կը տեսնուի Անտոնեան Միաբան Հ. Գրիգոր Վ. Ներսէսեանի Հռոմէն գրած մէկ նամակէն (Դիւ. Անտ.) ինչպէս նաեւ Սարգսի 9 Յունուար 1773ին առ Մոնս. Պօրճիա գրած նամակէն, զոր վերն յառաջ բերի։ Սոյն ժողովոյ քարտուղարն է* Stephanus Borgia.

*Գրիգոր Արքեպ. Աշտարակեան, Թիֆլիզեցի. Երբ եւ ինչպէս Հռոմ եկած եւ հաստատուած է, անծանօթ է ինձ։ Այսչափն ստոյգ է՝ որ 1773ին սկիզբը Հռոմ կը գտնուէր, ուր կոնդակ մը գրած է (Դիւ. Անտ.) փետր. ամսոյ մէջ։ Նոյն կաթողիկեայ Հայոց Ս. Մարիամ Եգիպտացի եկեղեցւոյ Հոգետունն ապրած է իբրեւ կաթողիկեայ, հոն ալ վախճանած է 98 տարեկան՝ 19 փետր. 1774ին, եւ նոյն եկեղեցւոյն մէջ թաղուած։ Իր տապանագիրն է հետեւեալը, որ սխալագիր է եւ վերջընթեր տողին մէջ կրկնութիւններ ունի։*

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ԹԻՓԼԻԶԵՑԻ
ԳՐԻԳՈՐ ԱՐՔԵՊԿՍԻ
ԱՇՈՏ ԵԱՆ
ԷՐ ԱՄՕՔ ԴԸ ԱՄԵԱՆ
ՀԱՆԳԵԱՒ ԱՍՏ ՅԱՄԻ
ՏՆ ՈՒԷՃՀԴԻ ԴԻ ԵԻ Ի ՓԵՓԵՏՐԻ
ԺԹ ԱՄՍ ԵԱՆ

—

ՅԻՇԱՏԱԿ Է ՏԱՊԱՆՍ Ի ՍԷՅՏԻԷՆՑ ՔԵԱՀԵԱՅ ԱՐԱՊԵԱՆ ՄԵՍՐՈՊ ԱՐՔԵՊՍ ԼԱՄԲՐՕՆԻ ԵՒ ԹԱՐՍԻՍԻՆ

Հ. Ալիշան (Հայ-Վենետ. էջ 344) կը յիշատակէ «Գրիգոր Եպիսկոպոս» մը՝ վախճանած եւ թաղուած 1773ին ի Ս. Ղազար Վենետիկոյ, որ սխալ կ'երեւայ. վասն զի Հ. Յ. Թորոսեան (Վարք Մխիթ. էջ 476—480) չի յիշեր զայս իր հրատարակած տապանագիրներուն մէջ։ Իսկ Ուղուրլեան Վ. (անդ էջ 224) կը յիշէ զԳրիգոր ի Հռոմ Ս. Մարիամ Եգիպտացի թաղուած 1774ին, բայց կ'անուանէ «Արքեպիսկոպոս Տաշէնցեցի» (Խասպիա!), առանց մանրամասնութիւն մը յիշելու։ Աւելի անդեկութիւններ առ այժմ կը պակսին։

Աղեքսանդր Արքեպիսկոպոս Արասխեան Ուղուրլեան Վ. (անդ. էջ 224) Հռոմ ապրած եպիսկոպոսներու վրայ խօսելով կը գրէ. «Աղեքսանդր Վանեցի Եպիսկոպոս ի միաբանից Աղթամարայ. † յամի 1781։ Իսկ Աղեքսանդր պատրիարքին Աստանեանի տապանն է Ս. Կարոլոսի եկեղեցւոյն մէջ ի փողոցն Ձորից Աղբերց որ վախճանեցաւ ի հասակի 96 ամաց։» Վերջ-

նոյն լատիներէն եւ հայերէն տապանագիրն ընդօրինակեց ինծի համար Գեր. Յովսէփ Վ. Մոմճեան ի Հռոմ, որուն կը յայտնեմ շնորհակալութիւնս այստեղ։ Այս տապանագրէն կը հասկցուի, թէ Աղեքսանդր Ասլանեան, ծննդեամբ Կ. Պոլսեցի, Վանայ Արքեպիսկոպոս էր. Հռոմ գացած եւ ուղղափառ հաւատոյ դաւանութիւն տուած է Սրբազան Քահանայապետին, եւ Ս. Երրորդութեան կարգի վանքին մէջ իբր բնակութիւնը հաստատելով, վախճանած է 1792ին, Մայիս 19ին. 96 տարեկան, եւ թաղուած է S. Carlo եկեղեցին (ի փողոցի Alle 4 fontane)։ Ահաւասիկ այն տապանագրին օրինակը։

D O M
ALEXANDER ASLAN
PATRIA
CONSTANTINOPOLITANUS
DIGNITATE
VANENSIS ARCHIEPISCOPUS ARMENUS
QUI
OMNIA RELINQUENS
UT
NON PERDERET OMNIA
AD
HANC S. SEDEM FILIALI OBEDIENTIA
VENERANDAM
VENIT
ET IN HAC TRINITARIA RELIGIOSA DOMO
RELIGIOSO RECEPTUS HOSPITIO
MORTIS MEMOR
VIVENS
HL
OBIIT DIE XIX MAJI P.A. MDCCICII AET.
XCVI

ԱՅՍ Է ՇԻՐԻՄ ԱՌՆ ՏԻԱՌՆ
ԱՍԼԱՆԵԱՆ ՁԱՐՄ ԱՂԵՔՍԱՆԴՐԻՆ
ԾՆՆԴԵԱՄԲ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍԵԱՆ
ԵՊԻՍԿՈՊՈՍ ՎԱՆ ՔԱՂԱՔԻՆ
Ի ՄԵԾ ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԻՆ
ՈՐ ԵԿՆ Ի ՀՌՈՄ ԱՌ ԳԱՀ ՊԵՏԻՆ
Ի ԳԱՒԱՆԻԼ ՁՃՇՄԱՐՏՈՒԹԻՒՆ
ՈՒՂՂԱՓԱՌԱԿԱՆ ՀԱՒԱՏՈՅՆ
ՀԱՆԳԵԱՒ Ի ՏԷՐ ԱՄՕՔ Ղ. ՎԱՅԻՆ
ՅԱՄԻ ՏԵԱՌՆ ՌՉՂԲ ՄԱՅԻՍԻ ԺԹ ԻՆ

Անշուշտ շատ հետաքրքրական էին Աղեքսանդր Արքեպ.ի առաջնորդութեան եւ Հռոմ մեկնելուն պարագաները. սակայն չկրցայ տեղ մը յիշատակութիւն գտնել. Աղանեանցի Դիւան Գ. եւ Դ.ի մէջ, որ Սիմէոն եւ Ղուկաս կաթողիկոսներուն գործերուն ամփոփումն է, ուր կը յիշուին ուրիշ կաթուղիկէից խնդիրներ, Աղեքսանդր Արքեպ.ի վրայ յիշատակութիւն չկայ։ Ձեռքէս անցած բազմաթիւ նամակներէն միայն երկուքին մէջ կը գտնեմ յիշուած (3 փետր. 1773 ի Հռոմ, եւ 12 Օգ. 1775ի Վենետիկ), որով կ'իմանանք թէ 1772ին վերջերը կամ 1773ի սկիզբը Հռոմ հասած է Աղեքսանդր Արքեպ.։ Վերին յառաջ բերուած տապանագրէն կ'իմացուի նաեւ՝ որ Ուղուրլեան Վ. կը սխալի երկու Աղեքսանդր եպիսկոպոս դնելով, փոխանակ մէկի, այն է Աղեքսանդր Ասլանեան, Կ.Պոլսեցի, Արքեպ. Վանայ։ Իսկ Աղեքսանդր Ասլանեան պատրիարք գոյութիւն չունի։

Սիմոն Եպ. Ոսմանեանի մասին վերն այլ-եւայլ առիթներով ակնարկութիւններ տուի։ Ասոնց վրայ կը յաւելում նաեւ՝ որ ինքը

1726—9ի միջոցին Էջմիածնի Կարապետ կա-թողիկոսէն եպիսկոպոս ձեռնադրուած է, եւ 1766ին Հոկտեմբերին Զմիւռնիոյ ճամբով Վե-նետիկ հասած է (Թուղթ Տէր Աստուածատուր Ջուղայեցւոյ 25 Հոկտ. 1766 ի Վենետ. առ Հ. Գր. Դէփոմ ի Հռոմ, Դիւ. Անտ.)։ Սիմոն եպ. վախճանած է 76 տարեկան եւ Հռոմայ Ս Մարիամ Եգիպտացի եկեղեցւոյն մէջ թա-ղուած է։ Տապանագրին օրինակն է հետեւեալը.

ՍԻՄՈՆԱՐԴԻԵԱՆ ԱՆԴՐՈՆԻԿԵԱՆ ԽՃԽԱՆ ԱԶԳԻՆ
ՀԱՅՈՑ ԵՍ ԿԱԶՄԵԼ ՋԱՐՉԱՆՍ
ՏԱՊԱՆ ՃԻՐՄԻՍԷ ՈՒՄՈՒՏԵԱՆԳ ՊԱՏԱՑԻՈՑ
ՍԻՄԷՕՆ՝ ԳԻՏԱՊԵՏԻՆ ՔԱՋ ՐԱԲՈՒՆԻՈՑ
ՈՐ ՄԻՃՍ ԵՂԵԻ ՆԽՆՉԵՑՈՑ ՄԲ ՀԱԻԱՏՈՑ
ԲԱՆԻԻ ԳՈՐԾՈՎ ՆՄԱՆ ՀՈՎՈՒԱՑ ՏՆ ՄԵՐՈՑ
Ի ՅԱՔՍՈՐԱՆՍ ԱԹԱՔԵՑԱԻ Ի ՀԵՐՁԵԼՈՑ
ԵԻ Ի ԲԱՆՏԻ ՃՂՓԱՑԵՑԱԻ ՀԱՆԳՈՅՆ ԳՈՂՈՑ
ՆԱԵԻ Ի ԹԻՍ ԴՏՊՐՏԵԼ ԸՆԴ ԳԻՐԵԼՈՑ
ՎԱՍ ՈՒՂՂ ՄԲ ՀԱԻԱՏՈՑՆ
ՀՌՕՄԱՅԵՑԻՈՑ Ի ՎԻՃԱԿԷՆ ՏԱՐԱԾԽԱՐՀԻԿ
ՎՏԱՐԵՑԱԻ
ԱՅՍ ԲԱԶՈՒՄՍ Ի ԲԻԻԶԱՆԴԻԱ ՀԱՆԴԻՊԵՑԱԻ
ԱՊԱ Ի ՅՈԻԽՏ ԵԿՆ Ի ՀՌՕՄ ԲՆԱԿԵՑԱԻ
ՃՆՈՐՀՍ ԳՏԵԱԼ ԱՌ ՁԵՌՆԱԴՐԻՉ ՍԱՀՄԱ-
ՆԵՑԱԻ
ԵՕԹՆ ՏԱՐԻ ՅՕԹԵՎԱՆՍ ԲՆԱԿԵՑԱԻ
ԼՑԵԱԼ ԱԻՈՒՐԲՔ ԳՈՎԵԱԼ ՎԱՐՈՒՔ Ի ՏԷՐ
ՀԱՆԳԵԱԻ
ԵՕԹՆ ՏԱՍԱՄԲ ՎԵՑ ԱԻԵԼԻ ԼԻ ՀԱՍԱԿԱԻ
ԱՄԻ ՓՐԿՉԻՆ ՈՐ Ի ՎԻՄԻՍ ՓՈՐԱԳՐԵՑԱԻ

1774 ՅՈՒՆԻՍԻ 3

Սիմէոն Աստուածեան եպ.ին կնիքն ու պատ-կերը, զոր ուրիշ առթիւ կը հրատարակենք։

Նոյն ժամանակները Հռոմէն մեկնած եւ
Ռուսիա հաստատուած էր՝ Կոլոտ Պատրիարքի
աշակերտներէն Ղազար Անմարմին, Երախակոյան
Տրապիզոնի, ինչպէս վերը գրեցի, եւ 1766էն
ի վեր նոյն տեղ կաթողիկեայ Հայոց հոգեւորն
ու եկեղեցին այրելով՝ վախճանած է 18 փետր.
1783ին (Հ. Ղ. Ալիշան, Սիսական, Վենետ.
1893, էջ 452)։ Խօսելով վարդապետ (Յանձ
Առաջնորդաց ... Տրապիզոնի, «Արեւելք», 1901
թ. 4630—4), Ղազարի եւ Տրապիզոնի նա-
խորդ Հայ կաթողիկեայ առաջնորդներու վրայ
հազիւ անցողակի, եւ այն՝ սխալ ակնարկու-
թիւններ կ'ընէ։

Վերը յիշեցի Սահի. Վ. Արրահոր
13 փետր. 1773ին առ Սարգիս Արքեպ. գրած
նամակը, որուն մէջ կը յիշուի թէ Գաղատիոյ
Առաջնորդն ալ միայն անի Հռոմ փախչելու։
Այս միջոցին կ'երեւայ թէ Գաղատիոյ առաջ-
նորդն էր Սահակեան Վ. որ արդէն 1763ին ա-
ռաջնորդ էր (Գիւտան Գ., էջ 123 եւայլն)։ Հա-
ւանական է որ ասոր Կոլոտի աշակերտն ըլլայ
(տես Կոլոտ., էջ 71)։ Կոլոտի աշակերտն էր
նաեւ Աղամ Վ., որ ինչպէս Յարութիւն դե-
տանեանի վերն յառաջ բերուած (28 Հոկտ.
1772) ընդարձակ նամակին մէջ կը յիշուի,
1772ին խամայիլայէն դուրս եկաւ։ Աղամ Վ.
արդէն 1751ին Արքեպ. եւ Առաջնորդ էր
Խրիմու, որ նորոգեց Ս. Խաչ անթառանիստ վանքը։
(Տես արձանագրութիւնը՝ Բժշկեան Հ. Մ.,
Ճանապարհորդութիւն ի Լեհաստան, Վենետ.

1830, էջ 325, եւ Տէր-Աբրահամեան Յ., Պատմ. Խրիմու, Թէոդոսիա, 1865, Մասն Բ. էջ 153)։

Հռոմ երթալու մասին Սարգսի գրած, եւ առ հասարակ իր ինձ ծանօթ վերջին նամակն է 14 Յունիսի 1773ին առ Հ. Գր. Նէփօթ գրածը (Դիւ. Ընտան.), զոր այստեղ յառաջ կը բերեմ, եւ կը դնեմ նաեւ նմանահանութիւնը՝ չորս անգամ պզտիկցուած՝ իսկ իր ստորագրութիւնը ճիշդ բնական մեծութեամբ։

*Աստուծով*

*Հասցէ գիրս ի ձեռս Հ. Գրիգոր Նէփօթեան Սարգիս եպիսկոպոսէն (սոյն կից առաջ գրով անշուշտ Հ. Գրիգորէն գրուած, ճամբելու օրն՝) 1773 յունիսի 19*

*Խոնարհագոյն Տեառն Տեառն Հ. Գրիգոր մայրակրօն վարդապետի սիրով եւ յարգանօք ողջոյն ընծայեմ:*

*Ի Լիվոռնոյ 1773 յունիսի 14:*

Ի յունիսի 5ին գրեալ գրոյդ ծանեայ զամենայն խորհրդականս ծանօթութիւնս եւ իրակութիւնս թաքունս վասն իմ ի կողմանէ սրբազան քահանայապետին, հաղորդեալ քեզ թաքնաբար ի Գերապայծառ Մօնսինեօր Գրիգոստամէյէն, եւ շնորհակալ եմ զայդմանէ։ Սակայն ընդ այս գրոյս եղեալ գիրն իւր կնքովն իսկ ծածկապէս զսուինքնին ձեռամբդ տայցես նմա. եւ փոխադարձապէս՝ եթէ ինքն եւս տայցէ քեզ խորհրդաբար գիր ինչ առ իս առաքելի՝ աղաչեմ, զի ի մէջ քո գրոյդ եղեալ յղեսցես զայն. եւ զբոլոր ծախսն փոստին համանշանեսցես ի յիշատակի տեղւոջ. զի Աստուծով ի ժամանակին զնոսին հատուցից հրամանոցդ. Նաեւ Աբրեղի եղբօր մերոյ Գերա-

պայծառ Սամուէլ վարդապետին բանն, այսինքն՝ թէ զկացութիւնն արդենական, թէ Սրբազան Փափին Հեռու կեօրիւշմիշ բլլուն, եւ թէ զփարթն, եւ զայլ պարագայս այսպիսիս որք պատկանին առ նա ծանուցեալ մեզ. զի որոշագիւր լիցուք։ Մեր տկարութիւնն ատեանին ոչ ապաքինեցաւ բոլորովին ի մէնջ. այլ դեռ եւս կրեմք զմնացորդն. գուցէ մաքրափայլ աղօթիւք ձերովք բուժեսցի ի սպառ։ Ձեր միաբան Վ. Հ. Կարապետ որդեակն մեր եկեալ եհաս առ կարգել զուռաթ ի վերայ Հայոց ի Սրբոյ Ժողովոյն եւ այժմ նստի յեկեղեցին Հայոց, որոյ Տէր տացէ զկարողութիւն առ ի խոհեմապէս կառավարել. զի սակաւ ինչ խառնափնթոր է կացութիւնն Հայոց որք են աստ. ի մէջ որոց իրականութեանց ոչ ներախառնեմ ես զիս բնաւ, եւ այժմ զոչ այլ ինչ գրելի եւ ծանուցանելի ունիմ վերապատուելութեանդ, այլ միայն խնդրել զաղօթս առ Աստուած վասն կատարեալ առողջութեան խօթացելոյ եւ տառապելոյ անձինս՝ որպէս եւս Տէր Յիսուս տացէ առողջութիւն Հոգւոյ եւ մարմնոյ, մեալ քեզ ողջ ի շնորհս Տեառն, եւ ի պարծանս իմ

որ եմ անարժանագոյն ծառայ Տեառն
Սարգիս վարդապետ եւ Առաքելականաց
Կեսարիոյ.

Մինչդեռ Սարգիս այսպէս պատրաստութիւն կը տեսնէր երկրաւ որ Յաւիտենական քաղաքն երթալու՝ Նախախնամութիւնը կարգադրած էր վերին Յաւիտենական քաղաքը չուելու։ Իր հիւանդութիւնն յաջորդաբար կը մեղմանար եւ կը սաստկանար։ Բժիշկներու խորհրդով 1773 փետր. ամսոյ մէջ եկեղեցւոյ բնակարանէն փոխադրուեցաւ քաղաքին օդասուն մէկ տունը, ուր կը բնակէր իր ազգականներովը նաեւ Կ.Պոլսեցի Պետրոս Վ. Մուրատճանեան, Օրբանեան Պարոնոյի աշակերտն։ Սարգսի գործելու կանոնաւորութեան եւ սրտին բարութեան վկայ է՝ Լիվոռնոյ հանելէն ետեւ՝ եկեղեցին բնակելու տեղն՝ եօթն օրուան մէջ ըրած ծախքին վճարման թուղթը, որուն տակ Սարգիս հետեւեալը կը գրէ իր ձեռօք. "Այս վերոգրեալ բոլոր խարճին ըստակն, որ կանէր 57 լիրէ. եւ 8 կազրին, զորս ի մէջ եօթն աւուր խարճել վկայեաց կոմէրնաթօռն եկեղեցւոյն ի պէտս իմ, ի կողմանէ սուրբ Լուսաւորիչ եկեղեցւոյն, որ ի Լիվոռնայ. եւ ես հաւատացի բարանի նորա. որ եւ Աստուած շէն պահեսցէ զսուրբ եկեղեցին, եւ Տէր լուսաւորեսցէ զհոգիս այսպէս բարի յիշատակ եղողացն. ամէն։ Ես նուաստ ծառայ Տեառն Սարգիս Արքեպիսկոպոս Կոստանդնուպօլսեցի ձեռագրովս հաստատեմ զվերոգրեալս։". Եւ առ հասարակ մինչեւ թաղումը եղած ծախքին մանր հաշիւն այլ բռնած է հաւատարիմ աշակերտն Յովհ. Վ. Նուրինեան։

Բնակարանի փոփոխութիւնն ալ չկրցաւ հիւանդութեանն օգնել։ Ցեսաւ որ մնացած են վերջին օրերը, ինքնայօժար կամօք ընդունեցաւ խոստովանութեան, Թոշակի եւ վերջին Օծման Ս. Խորհուրդները Մուրատեանն վարդապետէն, եւ փետրուարին վերջը կտակն ալ պատրաստուեց։ Կ'երեւայ թէ այս միջոցին Հռոմ ղրկած պիտի ըլլայ Գաղղիոյ եւ Նէապոլսոյ դեսպաններէն եւ ուրիշներէն հետը բերած յանձնարարականները, որոնք այսօր իր թղթերուն մէջ չեն երեւար։

Քանի մ'օր ետքը հիւանդութիւնը մեղմացաւ, սակայն առժամ մ'ետքը նորէն սաստկացաւ, եւ ինքը հոգեւոր պատրաստութիւնները կատարելով՝ մահուան կը սպասէր։

Գարունն հասաւ. Սարգիս ինք զինք լաւ զգաց, ուզեց Հռոմ մեկնիլ եւ հոն մեռնիլ։ Նոյն օրերն Յովհ. Սեղբոսեան Մարքիզը Վենետիկէն գրեց Սարգսին, որ անպատճառ Վենետիկ երթայ եւ հոն քիչ մը հանգիստ ընէ, ինչպէս ուրիշ անգամ ալ գրած էր, այսպէս նաեւ 27 փետր. 1773ին, միասին 30 ոսկինպաստ ղրկելով։ Նոր մէջ կը ծանուցանէր նաեւ, որ Սարգսին գրածը Կ. Պոլսէն Վիեննայի վրայով Վենետիկ բերել կու տայ, ինչպէս որ 26 Յունիս 1773ի նամակով ալ անոր ձեռքն հասցուց հաշուոյը, որ էր ոսկի 1651, լիրէ 13, սոլտի 4։

Սարգիս ուզեց Վենետիկ երթալ, սակայն բժիշկները թող չտուին։ Ինքն ալ կարգով պտոյտ մ'ընելով՝ համոզուեցաւ որ անկարող է

ճանապարհորդելու։ Որոշեց Ճամբ Լիվոռնոյ, ուր թէ ազգային եւ թէ օտարազգիք կ'այցելէին եւ կը միխիթարէին զինքը, որոնց մէջ էր Լիվոռնոյի կուսակալը, Բիզայի Փոխ-Տեսուչը եւն։ Բժիշկներն ի սկզբան հիւանդութիւնը չէին ճանչցած, ի վերջոյ գտան եւ հաստատեցին՝ թէ ունի [illegible], արդէն շատ հինցած, որ յառաջ եկած էր տխրութենէ եւ մեծ տառապանքէ՝ արտաքանոյ ժամանակ վաստկուած. արեան շրջանը խանգարած էր, եւ հիւանդութիւնն անբուժելի էր։ Սարգիս մահը մօտալուտ տեսաւ. ուզեց որ զինք Լիվոռնոյի եկեղեցւոյն մէջ թաղեն։ Պետական նօտար մը կանչեց, ըրեց իւր առաջին կտակը, եւ Յուլիս 30ին նոր կտակ մը շինեց, որով իւր ստացուածոց ժառանգ կը կարգէր Լիվոռնոյի Ս. Գր. Լուսաւորիչ հայ կաթողիկէ եկեղեցին, ուր իւր հոգւոյն համար մշտնջենաւոր պատարագներ հաստատեց, որոնց տարեկան պատարագէքն ի սկզբան պիտի տրուէր Նուբարեան վարդապետին՝ ցորչափ կ'ապրէր վերջինս, պարտաւորելով զինք ամբողջ տարին նոյն եկեղեցւոյն մէջ իւր հոգւոյն համար պատարագ մատուցանել։ Նաեւ սահմանեց, որ իւր դրամով Եկեղեցւոյն աւագ խորանը շինուի պատուանդանէն մինչեւ վեր համակ ընտիր մարմարինէ։ Նմանապէս իւր պատարագի զգեստն եւ թանկագին սկիհն՝ Եկեղեցւոյն պատարագիչ Եպիսկոպոսին թողուց. այլ քաղաքաց համար ողորմութիւններ սահմանեց. իւր քոյրերուն՝ որոնք կարօտ չէին, քիչ մը

գրամ, եւ Նուրաթինեան Վ. ին իր գրքերն ու զգեստուց մէկ մասը։ Դարձեալ ժառանգող եկեղեցին կը պարտաւորէր իրեն հոգւոյն համար տարին քսան ձայնաւոր Պատարագ մատուցանել. իսկ մարմինը պիտի թաղուէր եկեղեցւոյն աւանդատան գաւթը, շիրիմի մը մէջ եւ վրան մարմարիոնէ կափարիչ մը պիտի դրուէր։ Իր այս վերջին կամաց կատարակատար կարգեց եկեղեցւոյն նոյն ժամանակի վեց թաղականները։ Նա թէպէտ նոյն օրերը այս Խաւկանեան երկրին Դուքսն արգելած էր եկեղեցւոյ մէջ մեռեալ թաղելը, բայց Հայք աղերսագիր մը տալով հրաման առին՝ ըստ կտակին՝ Սարգիս Արքեպ.ը եկեղեցւոյ մէջ թաղելու։ Որմէ ետեւ Սարգիս հրամանն ըրաւ՝ որ գերեզմանը փորուի եւ կազմ ու պատրաստ կենայ։

Խաղերէն կտակին բնագիրը հաշիւներով հանդերձ կը պահուի այժմ Լիվոռնոյի Հայ եկեղեցւոյ դիւանը։ Կը դնեմ այստեղ այն կտակին օրինակը, զոր հաճեցաւ ղրկել ինծ ըստ խընդրանացս՝ Լիվոռնոյի եկեղեցւոյն այժմու Մեծաւորն Գերյ. Գր. Տ. Վ. Պահապանեան։

**Copia** del Testamento del fù Monsignor Sergio Arcivescovo di Cesarea in Cappadocia di Nazione Armena, Rogato dal Notaro Dº Antonio Del Testa del 30 Luglio 1773. —

---

Al Nome di Dio Amen. L'anno di nostro Signor Gesù Cristo Mille Settecento Settanta

Tre. L'Indizione sesta, e questo di Trenta del mese di Luglio; Clemente Decimo quarto S. D. Sede, e S. A. R. l'Arciduca Pietro Leopoldo Gran Duca di Toscana Nono nostro Sovrano Dominante.

Fatto in Livorno, e al 3° Piano di una Casa vicina alla Chiesa degli Armeni, abitato presentemente dal Sig$^{r}$ Giovanni Muradgia Armeno; Quivi presenti N° 1:

N° 1 Marco Antonio di Marco Antonio Tarabino della Valictina.

N° 2 Carlo di q$^{m}$ Pietro Magri.

N° 3 Francesco del q$^{m}$ Giuseppe Magrini.

N° 4 Angiolo Alegrini quod. Michele.

N° 5 Antonio Bonini quod Francesco.

N° 6 Pietro Magri di Carlo tutti e cinque di Bergamo.

N° 7 Giovanni Domenico Eccerin di Giovanni Dom$^{co}$ di Livorno, tutti e sette Testimoni Rogati e Pregati dal Infrascritto Testatore.

Essendo che non vi sia cosa più certa della morte e nè più incerta dell'ora di essa. Ed essendo da Uomo prudente di pensare sempre al di lui Caso, e specialmente quando il Corpo è indisposto; Essendo stabilito che l'Uomo moia una sol volta; al che riflettendo come saggio e prudente l'Illmo e Rmo Monsignor Sergio Arcivescovo di Cesarea in Cappadocia di Nazione Armena, ma nativo di

Costantinopoli, e perciò rapporto a noi Forestiere come egli ratificò alla presenza che sopra; E causalmente di passaggio in Livorno da me benissimo conosciuto, e Sano per la Dio Grazia di Mente, Sentimento, Vista, Loquela ed Intelletto, sebbene ammalato convalescente di corpo posto a sedere sopra un Canapè. Percio a fine che dopo la di lui Morte non nasca alcuno scandalo o litigio intorno alla di lui Eredita, essendo determinato di fare l'Inf.$^{to}$ suo Testamento nuncupativo, che si chiama „Sine Scriptis": Di cui è che revocò, annullò e cassò primieramente un altro Testamento fatto già solennemente e che fù chiuso e sigillato da me medesimo infrascritto fino dal di 24 Febbrajo 1773. Ricevuto in forme e rimesso al pubblico Notarile Archivio della città di Firenze e successivamente ancora qualunque altra sua disposizione di ultima volontà che avesse fin qui fatta: Intendendo e volendo che in tutto e per tutto si debba stare al presente nuncupativo Testamento, che si protesta di fare a forma dei privilegi accordati ai Forestieri in questo felicissimo Stato di Toscana nelle veglianti Leggi di ammortizazione, nella maniera che appresso, cioè:

In primo luogo Raccomandò e Raccomanda l'anima sua al l'Onnipotente Iddio suo Creatore, alla Santissima Vergine di lui

Madre, al di lui Angelo Custode, a S. Gregorio Illuminatore, e a tutta la celeste corte di Paradiso. E quando separata sarà questa dal corpo ordinò al medesimo la sepoltura nella chiesa di S. Gregorio Illuminatore della Sua Nazione Armena di questa città, e a tale effetto ordina e vuole che dagli Infrascritti suoi Sig[r] Esecutori, e a spese della sua Eredità li sia fatta in detta chiesa una sepoltura con decorosa lapide inscritta di marmo; e precisamente nella parte destra del coro di detta chiesa, nella quale ordina e vuole che seguita la di lui Morte, sia pubblicamente esposto il di lui cadavere e li siano celebrati i solenni funerali, con Messa parimente solenne per mezzo dei Sacerdoti di sua Nazione e secondo il Rito loro, ai quali Sacerdoti dovrà darsi per l'assistenza ai funerali sud[i] e a quanti saranno un zecchino fiorentino per ciascheduno, e che in detta chiesa li siano celebrate Quaranta Messe piane di Requie con Elemosina d'un Piastrino.

Interrogato poi da me se volesse lasciare alcun Caritatevole sussidio ai Poveri della Congregazione di S. Giovanni Batt[a] della città di Firenze, Rispose non volerli lasciare cosa alcuno. Ma Jure Legati Lasciò e Lascia al l'Opera di S. Maria del Fiore di detta città di Firenze la solita Tassa di Lire Tre e soldi Dieci in ogni.

Item Jure Legati Lasciò e Lascia ai Poveri Armeni di questa città Zecchini Otto Fiorentini per una volta solamente.

Item Jure Legati Lasciò e Lascia ai Poveri di questa città Due Zecchini Fiorentini da distribuirsi nel giorno de' suoi Funerali.

Item Jure Legati ed in ogni miglior modo e titolo che di Ragione Lasciò e Lascia alle Sig^re^ Maria e Eva sue sorelle carnali dimoranti in Costantinopoli Zecchini Dieci Fiorentini per ciascheduna, quantunque non abbiano alcun bisogno.

Item Jure Legati Lasciò e Lascia al suo Diletto Discepolo e Reverendo Sacerdote Giovanni Nurdin di Diarbechir in Mesopotamia, attualmente presso detto Sig^r^ Testatore commorante tutti gli Abiti del medesimo, escluse le due Pellicce migliori, tutte le biancherie e tutti i Libri e Mobili di ogni sorta, esclusi oro, argento e gioje che li ritrovano in questa città al tempo della di lui Morte. Dichiarando inoltre e confessandosi in ogni di essere vero e legittimo debitore di detto Giovanni Nurdin della somma di Zecchini Cento sessanta Due e mezzo f^ni^: qual somma ci vuole che li sia dopo la sua morte puntualmente restituita e pagata dagli Infrascritti suoi Sig^r^ Esecutori.

In tutti gli altri suoi Beni Immobili che non saranno in questo Granducato Mobili se

moventi, Azioni, Ragioni, Denari, Crediti, Argenti ed ori, gioje, posti in qualunque Luogo del Mondo, e tanto presenti che futuri, Erede universale con la sua Bocca nominò e nomina e vuole che sia:

La Chiesa sopradetta di S. Gregorio Illuminatori della Nazione Armena di questa città, con l'infrascritti pesi, obblighi e condizioni, cioè:

Primo con obbligo che di detta sua Eredità si prelevino prontamente zecchini Sette Cento Fiorentini, e questi si impieghino a frutto dagli Infrascritti suoi Sig^r Esecutori in questo Stato di Toscana, ò a Censo, ò a Cambio, ò in tanti Luoghi di Monte ai piaceri dei medesimi Esecutori, dell'annuo frutto di detti zecchini Settecento si debba formare e stabilire una Uffiziatura di Messa Quotidiana per l'anima sua in detta Chiesa con fondare a tale effetto del detto Capitale una Cappellania da godersi in perpetuo da un Sacerdote Armeno, E alla medesima Cappellania per quando sarà fondata, il detto Sig^r Testatore ha nominato, e nomina, presentò, e presenta per primo Rettore il sopradetto Sacerdote Giovanni Nurdin, per dover ottenere la nomina Gius patronato in futuro di detto Benefizio ai Rappresentanti pro tempore di detta Chiesa; E tale Fondazione dovrà essere fatta prontamente dai detti suoi Esecutori Servat. Servand; Incaricandoli di devenire alla celebra-

zione degli Atti, a ciò necessari previe l'opportune suppliche, e con tutte le solite formalità, che si usano, e vengono disposte dalle leggi di Toscana nella fondazione di simili Cappellanie et in ogni.

Secondo con obligo e peso parimente di dover erogare Zecchini Sessanta cinque circa in Paramento Vescovile secondo il Rito Armeno, per uso de Pontificali, e perchè sempre debba rimanere in detta chiesa all' occorrente.

Terzo con peso ed obbligo ancora di erogare la somma di Zecchini Mille simili nel fare costruire l'altar Maggiore di detta Chiesa dedicata alla Sacra Famiglia e S. Giovanni Batt$^{a}$, che corrisponda ed accompagni gli altri due altari delle Cappelle, di Marmi fini e scelto disegno; al quale altare ordina detto Sig$^{r}$ Testatore che venga apposta l'impronta delle sue Armi, ed una Iscrizione in Idioma Armena e sua traduzione in Latino per la futura memoria dell' Erezione di detto altare.

Quarto con condizione finalmente che ogni restante di detta sua Eredità debba erogarsi in benefizio ed uso di detta Chiesa, dovendo farsi primieramente un nobile e Decoroso Calice d'Argento; e se altro avanzasse in quello che piacerà a detti Esecutori, sia per supplire a quel di più che potesse im-

portare il detto Altare, perchè sia Decoroso e Magnifico, sia per il detto Paramento Vescovile, o tutto altro che occorrere possa per detta Chiesa sua Erede; alla quale ingiunge l'obbligo e peso di fare celebrare in perpetuo per l'anima de Esso Sig^r Testatore N° Venti Messe Cantate in venti Domeniche dell' anno, et in ogni.

Esecutori della presente ultima sua volontà in tutte e singole le sue parti nominò e nomina, e prega che sieno i presenti e attuali Governatore e altri Ufiziali, Rappresentanti la sud^a chiesa Armena, esclusi per altro quelli che godono del Privilegio clericale, con incarico ad essi soltanto e non ad altri di dare Esecuzione alla sud^a sua disposizione nel tempo e termine di Mesi Dieci dal giorno della sua morte, per quanto sarà possibile; E attesa la stima che ha nelle proprie persone de medesimi Li liberò e libera da qualunque Inventario e Rendimento di Conti.

E questa dice essere l'ultima sua volontà. quale intende e vuole che vaglia quanto valere puole, e nel modo, a forma che li permettono e Leggi del Granducato, incaricando gli Esecutori ad importare la Grazia nel Caso, che vi si ricerchi; ed in ogni migliore e più valido modo.

E benche il Sig^r Testatore abbia espresso a me Notaro Inf^to alla presenza che sopra

chiaramente in Lingua Toscana la detta sua disposizione e specialmente la nomina del suo Erede; Pure per ogni Cautela ed ad ogni altro miglior fine et effetto di Ragione constano personalmente avanti di me e Testimoni sud[i], il Rdo sacerdote D. Pietro Muradgia il medesimo come intelligente e perito della nativa Lingua Armena e della nostra Toscana ha asserito d'avere interpretato e spiegato tutto il contenuto del presente Testamento a detto Sig. Testatore, quale ha confessato e confessa trovarlo in tutto e per tutto coerente alla di Lui Intenzione ed essere percio l'Ultima sua volontà, in ogni.

Et in Fede della presente Copia scritta tutta di mia propria mano mi soscrivo e sigillo con il mio Sigillo Notarile.

*D[r] Antonio del Testa N. P. F.*

Այս Օգոստ. եւ Սեպտ. ամիսներուն մէջ Մարգսի հիւանդութիւնը սաստկացաւ. եւ ինքն ամէն շաբաթ կը խոստովանէր եւ կը հաղորդուէր: Վերջին օրերն օրհնեց ի մանկութենէ իր աշակերտն Նուրատեան վարդապետը, աղօթեց իր բարերարներուն համար, թողութիւն տուաւ իր թշնամիներուն, զամէնքն Աստուծոյ խնամոց յանձնեց, եւ զուարթադէմ անդորրութիւն իր մաքուր հոգին աւանդեց Աստուծոյ 1773ին, Հոկտ. 1ի գիշերը՝ 2ի անցնելու առաջին ժամուն առաջին քառորդին վերջը, 74 տարեկան:

Հոկտեմբեր 2ին՝ շաբաթ առտու լուսանալուն՝ մարմինն եպիսկոպոսական զգեստներով զարդարուած՝ բազմեցուցին իր տան մէջ, եւ հաւատացեալք սկսան գալ եւ այցելել։ Յետոյ ճաշու ժամուն թափօր կազմեցին Հայք, օտարազգիք, զինուորք եւ երիցունք, խաչիւ, խաչվառաւ, ջահիւք եւ խուռն բազմութեամբ հաւատացելոց եւ սկսան շարժիլ։ Թափօրին մէջտեղը դագաղը բարձած էին 12 լատին քահանայք, երկու կողմանէ վառեալ զինուորներ, եւ Հայեր մոմեղինօք։ Առջեւէն կ՚երթային լատին կրօնաւորաց խմբեր, որոնք իրենց ծիսին համեմատ կ՚երգէին։ Հանդիսադիրն էր տեղւոյն Հայոց ժողովրդապետն՝ Անտոնեան Միքայէլ Հ. Կարապետ Վ. Հալաճեան, որուն կ՚ընկերանային Պետրոս Վ. Մուրատեան եւ Յովհ. Վ. Նուրիճեան։

Այսպէս թափօրը մեծ շքով քաղաքին գլխաւոր փողոցէն եւ հրապարակէն անցաւ, հասաւ Հայոց եկեղեցին եւ դագաղը դրուեցաւ մահարձանին վրայ։ Հոն ժողովրդապետն ձայնաւոր պատարագ մատոյց եւ պաշտօն կատարեց։ Նոյն օրն իրիկունը դարձեալ եկեղեցին խմբուեցան դասք քահանայից եւ ժողովուրդք։ Քահանայաթաղի կարգը կատարուեցաւ, Հանգուցեալը զարդերէն մերկացուեցաւ, ուրիշ դագաղի մէջ դրուեցաւ, եւ իջեցուեցաւ իր պատրաստած գամբարանը, աւագ խորանին առջեւ դէպ ի ձախակողմը։ Տապանին մէջ դրին՝ կապարեայ անօթոյ մէջ ամփոփուած, իր համառօտ կենսագրութիւնը, զոր Նուրիճեան վարդապետ գրած էր

հայերէն, եւ իտալերէնէ թարգմանած էր Մու-րատեան Պետրոս Վ.։ Մահն ու թաղումը արձա-նագրուած է նաեւ եկեղեցւոյն Մեռելոց գիրքին մէջ։

Ցետոյ Նուրպէնեան վարդապետ տա-պանագիր մը շինեց հայերէն, որ եւ քան-դակուեցաւ կափարիչին վրայ։ Նուրպէնեան Վ. նաեւ Սարգսի նախ փոքրիկ կենդանագիրը նկարել տուաւ, զոր յետոյ ճարտար նկա-րիչ մը մեծցուց, եւ աւանդատան մէջ կա-խուեցաւ։

Այս կենդանագիրներն այժմ չկան Լիվոռ-նոյ, եւ այժմու Գերյ. Մեծաւորը թէեւ շատ հետամուտ եղաւ, բայց չկրցաւ գտնել Լիվոռնոյի մէջ։ Ինչպէս Թիւ 4 Յուլ. 1906 թուականաւ ինձ կը գրէ, նոյն այժմ Հռոմ ի Ս. Վլա-սիոսի ըլլայ։ Վասն զի իր գիտութեան վրայ՝ Գեր. Գօյումճեան Վ. գրեր է իրեն՝ թէ «Սարրաֆեանի նկարը կայ կ'ըսուի ի Հռոմ, սակայն որը ըլլալը յայտնի չէ»։ Կը յուսամ ուրիշ առթիւ ստուգել, գտնել եւ հրա-տարակել։

Վերն յառաջ բերուած կտակին համե-մատ՝ Լիվոռնոյի Հայոց Ս. Գր. Լուսաւորիչ եկե-ղեցւոյն մէջ մինչեւ ցայսօր կը մատուցուին մշտնջենաւոր պատարագները։ Այս մասին կը գրէ Ուղուրլեան Մ. Վ. (անդ, էջ 167—8)։ Երկրորդ մշտնջենաւոր պատարագն «է Սարգսի Արքեպիսկոպոսի Սարաֆեանինն, որ հաստատեալ կտակաւ. Բիզայու Արքեպիսկոպոսին յ7 փե-

տրուարի 1775, հանգուցեալ բարեյիշատակ Աբբեպիսկոպոսն իւր կտակագրովն պարտաւորեց Եկեղեցւոյն ժամանակակից երեսփոխանքն որ իրմէ թողեալ ստացուածոց մնացորդ մասին գումարն ծառայեցընեն իրեն հոգւոյն մշտնջենաւոր պատարագի միոյ մատուցմանն համար, եւ այն ի ձեռն հայազգի քահանայի միոյ մեր Եկեղեցւոյն մէջ ի Լիվոռնոյ: Սահմանեալ գումարն էր 7840 Ֆրանք. Ի սկզբանն՝ յընթացս դարու միոյ ըստ պարտաւորութեան մատուցան ամենօրեայ պատարագք. բայց յետոյ մայրագումարին պակասելովն՝ Պետութեան վճարեալ ծանր տուգանաց պատճառաւ, տնօրինեց Ս. Գահն, որ այնուհետեւ յիշեալ մշտնջենաւոր պատարագի պարտաւորութիւնն իւրաքանչիւր տարի միայն հարիւր պատարագաց մատուցմամբ վճարուի„:

Նոյնպէս եկեղեցւոյն աւագ խորանը համակ մարմարեայ շինուած է 1778ին նոյն կտակին համեմատ, եւ խորանին երկու կողմը գրուած է ճերմակ եւ գեղին մարմարինէ խառնեալ՝ Սարգսի Աբբեպիսկոպոսի զինանշանը, որ տապանագրին տակն ալ կ'երեւայ: Այն զինանշանը Գերյ. Մեծաւոր Վ. բնական մեծութեամբ գծագրած ղրկած է ինձ, եւ ես նմանահանութիւնը կը դնեմ վարը բոլորովին պզտիկցուած:

Այն աւագ խորանին ճիշդ ետեւը այս տաթիւ փորագրուած է հետեւեալ հայերէն եւ լատիներէն արձանագրութիւնը:

«Կերտեալ կառուցաւ մարմարինեայ յօրինուած խորանիս եւ սեղանոյս, արդեամբք եւ ընչիւք Կոստանդնուպոլսեցի Շնորհալի Սարգիս Արքեպիսկոպոսին մեծի Կեսարիոյ Կապպադով-կեցւոյ. ի թուին Հայոց ՌՄԻԷ: 1778:»

„Haec ara pingui haereditate Sergii De Alexandro Sarafoglou Constplni Caesarae in Cappadocia Archiepiscopi, Quinquennio post obitum in hanc formam redacta est. Die I Junii MDCCLXXVIII.“

Իսկ Հայերէն եւ լատիներէն տապանագիրն հրատարակած է Ուղուրլեան Վ. (Հայերէնը՝ «Հանդէս Ամսօրեայ», 1890 էջ 17, 62 եւ Պատմ. Հայոց գաղթականութեան ի Լիվոնոյ, Վենետ. 1891 էջ 100, իսկ լատիներէնը՝ «Հանդէս Ամս.», 1895 էջ 294): Սակայն նոյն հրատարակութեանց մէջ սխալներ ըլլալուն՝ կը դնեմ այստեղ երկուքն ալ իրենց ճիշդ ձեւերովը: Հայերէն բնագրին բառերուն սկզբնատառերը չեռնելով ընթերցուածը կու տան՝ «Սարգիս Շնորհալի Արքեպիսկոպոս մեծի Կեսարիոյ Կապպադովկեայ»:

A. Է. Ω.

ՍՈՓԵՍՏ ԱՐՇԻ՝ ՄԱՐԶԻՑ ԿԱՃԱՌ·
ՇՆՈՐՀԻՒ ՐԱԿԵՐՏ՝ ԵԶԱԿ ԱՆՃԱՌ·
ԱՐԹՈՒՆ ՔԱՐՈԶ՝ ԾԱԳԱՑ ՊԱՐԶ ՃԱՌ·
ՆԵՐՀՈՒՆ ԵԶԵՐՑ ԻՄԱՍՏՍ ՊԱՏՐԱՍՏ:

ՐԱԲՈՒՆ ՊԱՐԹԵՒ ԿԱՑՏԱՌ ԱՄՕՔ,
ՈՐԴԻՍ ԻՆՔԵԱՆ ԵՐԿՆԷՐ ԴԱՄՈՒՔ.
ԳԹԱԾ ՄԱՏԱՐ ՄՐՏԻԻ ՈՂՈՔ,
ՐԵՏՈՐ ԿՐԹԵԱԼ ԱՋՆԻԻ ՎԱՐՈՒՔ,
Ի ԾԱԳ ՈՒՂՂԵԱԼ ՐՈՊԷՆ ԿԱՄԵԱԼ,
ՀԱԻԱՏ ՊԱՑԾԱՌ ԻԻՐՈՑ ԵՐԳԵԱԼ,
ՄԱՐԱՄ ՈՐԴԻՈՑՆ ՈՂԿՈՅՋ ԱՐԲԵԱԼ,
ԱԼԻՔՆ ՄՊԱՌԵԱԼ ՑԱՑՄ ՑԱՐԿ
ՆՆՋԵԱՑ

*Յամի Տեառն ՌՋՀԳ. Հոկտեմբերի Բ. եւ բառ Հայոց ՌՄԻԲ։*

*Սկզբնատառք բառից վերնոց յայտնեն զով զոյն աստ հանգչելոյ։*

*Յովհաննէս Նուրաքին պաշտօնեայ բանին,*
*Յօրինեաց վերինն՝ յարգանս իւր պետին։*

D. O. M.

SERGIO ALEXANDRI SARAFOGLU CONSTANTINOPOLITANO
MAGNAE CAESAREAE IN CAPPADOCIA ARCHIEPISCOPO
VIRO DOCTISSIMO SUMMISQUE VIRTUTIBUS ORNATISSIMO
ORTHODOXAE FIDEI PROPUGNATORI CONCIONATORI EGREGIO
ORIENTIS EX METROPOLI ROMAM REDEUNTI
HIC MENSES OCTO PERPESSA EX HYDROPISI OBEUNTI

DIE II OCTOBRIS AERAE CHRIST. MDCCLXXIII.
AETATIS SUAE ANNO LXXIV.
HANC IPSAM ARMENIORUM SUAE NATIONIS ECCLESIAM
HAEREDEM TESTAMENTO RELINQUENTI
CURATORES
TANTO PASTORI GRATI ANIMI MONUMENTUM POSUERE.



# ՈՒՂՂԵԼԻՔ ԵՒ ՅԱՒԵԼԼԻՔ

| | | Ուղղէ |
|---|---|---|
| Եր. 1, տող 7. | Յովյ. | Յովհ. |
| » 32, » 27. | յետ կար | յետակար |
| » 56, » 28. | վըշտ–տու | վըշտ––տու |
| » 57, » 28. | խորհուրդ | խորհուրդ |
| » 63, » 6. | վըկայ–թիւնն | վըկայ––թիւնն |
| » 73, » 3. | վարձ, մեղ | վարձ մեղ |
| » 82, » 27. | Ո– | Ոչ |
| » 93, » 15. | Առ ի | Առի |
| » 116, » 4. | առն–ցու | առն––ցու |
| » 140, » 5. | անտուա– | անտուատ |
| » 166, » 24. | գռանք | ֆռանկք, քաղկեդոնիկք, ուղղափառք, կաթողիկեայք, |
| » 167, » 2. | որդին, էր | որդին էր, |
| » 169, » 14. | Յիշատակարանին | Յիշատակարանին |
| » 176, » 11. | spaizoso | spazioso |
| » 188, » 29. | Ստեփաննոս | Ստեփանոս |
| » 196, » 4. | յ––ել՝ Այս ճամփորդութեան միջոցին՝ 13 Հոկտ. 1758 թուականին կը գրէ «Ծառայ Յիսուսի Քրիստոսի Յովհաննէս Եպիսկոպոս յաղարթեան ի վերայ աթոռոյ յամէթայ գմինանդին» առ Հ. Ստեփանէ Վ. Արրայ Անտոնեանց ի Հռոմ, եւ կը ծանուցանէ թէ | |

գինն օհան (= Յովհաննէս Ա-
գարեան*) ամենգործ, 18 օր գինի
Պղյաճի օղլու կարապետէն, նաև
Սարընցի Լուսիկ որ կոչի կարա-
պետ, աշակերտ Աբրահամու,
եօթն ամ նաաւ., յոյժ բարեկամ
էր ուղղափառաց, բայց յարու-
թեանն յառաջ ամին Հալապցի
Պետրոս Մասուտեան, յանկոր-
ջան ազգայի եղբայրն է, բայց կարգն
Սիսայ առեալ է, ազգականքն
լու ուղղափառ են, ինքն չար
հերետիկոս է, և Ի Ջ ամ հա-
լով յառաջնորդ եղեալ է, գոյ
երեսուն տարի որ եպիսկոպոս
է . . . .»

Էջ 211, տող 14. յ—էլ՝ Առոր վրայ Սարգիս դպիր
Յովհաննէսեան կը գրէ. «Մար-
տիրոս Վ.ն Մեղրեցի, որ երկո-
տասնամ բատամնգօլու ներհիրակ
եկեր էր, վախճանեցաւ առ
ՌՃԿԶ (= 1717) Օգոստ. Ժ օր
և ի Պէյ օղլուն թաղեալ են։
Իրօք ալ իր գամբանը տեսայ
1908 Մայիս 18ին Հայոց Բերայի
գերեզմանոցը, «Հոգևոր Տիրոջ.
(Յակոբ կաթողիկոս Էջմիածնի
† 1680 ի Կ. Պոլիս) գերեզմանին
արևմտեան կողմը։ Տապանա-
քարին վրայ կայ եպիսկոպոսա-
կան թագ և գաւազան, և հե-
տևեալ տապանագիրը՝

ԱՅՍ Է ՏԱՊԱՆ ՀԱՆԳՍՏ
ԵԱՆ ՄԵՂՐԵՑԻ ՄԱՐՏԻՐՈՍ
ԱՌԱՔԵԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ

ՈՐ ԷՐ ՆՈՒԻՐԱԿ ՄԻ ԷՋՄԻԱ
ԾԱՆԻ ՈՐ ՀԱՆԴԻՍԱՆԻ Ի ՔՍ
ԹՎ. ՈՒՂՂ ԵՒ ՋԻ. ՀԱՅՐ ՄԵՐ.

| | | |
|---|---|---|
| Եր 212, տող 10. | Հողինակէն | Հեղինակէն |
| „ 212, „ 19. | առըն | առն |
| „ 212, „ 20. | կապադովկիոյ | կապադովկիոյ |
| „ 212, „ 21. | Վրժանէս | Վրթանէս |
| „ 212, „ 24. | մեհանչնեայ | մեհանեայ |
| „ 212, „ 25. | ուխտի | յուխտի |
| „ 212, „ 27. | վանըս | վանս |
| „ 212, „ 27. | ամըս | ամս |
| „ 213, „ 4. | ի մարտի | մարտ |
| „ 220, „ 12. | ի | Ի |
| „ 227, „ 13. | Հատ | Հաւատ |
| „ 227, „ 14. | ամբողջը. | ամբողջը |
| „ 294, „ 24. | գրէ | Էր գրէ |
| „ 323, „ 29. | գործակալութեամբ | գործս ակալութեամբ |
| „ 335, „ 27. | յաւել՝ Կ. Պոլսեցիք առ. Սիմէոն Կթող. գրած ճառերէն մէջ ալ կը յիշեն, թէ "ահա զմեծ մասն այգւոյն մերոյ փառանկացայց՝ կաշառակուր լինելով ի նորանց եւ թուլասրտելով զաւետարանին այնքան զգուշացայց՝ որ ի փառանկաւան զնացին գլխաւորքն ի նորանէ. (Եւ այս զնացողքս էին Սարգիսն կեսարացի, եւ Պրուսայու Ռոստանոսք Սամուէլ.)" Դիւան, Ը. էջ 294—5. | |
| „ 345, „ 24. | յաւել՝ Այս յիշատակարանն յառաջ բերած է նաեւ Խաչիկ Լեւոնեան (ի Վան), "Բիւզանդիոն", 1904 թ. 2324, բայց կրճատուած եւ աղաւաղական ոճով. | |

Էջ 362, տող 1. յաւել՝ Ինչպէս Սիմէոն կթղ․ի 1775ին գրած մէկ թղթէն կ'իմացուի, Յարութիւն Արքեպ․ 1775ին ի Պրուսա Առաջնորդ էր (Դիւան, Ը. էջ 315), Հռոմ մեկնած Սամուէլ եպ․ին տեղ․ Բայց 1776ին թեմը թողած, անշուշտ Սամուէլի վերադարձէն ետեւ, "ի տուն Լամբայի էլլուն էր անկեալ, եւ յայտնապէս ցուցեալ զհերձուածն եւ զուրացութիւնն իւր ի միաբանադաւան խոստովանութեանէն...„ (Դիւան, Ը. էջ 511.)

„ 364, „ 18. 175**0** — 175**6**
„ 378, „ 11. 1**8**69 — 1**7**69
„ 378, „ 17. Ապր. 4 — Մարտ 24
„ 390 „ 18. Պա-տարագներ — Պատարագներ

# ՑՈՒՑԱԿ ՅԱՏՈՒԿ ԱՆՈՒԱՆՑ

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ա. Գալէմքեարեան Հ. Գր. Վ., *Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն: 1. Գիշոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գույէր, Իրաւունք Հայոց:* 1890: Էջ 85+59: Ֆր. 1.25

Բ. Մէնէվիշեան Հ. Գ., *Ազգաբանութիւն ազն. զարմին Ցիւլեանց:* 1890: Էջ 50: Ֆր. 1.—

Գ. Տաշեան Հ. Յ., *Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց:* 1891: Էջ ԺԱ+159: Ֆր. 1.25

Դ. Տան Դ., *Արեւելեան Հայք ի Բուքովինա:* Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: Էջ 79: Ֆր. —.85

Ե. Տաշեան Հ. Յ. Վ., *Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի:* 1892: Էջ Դ+272: Ֆր. 3.—

Զ. Տրվէլ Ա. եւ Գ. Փիսոն, *Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա:* Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: Էջ 82: Ֆր. 1.—

Է. Մառ Ն., *Ամառնային ուղեւորութիւնից դէպ ի Հայս:* Թրգմ. Ո. Անոփեան: 1892: 89: Ֆր. 1.25

Ը. Գարիէր Ա., *Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ:* Հտ. Ա.: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան 1893: Էջ Ժ+51: Ֆր. 1.—

Թ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., *Պատմութիւն հայ լրագրութեան:* Հտր. Ա. 1794—1860: (1 լուսանկարով:) 1893: Էջ 232: Ֆր. 2.50

Ժ. Կոնիբիր Փր. Կ., Քննութիւնք գրոց Դաւթի Անյաղթի: Թարգմ. եւ յառ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: էջ Է+92: Ֆր. 1.25

ԺԱ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: (1 գըն-կատիպ.) 1893: էջ Ժ+533: Ֆր. 4.50

ԺԲ. Խաչաթեան Գր., Զենոբ Գլակ. Համեմատական ուսումնասիրութիւն: 1893: էջ Զ+78: Ֆր. 1.—

ԺԳ. Տէր-Մովսիսեան Փ., Հայ գիւղական տունը: Թարգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: (6 տախտ. 55 պատկ.:) 1894: էջ Ը+103: Ֆր. 2.—

ԺԴ. Գարիէր Ա., Նորագոյն աղբիւր Մովսիսի Խորենացւոյ. Հտր. Բ. կամ Յաւելուած: Թարգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1894: 8° էջ ԺԱ+43: Ֆր. 1.—

ԺԵ. Տաշեան Հ. Յ. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից: Ա.՝ Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառք հին հայերէնի մէջ: Բ.՝ Փորբէլ-մանն Կ., Յունական փոխառեալ բառք հայերէնի մէջ: Գ.՝ Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անուանք: 1894: էջ Թ+145: Ֆր. 2.—

ԺԶ. Տաշեան Հ. Յ. Վ., Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. Մասն Ա: Ա–Զ. Նեմեսիոս, Պրոկղ Դիադոխոս, Խոսրովիկ. Գիրք Հերձուածոց, Պրոկղ եւ Սեկունդոս: 1895: էջ ԺԲ+296: Ֆր. 3.60

ԺԷ. Տաշեան Հ. Յ. Վ., Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Գ. Փէթթէրի, ամփոփուած եւ թարգմ. ծանօթութեամբք: 1895: էջ Թ+202: Ֆր. 2.5

ԺԸ. Տիւրեան Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը: 1895: էջ 92: Ֆր. 2.—

ԺԹ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Դրանսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը կամ Նկարագիր Գերլայ Հայաքաղաքի ի գիր եւ ի պատկերս: 1896: էջ Թ+352: Ֆր. 3.60

Ի. Տաշեան Հ. Յ. Վ., „Վարդապետութիւն առաքելոց„ անվաւերական կանոնաց մատեանը. Թուղթ

Յակոբայ առ Կոդրատոս եւ Կամենից Թադդէի: 1896: Էջ Ժ+442: Փր. 6.—

ԻԱ. Տոմաշէկ Վ., Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները: Պատմական եւ տեղագրական հետազօտութիւն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1896: Էջ Է+62: Փր. 1.—

ԻԲ. Կարրիէր Ա., Աբգարու գրոյցը Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ: Թրգմ. Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1897. Էջ ԺԵ+107: Փր. 1.50

ԻԳ. Յովնանեան Հ. Ղ. Վ., Հետազօտութիւնք նախնեաց ոտանաւորին վրայ: Ուսումնասիրութիւնք եւ քաղուածներ: Մասն Ա. Ոտանաւորի մատենագրութիւնք: Տետր Ա: 1897. Էջ Ը+272: Փր. 4.—

ԻԴ. Յովնանեան Հ. Ղ. Վ., Հետազօտութիւնք նախնեաց ոտանաւորին եւն: Տետր Բ: 1897: Էջ Ա—Ը+273—522: Փր. 3.—

ԻԵ. Գէլցէր Հ., Համառօտ պատմութիւն Հայոց: Թրգմ. Հ. Գր. Վ. Գալէմքեարեան: Յաւելուածք 1. Ցանկ Հայոց կաթողիկոսներու ամթիւ լոյս տեսած գրքերու: 2. Գաւազանագիրք Կաթողիկոսաց եւ Պատրիարքաց Հայոց: 1897: Էջ Ը+130: Փր. 1.50

ԻԶ. Մէնէվիշեան Հ. Գ. Վ., Գիրք (կամ յօդուած) գրելու արուեստը: Յաւելուած՝ Գիրք կարդալու արուեստը: 1898: Էջ Է+118: Փր. 1.25

ԻԷ. Խալաթեան Գր., Մ. Խորենացու նորագոյն աղբիւրների մասին քննադատական ուսումնասիրութիւնք: 1898: Էջ Է+53: Փր. 1.—

ԻԸ. Տաշեան Հ. Յ. Վ., Ակնարկ մը հայ Նշագրութեան վրայ: Ուսումնասիրութիւն Հայոց գրչութեան արուեստին: (10 զինկատիպ պատկերով:) 1898: Էջ ԺԱ+202: Փր. 2.50

ԻԹ. Դաղբաշեան Յ., Փ. Բիւզանդացի եւ իր պատմութեան խարդախողը: Քննութիւնն Մ. Խորենացու աղբիւրների մասին: 1898: Էջ Թ+175: Փր. 2.50

Լ. Մսերեանց Լ., Հայերէն բարբառախօսութիւն: Թարգմ. ի ռուսերէնէ Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1899: Եր. Է+26: Ֆր. —.50

ԼԱ. Քոսեան Հ. Յ. Վ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Ա. Զմիւռնիա եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Եր. ԺԲ+369: Ֆր. 5.—

ԼԲ. Քոսեան Հ. Յ. Վ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Բ. Զմիւռնիոյ մերձակայ գլխաւոր քաղաքներն եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: Եր. Ժ+161: Ֆր. 2.50

ԼԳ. Գովրիկեան Հ. Գ. Վ., Հայք յԵղիսաբեթուպօլիս Դրանսիլուանիոյ. Բ. Հտր. 1780—1825: 1899: Եր. Է+554: Ֆր. 5.—

ԼԴ. Գազանճեան Յ., Եւդոկիոյ Հայոց գաւառաբարբառը: 1899: Եր. Է+120: Ֆր. 1.—

ԼԵ. Կարրիէր Ա., Հեթանոս Հայաստանի ութ մեհեանները Ագաթանգեղոսի եւ Մ. Խորենացւոյ համեմատ: Թարգմ. Հ. Յ. Վ. Տաշեան (1 քարտէզով): 1899: Եր. 43: Ֆր. —.70

ԼԶ. Տաշեան Հ. Յ. Վ., Ժողովածոյք առակաց Վարդանայ, ըստ Ն. Մառի, անդրկատուութիւն եւ քաղուածքներ: 1900: Եր. ԺԱ+193: Ֆր. 2.50

ԼԷ. Տաշեան Հ. Յ. Վ. Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. (տես ԺԶ:) Մասն Բ: Է-Ժ. Խիկար եւ իւր իմաստութիւնն, Ագաթանգեղոս եւ իւր Յորդորականք առ Եւստոփինիանոս, Թղթակցութիւն Աբգարու եւ Քրիստոսի ըստ նորագիւտ արձանագրութեան Եփեսոսի, եւ Գէորգայ Պիսիդեայ Վեցօրեայք: 1901: Եր. ԺԲ+384: Ֆր. 4.50

ԼԸ. Տէր-Պօղոսեան Գր., Նկատողութիւններ Փաւստոսի Պատմութեան վերաբերեալ: 1901: Եր. Ը+110: Ֆր. 1.50

ԼԹ. Վեբեր Ս., Արարատը Ս. Գրոց մէջ: Թարգմ. Հ. Բ. Փիլէզիկճեան: 1901: Եր. Ե+77: Ֆր. 1.—

Խ. Սանտալճեան Յովսէփ Վ., Ասորեստանեայ եւ Պարսիկ սեպագիր արձանագրութիւնք կամ

որոնք Նախիջ-Ռուսաստան աշխարհին պատմութեան կը վերաբերին: 1901: Էջ 262: Ֆր. 4.50

ԽԱ. Խաչաթեանց Բագրատ, Հայ ժողովրդական դիւցազնական վէպը: 1903: Էջ Ը+72 Ֆր. 1.—

ԽԲ. Մենէվիշեան Հ. Գ. Վ., Նորի ընդունագիտութիւնը: Հատ Ա.: 1903: Էջ Ը+204: Ֆր. 3.—

ԽԳ. Մարկվարտ Յ., Հայ Բդեաշխք: Թրգմ. Հ. Թ. Կէտիկեան: 1903: Էջ 39: Ֆր. —.75

ԽԴ. Գելցէր Հ., Սկզբնաւորութիւնք Բիւզանդեան բանակաթեմերու դրութեան (1 քարտէզով): Թրգմ. Հ. Գ. Գալէմքեարեան: 1903: Էջ Է+83: Ֆր. 2.—

ԽԵ. Կիւլէսէրեան Բ. Վ., Ծովք, Ծովք-Տլուք եւ Հռոմ-Կլայ, պատմական եւ տեղագրական ուսումնասիրութիւն: (1 քարտէզով): 1904: Էջ Ը+117: Ֆր. 1.50

ԽԶ. Կիւլէսէրեան Բ. Վ., Կոլոտ Յովհաննէս Պատրիարք. պատմագրական եւ բանասիրական ուսումնասիրութիւն: 1904: Էջ ԺԴ+227: Ֆր. 3.50

ԽԷ. Փեղեղարեան Հ., Նշանաւոր մի Հայ. Լեզուի պատմութեան: Թրգմ. Հ. Գ. Գալէմքեարեան: 1904: Էջ Ը+87: Ֆր. 1.25

ԽԸ. Տէր-Մկրտչեան Գ. եւ Ճեմանեան Հ. Ց., Քննութիւն եւ համեմատութիւն Եզնկայ նորագիւտ ձեռագրին: 1904: Էջ Է+105: Ֆր. 1.5

ԽԹ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., Հայ լրագրութեան պատմութիւն: Դ. Հոր. 1825-1904: Էջ Ժ+658: Ֆր. 7.—

Ծ. Ճարէք Մ., Հայաստան, Վրաստան եւ արեւմտեան Պարսկաստան բուսաբանական-աշխարհագրական տեսակէտէն: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1904: Էջ Է+222: Ֆր. 3.—

ԾԱ. Խաչաթեանց Գր., Հայ Արշակունիք ըստ Մովս. Խորենացւոյ, կամ Նոր ուսումնասիրութիւններ Մովս. Խորենացւոյ մասին: Թրգմ. Արսէն Ս. Սիմոնեանց: 1906: Էջ Ը+24: Ֆր. 1.50

ԾԲ. Պետերսըն Հ., Հայերէն եւ դրացի լեզուները: Թրգմ. Հ. Թ. Նէտրեկեան: 1907: Էջ ԺԱ+257: Ֆր. 5.—

ԾԳ. Հիւբշման Հ., Հին Հայոց տեղւոյ անունները: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1907: Էջ ԺԶ+443: Ֆր. 7.—

ԾԴ. Պետերսըն Հ., Հին հայերէնի ցուցական դերանունները: Թրգմ. Հ. Յ. Տաշեան: 1907: Էջ Է+90: Ֆր. 2.—

ԾԵ. Գալէմքեարեան Հ. Գ. Վ., Կենսագրութիւն Սարգիս Արքեպիսկոպոսի Սարաճեան եւ ժամանակին հայ կաթողիկեայք: 1908: Էջ ԺԵ+433: Ֆր. 7.—